Ter Vishean, Serovbē 337

ՀՆԴԵՒՐՈՊԱԿԱՆ

# ՆԱԽԱԼԵԶՈՒ

206 p.

ԳՐԵՑ

Հ. ՍԵՐՈՎԲԷ ՏԷՐՎԻՇԵԱՆ

Մ. Ա.



معارف نظارت جليله‌سنك ١٩ تشرين ثانى سنه ٩٩ رخصتيله طبع اولنمشدر

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐ. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ
1885

ԱՌ ՎՍԵՄԱՊԱՏԻՒ

# ԱԲԻԿ ԷՖԷՆՏԻ ՈՒՆՃԵԱՆՑ

ՆՈՒԷՐ

ԽՈՐԻՆ ՄԵԾԱՐԱՆՕՔ

## Վսեմապատիւ Տէր

Անուանդ որ արդէն փառաւոր է՝ գիտեմ նոր փառք չի յաւելուր նուիրումն մատենկանս, սակայն սա անհամեմատ փայլ կը ստանայ, երբ վսեմաշուք անուամբդ զարդարուած ցուցնէ իւր ճակատն ընթերցողաց: Հաճէ ուրեմն ընդունիլ դոյզն ընծայս Հնդեւրոպական Նախալեզուիս, զոր խորին մեծարանօք կը համարձակի նուիրել Քեզի հայանուէր Հեղինակն, աղաչելով խոնարհութեամբ որ չզլանաս բարձր հովանաւորութիւնդ նաեւ իւր միւս երկասիրութեանց, որոնք հետզհետէ հրապարակ ելլելու կը պատրաստուին:

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Գոյութեան գալէն ետք անցած ժամանակին, եթէ նըկատուի, կը սխալուինք խոստովանիլ թէ մեծամեծ արդիւնք ցուցած է Համեմատական Լեզուագիտութիւնն, որ իրաւամբ տարուէ տարի կը տարածուի կարեւորութիւնը ճանչցուելով։ Սակայն ուրանալը անկարելի է նաեւ թէ շատ խնդիրներ կան դեռ, որոնց վերջնական լուծումը չէ տրուած ապահովապէս։ Մենք թէեւ ջանացինք լեզուաքննական նոյն իսկ ամենածածուկ խորշերը մտնել, նախալեզուին ամենապարզ տարրերը գիտել, սակայն չենք պարծիր թէ միշտ անհակառակելի ճշմարտութեան հասանք, այլ կը խոստովանինք թէ երբեմն շատացանք լոկ հաւանականութեամբ՝ թողլ տալով ժամանակին որ իրն աւելի լուսաւորէ։ Լեզուաքննութեան մութ վիճակը կամ խորագոյն քննողութեան յառաջադիմութեան համեմատ փոխանակ լուսոյ խաւարի հանդիպիլը՝ ոչ զարմանալի այլ շատ բնական է։ վասն զի միւս գիտութեանց պէս լեզուագիտութիւնն ալ հարկաւ պիտի սկսէր տկարանալ, երբ թեւակոխէր այնպիսի ծածուկ ճշմարտութիւններ որոնելու, որոնք սերտ յարաբերութիւն ունին իրաց սկզբան հետ, զոր անսկիզբն Հաստիչը թանձրամած հնութեամբ քողարկած է մարդկային քննող աչքէն։ Բայց մեզի հաւանական կ'երեւայ որ օր մը այդ խաւարը փարատի կամ գոնէ լրթանայ, երբ վերջապէս յաջողի համեմատող լեզուագիտաց՝ տիեզերաց համօրէն լեզուներուն փոփոխ յարաբերութիւնները ճշդել։

Թէ արդեօք հայկական վսեմաշուք լեզուս այդ նկատ-

մամբ կրնա՛յ լոյս մը սփռել տիեզերական լեզուագիտու-
թեան թէ ոչ, ապահովութեամբ ոչինչ կրնանք հաստա-
տել. սակայն բնազդեցիկ զօրութիւն մը կարծես կը մղէ
զմեզ կարծելու՝ թէ քննիչներուն առանձինն ուշադրու-
թեան արժանի է մե՛ր ալ լեզուն, վասն զի վրան կը նըշ-
մարուին այնպիսի խորհրդական նշաններ, որոնց հիմնա-
կան հաւաստի մեկնութիւնը պիտի կարենայ թերևս շատ
լեզուագիտական գաղտնիք պարզել։ Նաև օտարազգի
հայագէտք կը սկսին տակաւ սոյն կարծիքը տածել։

Ահա սոյն հաւանական ակնկալութեամբ ձեռնամուխ
եղանք մենք ալ գործոյս աշխատասիրութեան՝ զայն Հըն-
դեւրոպական Նախալեզու անուանելով։ Սոյն հնդևրոպազարմ
Նախամօր — որուն վաղեմի իրական գոյութիւնն իւր դըս-
տերաց ծանօթ լեզուներէն հարկաւ կը հետևցնենք բա-
տուգութեամբ — դուստր մըն ալ է նաև հայատոհմ ազ-
գըս իւր հայալեզու բարբառով։ Այս՝ անուրանալի ճշմար-
տութիւն է այժմ, զոր իրագէտ բանասէր մը չի կրնար
բնաւ տարակուսի տակ ձգել։ Սակայն հայկական լեզուին
հնդևրոպաբուն Նախալեզուին հետ ի՛նչ յարաբերութիւն
ունենալը — հեռաւորութեան կամ մերձաւորութեան աս-
տիճանը — խնդիր մըն է, զոր օտարազգի հայագէտ լեզ-
ուաքննիչք ցարդ չեն կրցած որոշել և ոչ ալ կրնային,
վասն զի այսպիսի խնդրոյ մը լուծման կարևոր հմտու-
թիւնը չունէին տակաւին, ինչպէս իրենք ալ կը խոստո-
վանին արդեամբք։

Մեր փափաքն է ահա ձեռներէց ըլլալ սոյն նպա-
տակաւ։ Սակայն, ինչպէս բնական է, մեր ձեռնարկու-
թեան յաջող ելք մը տալու համար, Նախալեզուին սկըզ-

բնական հանգամանքն հարկ էր նախ քննէինք, որպէսզի անոր հետ յետոյ կարենայինք միւս քոյր լեզուներն և յատկապէս մերինը բաղդատել։

Այս վախճանաւ աշխատեցանք մերովանն՝ նախաւոր լեզուին զանազան կարգի արմատներն հետազօտելով և յետոյ ճառելով անոնց միաւորութենէն բաղադրուած լեզուական կազմաւորութեանց — բնակերտութեան ու բառակազմութեան — վրայ։ Ապա բառագիծ ստուերագիր մըն ալ տուինք նախնական գաղափարաց, որոնք նախամօր ստացուածքն էին դեռ այլ և այլ դուստրներ չծնած։ Վերջապէս պատմական տեսութեամբ մը կնքեցինք մեր նախընծայ աշխատութիւնն։

Ձեռնարկութեանս թէև մերձաւոր նպատակէն դուրս էր հայ լեզուիս համեմատութիւնն, սակայն գործոյս սակաւիկ մըն ալ ազգային նկարագիր տալու և մանաւանդ մեր յաջորդ երկասիրութեանց նախաճաշակ պատրաստութիւն մ՚ընծայելու համար, պատշաճ համարեցանք շատ տեղ հայերէն լեզուի ձայնական ու բառական կարևոր մասերը նախալեզուին ու դուստր բարբառներուն հետ համեմատութեան բերել։ Ասով առատ մթերք մը կը գտնեն ընթերցողք հայալեզու տարերաց, որոնք քոյր լեզուներու հետ բաղդատուած են ընդհանրապէս բաւական ստուգութեամբ։

Նախալեզուեան տարերքը նշանակելու համար՝ լաւագոյն դատեցինք լատին նշանագրաց գործածութիւնն, որ հայական տառերուն չափ սխալման առիթ չեն տար նախաւոր լեզուին ձայներն հնչելու մէջ։ Իսկ դուստր լեզուաց բառերը ջանայինք իրենց գործածած տառերով

ղնել, ուր Հնդկի, Զանդիկ և հին Պարսիկ սեպագիր տառերուն պակասը փորագրութեամբ կրցանք լեցնել գանէ գործոյս առաջին թերթերուն մէջ. վասն զի, յետոյ սկսանք զանոնք հայ տառերով փոխանակել, որպէսզի տգեղ փորագրուած ձևերու յաճախութեամբ գործոյս տպագրութեան վայելուչ երևոյթը չխանգարի ։

Աշխատնկանս բազմալեզուեան հանգամանքն ու տպագրանոցին մեծ հեռաւորութիւնն ոչ դոյզն դժուարութիւն հանեցին աշխատասիրութեանս՝ տառասխալներէ ազատ երևան գալուն և փութով լոյս տեսնելուն, երկու անպատեհութիւնք՝ որոնց առաջքն առնելու վայրապար աշխատեցանք ։

Որպէսզի ընթերցողները կարենան ուզած ատենին լեզուաքննական կարևորութիւն ունեցող ամէն բառ դիւրաւ գտնել, հարկ համարեցանք այսպիսիներն այբուբենական կարգաւ նշանակել՝ էջաթիւն իւրաքանչիւրին առջեւ ։

Թէ լեզուաքննութեանս դաշտին վրայ առանց առաջնորդի ու օգնութեան չաշխատեցանք, այն յայտնի բան մըն է. հոս սա միայն յիշելու ենք, որ մեզի ձեռնտուութիւն ընծայող մատենագիրք գերմանացիք էին, զորոնք հայր ու հեղինակ համեմատական լեզուագիտութեան գնելով՝ ապահով ենք թէ չպիտի սխալինք, թէև ասով չմոռաքերենք հաստատել թէ Գաղղիացիք ու Անգղիացիք աս կողմանէ արդիւնք ունեցած չըլլան ։

Այդ է մեր գործն ահա, որ՝ չենք պարծիր թէ ամէն քննադատութենէ վեր է, մանաւանդ թէ գիտենք՝ ունի թերութիւններ և կը փափաքէինք որ ինչ ինչ մա-

սունք այլակերպ կերպարանք ունենային, որով յուսանք երևցնել եթէ հաճին Երկինք կրկին տպագրութեամբ մեր աշխատութիւնը պսակել։ Սակայն որչափ շնորհակալութիւն ու յարգանք որ նուիրենք ողջամիտ, ճշմարտասէր, մասնագէտ քննադատներու, նոյնչափ արհամարհանք ու նողկանք պիտի հատուցանենք հարկաւ ապիկար չարամիտ գրչակներու զրաբանութեանց, որոնց վատաբարոյ պատառաբոյծ անզգամութիւնն ուրիշ բան չի գիտեր բայց եթէ ուղիղ միօք ազգային բարդաւաճանաց ծառայողները նախատել ու զրպարտել՝ անոնց գրութիւններն խեղաթիւրելով լպրշական յանդգնութեամբ։ Մենք առանց սոյնգունակ ցնորական զբանդատանաց ունկն դընելու՝ յառաջ պիտի տանինք մեր գործն անձանձրոյթ և անվեհեր, մինչև հասնինք մեր ցանկալի նպատակին որ է հայական նախալեզու մը հայաբուն նախավիճակ մը յօրինել։

Մաղթելով ուրեմն որ հնդևրոպամայր նախալեզուս հնդևրոպահայ դուստրն ալ ծնանի օր մը, չենք տարակուսիր որ նոյնչափ լաւ ընդունելութիւն գտնէ մայրն այժմ, որչափ ապահով ենք թէ պիտի գտնէ երբեմն դուստրն։





## ՏՊԱԳՐԱԿԱՆ ԳԼԽԱՒՈՐ ՎՐԻՊԱԿՔ

### ՈՐՈՆՑ ՈՒՂԻՂՆԵՐԸ ՓԱԿԱԳԾԻ ԿԸ ՆՇԱՆԱԿԵՆՔ

Էջ 5 *էական մասեր* (*էական մասեր և չէական մասնիկներ*) ։ — 13 + (·) ։ — 13 *թառաչել* (*թառանչել*) ։ — 15 *ուրիշ* (*որիշ*) ։ — 19 préposion (proposition)· — 23 *սովորութիւն եղած* (*սովորութիւն եղած է*) ։ — 45 *քացի* (*թացի*)։ — 48 *յիւրիւրել* (*յերիւրել*) ։ — δγχος (ὄγχος) ։ — 69 Digranocerta (Tigranocerta) ։ — 71 Հբգ· (Նբգ·) ։ — 91 ἒννέα (ἐννέα) ։ — 110 *հէսել* (*հոսել*) ։ — 111 οχάλλω (σχάλλω) ։ — 112 *հնդ· խօ* (*հնդ. խօլ*) ։ — 114 *տուար* (*դուար*) ։ — 118 εἰςάτειν (εἰςάγειν) ։ — 142 ف (ص)· — 143 *քիւղս* (*գիւղս*) ։ — Նոյն էջ, տող 16, *վերէն Զանդիկը* (*Հնդիկը*) ։ — 161 *ց* (*ջնջել*) ։ — Նոյն էջ bhratar (bhrâtar) ։ — 174 *անգեզ* (*անգեղ*)։ — 194 *միոյն* (*միայն*) ։ Վ*երջապէս մոռցեր ըսելու ենք ընթերցողներն որ էջ* 61 an, ap *և* am *արմատներուն հնդկատառ լծորդներուն փոխագրութիւնները սխալ տեղաւորուած են․ ուստի և* am*ին առջեւ դրուածն* an*ին է*, *ատորն* ap*ին է*, *իսկ աս վերջնոյն առջեւ կեցողն* am*ին է* ։

---

## ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆՔ

Հնդ· — *հնդկերէն*
Զնդ. — *զանդկերէն*
Հպ· — *հին պարսկերէն*
Նպ· — *նոր պարսկերէն*
Հսլ· — *հին սլաւոներէն*
Գոթ· — *գոթացերէն*
Հբգ· — *հին բարձր գերմաներէն*
Մբգ· — *միջին բարձր գերմաներէն*
Նբգ· — *նոր բարձր գերմաներէն*
Յուն· — *յունարէն*
Լատ· — *լատիներէն*

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԼԵԶՈՒԱՔՆՆՈՒԹԻՒՆ



Դժուարին է մարդկային խորհողութեան քննութիւնը, բայց ոչինչ նուազագոյն դժուարութիւն ունի նաեւ խորհող մարդուն խօսողութեան հետազօտութիւնը, որովհետեւ խորհիլ ու խօսիլ կապուած են իրարու հետ անբաժանելի կերպով։ Խորհիլ՝ խօսիլ մըն է անձայն, ինչպէս ալ խօսիլ՝ խորհիլ մըն է ձայնիւ։ Խորհողութենէ զրկեալ էակը՝ զուրկ է միանգամայն գիտակցութեամբ խօսողութենէ։

Մարդկային խորհողութեան աննիւթական կարողութիւնը՝ պարզ զօրութիւն մըն է հոգւոյ, սակայն ծնող է բազմադիմի գաղափարաց։ Ո՞վ այս գաղտնիքը կարող է յայտնել։ Նմանապէս մարդու խօսողութեան նիւթական սկիզբը կամ միջնորդը՝ օդին բախմամբ և շարժմամբ յառաջ եկած պարզ ձայնն է, սակայն որչափ բազմածին է, որ մարդկային ազգին զանազան բարբառները տակաւ յղացած ծնած է աշխարհ։ Ո՞վ այս կընճիռը կրնայ քակել։

Դժուարին չէ թերեւս ցուցնել իմաստասիրութեամբ թէ ամէն մարդու խորհողութեան սկիզբն՝ էութեամբ մի իմացականութիւնն կամ միտքն է, բայց ո՞ւր է թէ նաեւ լեզուաքննութեան յաջողէր հաւաստել թէ ամենայն ազգաց աշխարհիս բազմապատիկ բիւրակերպ լեզուներուն՝ նախապէս մի մայր լեզու եղած է ծնող։ Այս ցանկալի յաջողութիւնը մաղթելով ապագայ ժամանակաց, մեր ընթերցողները գոնէ սա աւետեօք կրնանք

ուրախացնել, որ լեզուաքնին գիտնոց անխոնջ աշխատութիւնը կարող եղած է վերջապէս ստուգել աշխարհիս հին և նոր ժամանակի մեծ ազգերուն այլևայլ լեզուներուն ներքին, վաղեմի միութիւնը և զանոնք ցուցնել իբրև մէկ մօր հարազատ զաւակունք, որոնց մէջ նաև հայկական վսեմ բարբառս կը շողայ պարծանօք :

Համեմատական լեզուագիտութիւնը — վասն զի այս է սոյն նոր գիտութեան անունը — գրեթէ անծանօթ էր դեռ ասկէ կէս դար առաջ. սակայն քիչ ժամանակի մէջ մեծաքայլ և հաստատապէս յառաջադէմ ընթանալով՝ իրաւամբ արժանի եղաւ ֆիլոլոգեան պատուական և պատկառելի անուան, մանաւանդ Գերմանացւոց ազգին հիմնական քննութիւններովը : Անոնց այդ յաջողութեան մեծապէս նպաստամատոյց եղաւ Հնդկաց Սանսկրիտ հնաւանդ ճոխ լեզուին ուսումն, որ կանուխ ժամանակաւ մատենագրուած ըլլալով՝ իր վաղեմի կերպարանքն ընդհանրապէս անարատագոյն պահած էր քան միւս Հնդեւրոպամայր քոյր լեզուներն :

Շատ հին է բառերն ստուգաբանելու և լեզուներն համեմատելու միտութիւնը մարդուն, որ ամէն բանի ծագումն որոնելու հետամուտ է բնապէս : Այսպէս Յոյն և Լատին իմաստասէրներն երբեմն ջանացած են այլ և այլ բառեր մեկնել խառն ի խուռն. ծանօթ են մեզի նաև մեր հին մատենագիրներուն ստուգաբանական մեկնութիւններն : Ասոնց մեծ մասն արդի գիտութեան առջև թէեւ յարգ չունին ամենեւին, սակայն սա ճշմարտութիւնն ալ ուրանալու չենք, որ հիններուն մոլորութիւններն առիթ եղած են համեմատական լեզուագիտութեան տակաւ երեւան գալուն, որ վերջապէս հաստատուն հիմ դրաւ և օրէնք տուաւ լեզուներն իրարու հետ համեմատելու, նախորդ լեզուաբաններուն ոճն անբաւական համարելով, որ ստուգիւ չէր գիտութիւն այլ մանկական խաղալիք և զբօսանք :

Նախնի լեզուաքնին բանասիրաց գլխաւոր մէկ պակասութիւնն՝ այն սխալ գաղափարն էր որ ունէին մարդկային լեզուի

ընդհանրապէս և մասնաւորապէս Հնդեւրոպական լեզուաց ծագման *, էութեան ու կազմութեան վրայ ։

Ասոնց կարծիքն էր նախ թէ կայ առաջին լեզու մը դեռ կենդանի և մայր՝ միւս լեզուներուն, և զայն գտնելու կ՚աշխատէին վայրապար ։ Վասնզի մարդկութեան նախկին լեզուն նոյն իսկ եթէ աստուածատուր պարգեւ ըլլար մարդկեղէն ազգին նախահօր, վախճանած էր նախաստեղծ մարդուն սկզբնական արդարութեան վիճակին հետ ։ Առաջին հողածին մարդն իր սերնդոց ստուգիւ չէր աւանդած իր խօսած կամ հնարած լեզուն, զոր թերեւս ինք ալ երկայն ժամանակ չվայելեց ։ Այն լեզուն անպատճառ այլակերպ կազմութիւն ունենալու էր, մանաւանդ բառերու վերջին արմատներուն մէջ պէտք էր բոլորովին տարբեր իմաստ բովանդակել, զոր հիմայ գիտենք թէ չունին ։ Այն վսեմ գաղափարն, որ հաւատացեալն ունի Ադամայ գերբնական ձրից վրայ, չի ներեր զանիկայ տէր համարիլ այնպիսի լեզուի մը որ շատ խեղճ է, և յայտնապէս կը ցուցնէ այն խեղճութեան տխուր վիճակն, ուր հարկաւ ինկած էր երբեմն մարդկային ազգն ։ Ուստի և կրնանք ըսել թերեւս առանց յանդգնութեան թէ գոնէ այս մեր քննութեան նիւթ առած Հնդեւրոպական մայր լեզուին հեղինակն ստուգիւ ոչ Աստուած կրնար եղած ըլլալ, ոչ ալ Ադամ երբ դեռ գերբնական ձրիւք զարդարուած էր. վասնզի այն լեզուին հնարիչներն ընդհանրապէս լոկ նիւթական ըմբռնումներով տոգորուած մարդիկ էին **։

* Թէեւ մենք ալ հիմայ չունինք տակաւին թող ընդհանուր մարդկային լեզուի, այլ և ոչ նոյն իսկ մեզի ամենածանօթ Հնդեւրոպական անուանեալ ազգաց նախաւոր մայր լեզուին ծագման վրայ հաստատուն ստոյգ տեղեկութիւն, սակայն համեմատութեամբ կրցած ենք գոնէ նոյն սկզբնական լեզուին առաջին վիճակին վրայ բաւական յագեցուցիչ տեսութիւն մը շահիլ, զոր յետոյ պիտի դնենք ընթերցողաց առջեւ ։

** Հոս ինչպէս ընթերցողները կը տեսնեն, մեր վճիռն ամփոփած ենք միայն Հնդեւրոպական մայր լեզուի վրայ, որ գոնէ այնչափ ընդարձակութեամբ ու խորութեամբ քննուած է, որ սխալ վճիռ մը տալու վտանգէն բաւական հեռու կը մնանք ։ Իսկ այն լեզուաց վրայ, որոնց Հնդեւրոպականմայր լեզ-

ուրախացնել, որ լեզուաքնին գիտնոց անխոնջ աշխատութիւնը կարող եղած է վերջապէս ստուգել աշխարհիս հին և նոր ժամանակի մեծ ազգերուն այլեւայլ լեզուներուն ներքին, վաղեմի միութիւնը և զանոնք ցուցնել իբրեւ մէկ մօր հարազատ զաւակունք, որոնց մէջ նաեւ հայական վսեմ բարբառս կը շողայ պարծանօք :

Համեմատական լեզուագիտութիւնը — վասն զի այս է սոյն նոր գիտութեան անունը — գրեթէ անծանօթ էր դեռ ասկէ կէս դար առաջ. սակայն քիչ ժամանակի մէջ մեծաքայլ և հաստատապէս յառաջադէմ ընթանալով՝ իրաւամբ արժանի եղաւ գիտութեան պատուական և պատկառելի անուան, մանաւանդ Գերմանացւոց ազգին հիմնական քննութիւններովն : Անոնց այդ յաջողութեան մեծապէս նպաստամատոյց եղաւ Հնդկաց Սանսկրիտ հնաւանդ ճոխ լեզուին ուսումն, որ կանուխ ժամանակաւ մատենագրուած ըլլալով՝ իր վաղեմի կերպարանքն ընդհանրապէս անարատագոյն պահած էր քան միւս Հնդեւրոպամայր քոյր լեզուներն :

Շատ հին է բառերն ստուգաբանելու և լեզուներն համեմատելու միտութիւնը մարդուն, որ ամէն բանի ծագումն որոնելու հետամուտ է բնապէս : Այսպէս Յոյն և Լատին իմաստասէրներն երբեմն ջանացած են այլ և այլ բառեր մեկնել խառն ի խուռն. ծանօթ են մեզի նաեւ մեր հին մատենագիրներուն ստուգաբանական մեկնութիւններն : Ասոնց մեծ մասն արդի գիտութեան առջեւ թէեւ յարգ չունին ամենեւին, սակայն սա ճշմարտութիւնն ալ ուրանալու չենք, որ հիներուն մոլորութիւններն առիթ եղած են համեմատական լեզուագիտութեան տակաւ երեւան գալուն, որ վերջապէս հաստատուն հիմ դրաւ և օրէնք տուաւ լեզուներն իրարու հետ համեմատելու, նախորդ լեզուաբաններուն ոճն անբաւական համարելով, որ ստուգիւ չէր գիտութիւն այլ մանկական խաղալիք և զբօսանք :

Նախնի լեզուաքնին բանասիրաց գլխաւոր մէկ պակասութիւնն՝ այն սխալ գաղափարն էր որ ունէին մարդկային լեզուի

*ընդհանրապէս և մասնաւորապէս Հնդեւրոպական լեզուաց ծագման *, էութեան ու կազմութեան վրայ ։*

*Ասոնց կարծիքն էր նախ թէ կայ առաջին լեզու մը դեռ կենդանի և մայր՝ միւս լեզուներուն, և զայն գտնելու կ՚աշխատէին վայրապար ։ Վասնզի մարդկութեան նախկին լեզուն նոյն իսկ եթէ աստուածատուր պարգեւ ըլլար մարդկեղէն ազգին նախահօր, վախճանած էր նախաստեղծ մարդուն սկզբնական արդարութեան վիճակին հետ ։ Առաջին հողածին մարդն իր սերնդոց ստուգիւ չէր աւանդած իր խօսած կամ հնարած լեզուն, զոր թերեւս ինք ալ երկայն ժամանակ չվայելեց ։ Այն լեզուն անպատճառ այլակերպ կազմութիւն ունենալու էր, մանաւանդ բառերու վերջին արմատներուն մէջ պէտք էր բոլորովին տարբեր իմաստ բովանդակել, զոր հիմայ գիտենք թէ չունին ։ Այն վսեմ գաղափարն, որ հաւատացեալն ունի Ադամայ գերբնական ձրից վրայ, չի ներեր զանիկայ տէր համարիլ այնպիսի լեզուի մը որ շատ խեղճ է, և յայտնապէս կը ցուցնէ այն խեղճութեան տխուր վիճակն, ուր հարկաւ ինկած էր երբեմն մարդկային ազգն ։ Ուստի և կրնանք ըսել թերեւս առանց յանդգնութեան թէ գոնէ այս մեր քննութեան նիւթ առած Հնդեւրոպական մայր լեզուին հեղինակն ստուգիւ ոչ Աստուած կրնար եղած ըլլալ, ոչ ալ Ադամ երբ դեռ գերբնական ձրիւք զարդարուած էր . վասնզի այն լեզուին հնարիչներն ընդհանրապէս լոկ նիւթական ըմբռնումներով տոգորուած մարդիկ էին **։*

---

** Թէեւ մենք ալ հիմայ չունինք տակաւին թող ընդհանուր մարդկային լեզուի, այլ և ոչ նոյն իսկ մեզի ամենածանօթ Հնդեւրոպական անուանեալ ազգաց նախաւոր մայր լեզուին ծագման վրայ հաստատուն ստոյգ տեղեկութիւն, սակայն համեմատութեամբ կրցած ենք գոնէ նոյն սկզբնական լեզուին առաջին վիճակին վրայ բաւական յագեցուցիչ տեսութիւն մը շահիլ, զոր յետոյ պիտի դնենք ընթերցողաց առջեւ ։*

*** Հոս ինչպէս ընթերցողները կը տեսնեն, մեր վճիռն ամփոփած ենք միայն Հնդեւրոպական մայր լեզուի վրայ, որ գոնէ այնչափ ընդարձակութեամբ ու խորութեամբ քննուած է, որ սխալ վճիռ մը տալու վտանգէն բաւական հեռու կը մնանք ։ Իսկ այն լեզուաց վրայ, որոնց Հնդեւրոպական մայր լեզ-*

Դարձեալ նախկին լեզուաբանք իրենց գիտցած լեզուներուն կազմութիւնը դեռ չքննած և չըմբռնած՝ որ անհրաժեշտ հարկ մըն էր գիտական հետեւութիւն մը հանելու համար, սկսան ամէն լեզու իրարու հետ համեմատել խառնիխուռն առանց որոշ սկիզբ ունենալու և օրէնք ճանչնալու և կարծեցին թէ այլեւայլ լեզուներու մէջ պատահարով միայն գտնուած նշանակութեան ու ձայնի կողմանէ նման հնչող բառեր, բաւական են հաստատելու թէ մարդկային ազգն երբեմն իրօք մէկ մայր լեզու ունէր և նոյն մայր լեզուէն առաջ եկած են տիեզերաց բովանդակ ազգերուն լեզուներն: Վաղեմի լեզուագէտն անխտիր կը բաղդատէր Ճենաց լեզուէն առած մէկ բառն Հնդիկ կամ Զանգիկ ազգէն լսած միւս բառին հետ կամ Եբրայեցի ու Հայ բարբառներն իրարու ազգակից կը դնէր՝ վասնզի անոնց բառական տարրներուն մէջ ձայնական ու նշանակական համաձայնութիւն կը նշմարէր երբեմն: Յայտնի էր սակայն, որ աս բռնած ճամբանին մոլորական էր և ճշմարտութեան երբեք չէր կրնար հասցընել զանոնք: Վասնզի ինչպէս ամէն բնական արդիւնք, նոյնպէս լեզուն որ նմանապէս բանաւոր բնութեան արգասիք մըն էր, չէր կրնար անկարգ կերպով յառաջ եկած ըլլալ, այլ որոշ օրէնօք՝ զոր իրենք անփոյթ ընելով՝ հարկաւ բոլոր աշխատութիւննին շատ անպտուղ մնաց:

Նոյնպէս կարծէին նախկին լեզուաբանք որ բառերն իրենց

---

զուին հեռայարաբերութիւն ունենալը գէթ գիտօրէն չէ ցուցուած տակաւին, նոյնչափ վստահութեամբ չենք համարձակիր կարծիք մը յայտնել, բայց հաւանականութեամբ կրնանք ըսել որ անոնք ալ ուրիշ կերպարանք չեն ընծայեր, և անոնց սկզբնաւորութիւնն ալ մերինին չափ խեղճ ու տխուր երեւոյթի տակ կ'ընծայանայ մեր քննութեան: Ուստի, թերեւս ընդհանրապէս ամէն մարդկային լեզուներու նկատմամբ կրնանք ըսել թէ չկայ լեզու որ հաստատուցեալ գիտնականին միտքը կարենայ համոզել թէ գերընական ծրեւք զարդարուած նախաստեղծ մարդուն լեզուին մնացորդն է: Ան սկզբնական և գերընական բարբառն ուրեմն, (որուն երբեմն գոնէ [illegible] գոյութիւնն ալ ունենալն ընդունելու է կարծենք հաւատացեալը), հիմակ արդեամբ գտնուող որեւէ լեզուի մայրը չէ, այլ ան գերընական խօսողութեան կարողութեան հետ անհետ եղած է՝ թերեւս նոյն իսկ նիւթական տարրերովը:

հիմա մեզի ծանօթ զանազան ծանրաբեռն ձեւերովը կային միշտ ։ Չէին գիտեր թէ բառերուն մէջ որ յայտարար նշան են գաղափարաց՝ հարկաւ պէտք գտնուէին մարդու մտաց նշանակիչ էական մասեր՝ գաղափարին հիմնական նշանակութիւնն այլեւայլ կերպով եղանակաւորելու նպատակաւ ։ Անոնք արմատ և ածանցիչ մասունք չէին ճանչնար և անհմուտ ըլլալով ասոնց տարբերութեան՝ որ հիմն է համեմատական լեզուաքննութեան , սոյն գիտութեան հրաշակերտ շինուածքը չկրցան կանգնել ։

Աս իրենց համեմատելու եղանակը դարձեալ դատապարտելի էր՝ նախ ընդունելով համօրէն տիեզերաց ազգերուն լեզուաց սկզբնական միութիւնն՝ որ գիտութեան առջեւ թանձր քողով պատած գաղտնիք մըն է ցարդ ։ Վասնզի միեւնոյն լեզուն՝ եթէ մատենագրութեամբ բաւական հաստատութիւն չստանայ՝ խօսուելով դարէ դար և խօսողներն իրարմէ հեռանալով՝ այնպէս այլակերպ կրնայ փոխուիլ անդադար , որ կարծես նմանութեան կէտ մըն ալ չմնայ ։ .

Սակայն իրենք աս փոփոխելի աշխարհիս մէջ տիրող մշտնջենաւոր փոփոխման անփոփոխական օրէնքը կարծեցին որ մարդկային լեզուն չի պարտաւորեր , ուստի և մեր առաջին նախահարց գործածած լեզուն չունի մեծ տարբերութիւն մեր այժմու խօսածէն * ։ Բայց այսպէս խորհելով սխալեցան և ասոր վկայ են այնչափ մէկզմէկ չհասկցող լեզուներ, որոնք հիմա մեզի ծանօթ են և ասոնք երբեմն մէյմէկ իրարմէ բոլորովին անկախ մայր լեզու չեն կրնար եղած ըլլալ հարկաւ , այլ սկզբամբ նոյն և յետոյ ժամանակաւ փոխուելով միայն իրարու հետ ունեցած նախնական նմանութիւններն չեն կրցած պահել ․ և անկարելի ալ էր որ պահէին , քանի որ մարդու լեզուի գործարաններն այնչափ

(*)Աս մոլորական կարծիքը տակաւին մթով պաշտպանած է ոմանց միտքը, որու հետեւութիւնն եղած է արդի լեզուին գոյութիւնն ուրանալ կամ զայն այլեւայլ արտաքին ձախորդ պատահարաց միայն արդիւնք համարել, զոր մենք չենք կրնար ընդունել նկատելով անոր շատ փոփոխութիւններն, որոնք չէ թէ բռնական այլ բնական արգասիք են լեզուաց բնածին օրինաց ։

ներքոյ ինկած են փոփոխիչ և այլայլիչ պատճառաց ազդեցութեան որչափ ամէն բնական էակ ։ Մանաւանդ Հնդեւրոպական լեզուներն ընդհանրապէս շատ դիւրաւ կը փոխուին ։ Այսպէս մեր գործածած արդի հայախօս բարբառն յոյժ այլակերպ կը հնչէ մեր Հայ նահապետին լսելեաց , և եթէ մեր գորովալից նախահայրն գերեզմանի հանգստէն կարենար ելլել ընտանեօքն հանդերձ՝ ասոնք զմեզ ստուգիւ չպիտի ճանչնային եթէ հայր , մայր , քոյր , եղբայր քաղցր անուններով գոչէինք իրենց , որովհետեւ անոնց ականջներուն նոյն բառերուն ընտելական ձեւերն էին պատար , մատար , սվասար եւայլն , որոնք անոնցմէ բաւական տարբեր հնչիւն ունին ։

Եթէ խօսուող լեզուն հարկ է փոխուի տակաւ , ինչպէս լեզուներն համեմատելով կը տեսնենք ստուգութեամբ , ուրեմն չըկայ գոնէ մեզի ծանօթ Հնդեւրոպական լեզուաց մայր լեզուն , այլ մեռած է՝ յաջորդ թողլով կենդանի դուստրներն, որոնցմով ստուգիւ կենդանի է միշտ՝ ասոնց ծննդեան պատճառն ինք ըլլալով և թողլով դստերաց կերպարանքին վրայ այնպիսի գծեր ու կէտեր , որոնցմով մայրենի կերպարանքը թէ ոչ միշտ գոնէ յաճախ կրնայ գուշակուիլ ։ Մեռած է այն առաջին մայր լեզուն՝ ( որ կը խօսուէր երբ Հնդեւրոպացիք մէկ ազգ էին դեռ կամ բազմաթիւ գերդաստան մը ամփոփ ) չէ թէ միայն իր դստերաց ժողովրդական այլ նոյն իսկ մատենագրական ամենահին լեզուին մէջ , ինչպէս ձեռուընիս հասած քոյր լեզուաց գրաւոր յիշատակարաններէն կրնանք ապահովութեամբ հետեւցընել ։ Վասնզի մինչեւ ազգայնութեանց կազմուիլն և այս կամ այն ազգին լեզուին գրի առնուիլն՝ հարկաւ շատ ժամանակ անցած էր, որ միջոցի մէջ անտարակոյս պիտի խանգարուէր մայրենի ճշգրիտ կերպարանքն՝ նորագոյն ձեւերու տեղի տալով, որոնք չէին կրնար այլ եւս մայրական իրաւունք պահել ։

Բայց ինչպէս որ համամայր քոյրերու մէջ մօրն աւելի նմանող դուստր կը գտնուի , այսպէս ալ քոյր լեզուներուն մէջ կայ. լեզու որ վախճանած մօրն սկզբնական նկարագիրն աւելի նման կ՚ընծայեցնէ , ստացուածք ըլլալով ան ազգին՝ որ կանուխ ժա-

մանակով չքեղ բախտն ունեցած է մատենագրութեամբ իր լեզուն փոփոխութենէ փրկելու և հնագոյն կերպարանօք աւանդելու : Այսպիսի լեզու մըն է ահա Հնդիկ լեզուն, որուն նախապատիւ առաջնութիւնն ընդհանրապէս կարծենք դիւրին չէ ուրանալ : Սակայն նոյն լեզուի մօրն առաւել նմանողութիւնը՝ երիցագոյն քրոջ պատիւ մըն է միայն, և ոչ մայրութեան աստիճան. — Հնդեւրոպական անուանեալ լեզուներն համօրէն քոյր են իրարու * :

Մեռեալն յարուցանել անհնարին է մարդկային զօրութեամբ, որչափ հրաշալի է ուրեմն համեմատական լեզուաքննութեան զօրութիւնն, որ մեր նախահայրներուն մեռած լեզուն կարող եղած է կենդանացնել : Այնչափ դիւրին չէ կարծենք նմանահանութեան արհեստին զաւկըներու գծագրութիւնն համեմատելով՝ մայրենի կերպարանքն բաւական ճշդութեամբ նկարագրել . բայց այնչափ դժուարին չէ լեզուաքննութեան՝ կենդանի դուստրներուն նմանողութեան կէտերն հաւաքելով՝ մայրենի լեզուին դէմքն ընծայեցնել գոնէ երբեմն կատարեալ ապահովութեամբ և յաճախ մեծ հաւանականութեամբ : Ահա այդ է մեր նպատակն, — նախնական հասարակաց մայր լեզուի վիճակին վիճակագրութիւնը տալ, որ պարզութեամբն ու վսեմութեամբն ուշադիր ընթերցողներն ստուգիւ կրնայ զմայլեցնել :

---

* Այս մեր խօսքն իմանալու է նախաւոր մայր լեզուին նկատմամբ, որուն համար կ'ըսենք թէ արդ գոյութիւն չունի : Քոյր լեզուներն յետոյ՝ իրենց կեանքն մատենագրութեամբ ապահովցնելէն վերջ, ծնած են ուրիշ դուստրներ . այսպիսի է, օրինակի աղագաւ, Լատինական լեզուն՝ որ ցարդ կենդանի է մատեաններու մէջ գոնէ և լիուլի իրաւունք ունի մայր կոչուելու Ռոմանեան լեզուներու, որ են Վալաքերէն, Իտալերէն, Գաղղիերէն, Սպաներէն ևայլն :



# ՀՆԴԵՒՐՈՊԱԿԱՆ
# ՆԱԽԱԼԵԶՈՒ

## ԳԼՈՒԽ Ա․

### Միջարկութիւն ։

Եթէ մեր մայրենի Հայ լեզուին ազգակից լեզուներն, որ Հնդեւրոպական անուամբ կը կոչուին հիմակ ընդհանրապէս, նըկատողութեան առնունք, կը տեսնենք խուռն բազմութիւն մը ձեւազարդ բառերու, որոնք նոյն լեզուները խօսող մեծանուն ազգերուն հարուստ գաղափարները բացատրելու կը ծառայեն ։ Բայց եթէ քննական աչքով ան ձեւաշատ բառերուն կազմութեան նայինք և համեմատական ուշադրութեամբ անոնց իմաստներուն տակաւ փոփոխութիւն կրող նշանակութիւնը կշռենք, կը ստիպուինք ընդունիլ փոխանակ այժմու հարստութեան վաղեմի աղքատութիւն թէ գաղափարներու և թէ ասոնց յայտարար արմատներու, որոնք իրենց բաղադրիչ մասերէն զատուելով կը հասնին մինչեւ ան տարրական պարզութեան, զոր աւելի պարզել անհնարին է․ զոր օրինակ է (երթալ) արմատն, որ անլուծանելի պարզութիւն ունի ։

Այս պարզ տարրներու մէջ կան որ խոնարհագոյն (զգայական) և կան որ բարձրագոյն (իմացական) գործողութեամբ կըրնային ստեղծուիլ․ ըստ այնմ արմատներն երկու իրարմէ էապէս տարբեր կարգ կը բաժնուին ։ Արմատներու մեծագոյն մասն

այնպիսի ծանօթութիւններ բացատրելու կը ծառայեն, զորոնք գիտակից, խորհող ենթակայ մը միայն կրնար յօրինել. միայն շատ փոքր մէկ մասն այնպիսի տարրներ են, որոնց ստեղծումը գիտակցութեան և խորհողութեան արգասիք չէ · ինչպիսի են հառաչանք, ձայնարկութիւնք ևայլն: Ասոնց ծագումն ան գոչմամբ է, զոր կը գոչէ մարդ երբ սաստիկ կիրք զգածուի և նովին իսկ ինքնագիտութենէ զրկուի: Անասունն ալ կրնայ հանել սոյնպիսի ցաւ և ուրախութիւն, երկիւղ ու բարկութիւն յայտնող ձայներ և կարծես անասնական տարր մըն են լոկ աս բընազդական գոչիւններն, որ սպրդած մտած են մարդկային խօսուն բարբառոյն մէջ: Սակայն սոսկ երեւոյթ մըն է աղ, հեռաւոր նմանութիւն մը միայն, բոլորովին զուրկ հաստատուն իրականութենէ: Հարկ է ճշդիւ զանազանել զարգացեալ լեզուի մը մէջ գործածուած յատուկ ձեւ ու նշանակութիւն ունեցող բացագանչութիւններն՝ անմիջական սաստիկ յուզմամբ ու բնազդմամբ (իբրեւ բնական հարկաւ առանց գիտակցութեան) արձակուած ձայնարկութիւններէն: Աս վերջին կարգի բնազդեցիկ գոչիւնն իր բնական մերկութեամբն անձեւ և անյօդ՝ բնաւ չունի տեղի մարդկեղէն լեզուին մէջ, նա թէ կարելի ալ չէ, օրինակի աղագաւ, ան յանկարծական զարմացման կամ սարսափման յայտարար պոռոցքը՝ յօդաւոր յարդարուն լեզուի ձայներով մերձաւորապէս իսկ նշանակել. և անյայտ զգացում ցուցնելնուն պատճառաւ անպիտան կը համարուին այն լեզուին մէջ, որ գիտակցութեամբ խորհելու որոշուած է: Ուստի և հարկ էր մարդն այն անյօդ ձայներն յօդաւորէր և այս ինչ կամ այն զգածումն յայտնելու կամաւորապէս սահմանէր: Ահա այս կերպով իրն եթէ ըմբռնենք՝ ինչպէս որ արդեամբք է, ձայնարկութիւններն միւս յօդաւոր բառերու կարգն անցնելով՝ իրենց նախնական անկազմ կերպարանքը կը կորսնցընեն, և գրեթէ ոչինչ կը տարբերին մէկալ տարրներէ՝ որոնք ձայնարկութիւններու հետ բնաւ յարաբերութիւն չունին: Տղան միջարկութեան մը ուղիղ գործածութիւնը ճշդիւ այնպէս կը սորվի ինչպէս ուրիշ որեւէ

*բառ : Հայ մանուկն ո՛չ, վա՛չ գոչելն ան եղանակաւ ուսած է, զոր օրինակ յետոյ ցաւ և ինչ ըսել :*

*Միջարկութեան թէեւ կարեւոր է գործածութիւնը, սակայն իբր օտար ալ ըմբռնուած ըլլալը շատ զգալի է. անորոշ զգածմանէ մը բխած ձայնը չի կրնար մէկ մարմին կազմել ան բառին հետ որ խորհրդով չինուած է որոշակի : Իրեն ներուած է լոկ իբրեւ հանգիստ մտնել պարբերութեան մէջ, երբ մարդու խորհրդածութիւններուն շարքը վայրկենական զգածմամբ մը կ'ընդհատի, ուստի և շատ վայելչապէս անունն առած է* **միջարկութիւն** (interjection), **ընդ միջ արկեալ**, **անկեալ** **Թէեւ** *յետոյ սկսուած է տակաւ այն անտաշ ապաղձը ձեւուիլ և քերականական ստորոգութեանց մէջ առնուիլ, ինչպէս Հայերէն* վայել՝ վա՛յ *էն, Յունարէն՝* αἰάζω, αἰαί *էն, Նոր բարձր Գերմաներէն՝* aechzen, ach *էն, սակայն սոյնգունակ կիրառութիւններն օտար էին արդարեւ Հնդեւրոպական նախամայր լեզուէն, որ սովոր էր սոսկ հետեւեալ սկզբնական ձայնաւորներն* ա, ի, ու *և աս վերջին երկուքին կրկնաձայներն* (diphthongue) այ *և* աւ՝ *իբրեւ ձայնարկութիւն գործածել : Միջարկութիւններու մասին շատ չքաւոր էր մեր առաջին մայր լեզուն, մինչդեռ իր դուստրներէն ոմանք՝ (ինչպէս Յոյնն) իրենց յատուկ դիւրազգած կենդանի բնաւորութեամբ՝ յետոյ ստեղծած են բիւր ձայներ այլ և այլ կրից բացատրիչ :*

*Սակայն այսպէս ձեւի տակ մտնելէն վերջն ալ անորոշութիւնը կը պահէ միշտ ձայնարկութիւնը*, ճանաչողութեամբ յառաջ չգալուն՝ ուղղակի նախապէս չի խօսիր ճանաչողութեան, այլ կը ծառայէ սոսկապէս անձին հաճութեան : Ընդհակառակն բուն գաղափարանիշ տարրներն ուրիշ տեսիլ մը կ'ընծայեցնեն ունկնդրին մտաց և նաեւ նշանագիր գրով նոյն տպաւորութիւնը կը ծնանին :*

---

* Ա՜ հոմ ձայնն որ քանի մը լեզուաց մէջ գրեթէ ամէն զգածում կրնայ յայտնել, ան առանց որոշ նշանակութիւն կը ստանայ, երբ յատուկ առոգանութեամբ մէկտեղ անդամոց շարժումն և դիմաց կերպարանքն ալ հետն ընկերանան :

# ԳԼՈՒԽ Բ.

---

## Բնաձայնք :

Այդ զգածում նշանակող ձայներէն ետև կու գան լեզուի ան տարրներն, որ անշունչ կամ շնչաւոր բնութեան ձայներուն հընչական նմանողութիւնն են կարծես և վայելչապէս Հայերէն Բընաձայնք (onomatopée) կրնան կոչուիլ: Սոյն բնական ձայներու նմանողութիւնը թէ ինքնագիտութիւն չի պահանջեր՝ յայտնի է անկէ որ քանի մը անասուններ ալ այդ կարողութիւնն ունին: Ուրեմն բնաձայնք ալ ձայնարկութեանց պէս իրենց սկզբան կողմանէ՝ մարդու և անասնոյ հասարակ են: Սակայն սա տարբերութեամբ որ երբ անասունը նմանողութեամբ սորված ձայնն առանց հասկնալու և զգալու դարձեալ անփոփոխ կը հնչէ, մարդն ան օտար հնչիւնն իբրև կոշտ անտաշ կը ձևէ կը կազմէ և յօդաւոր կերպարանք կու տայ, բայ ու բան կը շինէ: Եթէ ճըշմարիտ ըլլար ոմանց անհեդեդ բաջաղանքն իբր թէ մարդկային լեզուն տակաւ սկիզբն առած ըլլայ՝ մարդիկ անասնոց պոչիւնն ու պոռոչիւնը նմանաձայն բչելով, հարկ էր լեզուներուն զարգացման համեմատութեամբ բնաձայն տարերք աւելի յաճախէին: Բայց մենք բոլորովին հակառակ երևոյթ կը նշմարենք: Թէև, ինչպէս ձայնարկութեանց վրայ խօսելով ալ վերն ըսինք, քոյր լեզուներէն քանի մը հատը բնութեան նմանելով բնաձայն տարրներն յետոյ յաճախութեամբ ստեղծած են, սակայն հասարակաց մայր լեզուին մէջ եթէ նոյնպիսի արմատներ փնտռելու

ելլենք հաղիւ թէ կրնանք գտնել։ Առաջին լսողութեամբ բնաձայնի հնչիւն տուող բառերն՝ խորագոյն քննութեամբ օրինաք կազմուած ուրիշ բառերու կերպարանք կ'առնուն։ Օրինակի աղագաւ Սանսկրիտերէն गर्गर գարգար* (յորձանք, կոկորդ) բառը բնաձայն հնչիւն կու տայ լսելեաց. սակայն եթէ մանր զննենք կը գտնենք կանոնաւոր կրկնութիւն սկզբնական (նաեւ Սանսկրիտերէն) gar կլանել** արմատին, որուն ժառանգներն են, Յունարէն γέργερος, Լատիներէն gurgula և Հայերէն կոկորդ (= կոր-կոր)։ Նմանապէս կը սխալինք մեծապէս եթէ համարինք որ հետագայ Հայերէն իբրեւ ձայնանկար բնութեան հնչող բառերն՝ որոնցմով հարուստ է մայրենի լեզունիս, բնաձայն ըլլան իսկապէս, ինչպիսի են ճչել ճռճռչել, հաչել հաչհաչել, շաչել շաչշաչել, խանչել խորխոչել, թնչել թառթառել, խնչել խանչել, դընդ-չել դանդչել + եւայլն։ Աս զգալի ձայներն ոչինչ աննման ուրիշ լոկ իմանալի գաղափարներէն, ինչպէս զարմանալի կազմութիւնն իսկ ինքնին կը վկայէ, մարդկային հնարողութեան արգասիք են չէ թէ բնաձայն անխօսուն խղուըրտիւն։ Այսպիսի բառերն՝ որովհետեւ լսելնուն պէս որոշ ձայնի զգացում մը կու տան ականջաց, դիւրամէտ կը գայթենք մոլորութեան մէջ կարծելով զանոնք ճշգրիտ պատկեր բնատուր ձայներու, որոնց հետ իրական նմանութիւն բնաւ չունին. և սոր դիւրաւ կը համոզուինք եթէ խորհելով՝ նմանաձայն բառն ու բնաձայն հընչիւնը մեղմով համեմատենք իրարու։ Սոյնպիսի բնաձայն բառեր

---

* Հարկ է նշանակել, որ օտարազգի հայագիր բառերը մեր գաւառականին սխալաձայն տառերով չեն դրուած, այլ նախնեաց, օտար գաւառականաց և նոյն իսկ ռամկին սովորական ուղիղ հնչման համաձայն։

**Նոյն արմատին հայակերպ երկբարբառեան ձեւերն են կլլ, կուլ, կոլ. Համեմատէ կլլտել, կլանել, նոյնպէս՝ գիշակեր, գազանակուր, ծովակուլ եւայլն, Որկոր բառէն չի կրնար բաժնուիլ նաեւ կոկորդ=կոր-կոր-դ նոյնանիշն։ որ նաեւ Արարատեան լեզուին մէջ կը գտնուի. սակայն առանց մեղմէ փոխ առած կ'երեւին։

տեսնելով առ առաւելն սա ճշմարտութիւնը միայն կը ստիպուինք խոստովանիլ, որ խօսող մարդն հնչիւնն ու հնչական առարկաներն հնչող կամ նման հնչող ձայներով նշանակած է ։ Այսպիսի ձայնի յարմարողութեամբ յորջորջումն առած է նաեւ կկու =կուկու թռչնոյն անունը ֆուֆալէն. համեմատէ Յունարէն κόκκυξ, Լատիներէն cucu-lus. բայց թէ աս և ասոր նման քանի մը դէպքէ անդին չ՚անցնիր բնաձայն նմանողութեանց գոյութիւնը՝ կրնանք բացարձակապէս հաստատել հասարակաց մայր լեզուին հնագոյն վիճակն համեմատութեամբ գիտնալով ։

## ԳԼՈՒԽ Գ.



Տղայամաբառք :

Նմանապէս լեզուին գաղափարական տարերքը չեն կազմեր ան փաղաքշական բառերն, որոնցմով հասարակօրէն մանկունք իրենց մերձաւորագոյն անձինքն ու ստիպողական պիտոյքը կը բացատրեն ։ Այսպիսի յօրինուածութեանց մեծ մասը շատ հին է և նախնի Յաբեթական (Հնդեւրոպական) լեզուի բնիկ ստացուածք ։ Ասոնց կարգէն են mâ, mamâ, nanâ (մայրիկ); pa, papa, tata, ata (հայրիկ, ատոյ) ։ Միթէ այդ փայփայիկ անուանց ողջայք չեղա՞ն հնարագիւտ և պէտք չե՞նք թերեւս ենթադրել որ ասոնց նման բառերով յօրինուած ըլլայ տակաւ ամ–

բողջ մարդկային լեզուն ։ Ոչ բնաւ ։ Տղան՝ մարդկան ազգին ամենահին ժամանակներն իսկ՝ հիմակուան պէս լեզուն չէ թէ ստեղծելու կոչուած այլ ուսանելու պարտաւորուած էր, և այն անուանեալ մանկական լեզուին չէ թէ մանկունք այլ ծնողք եղած են հնարիչ, որ տղուն բերնին ընդունակութեան համեմատ ան փաղաքշական ձեւերն յերիւրած են ։ Որպէս թէ ձեւօքն ու ոտիւք, նոյնպէս խօսողութեան գործարաններովը վաղ սկսելով խաղալ՝ տղան նախ աննշանակ և անկատար անյօդ ձայներ կը թոթովէ, որոնք դիմացնին կեցող խնամակալներուն մամա, պապա չողոմաբառից նման կը հնչեն ։ Հայրն ու մայրն և այլ մանկան դաստիարակները մեծ հոգացողութեամբ կը հաւաքեն այդ տակաւին անորիշ անյօդ բառերն և իրենց յօդաւոր լեզուին համեմատ ուրիշ ձեւ տալով անոնց՝ մամա, պապա փաղաքշականները կը կազմեն յայտնի առոգանութեամբ և զանոնք կը սեպհականեն մանկան մերձակայ գտնուող անձերու և անոնց իմաստն ալ տակաւ կը սորվեցնեն տղուն ։ Իսկ այս փայփայական չողոմաբառից ձեւանալն անհրաժեշտ կախում ունի յայտնի իմաստ ու որոշ ձեւ ունեցող բառերէ կամ արմատներէ, որոնք ծնողաց լեզուին մէջ արդէն իրական գոյութիւն ու գործածութիւն ունին ։ Pa, papa, և ma, mamâ կրճատ ձեւերն չէին նշանակեր հայրիկ, մայրիկ եթէ կանխաւ գոյող լեզուն pa-tar (հայր) և mà-tar (մայր) ամբողջ բառերը չունենար․ վասնզի անոնք ասոնց առաջին վանկերուն զօրութեամբ գոյութիւն ստացած են ։ Ուրեմն աս մանկական լեզուին որպիսութիւնն՝ լուսաւորութիւն չի տար մեզի նախաւոր մարդկեղէն բարբառոյ հանգամանաց վրայ․ փաղաքշական անուանք բնաձայնից յոռեգոյն մէկ տեսակն են, վասնզի տղուն բերնէն լըսուած խեցբեկ անյայտ ձայնին բոլորովին կամածին նշանակութիւն կը յատկացուի և այս տղայաբարոյ բարբառը չի յիշեցներ այն նախաւոր անբանական լեզուին մնացորդն որ կանխեց ըստ ոմանց մարդկային բանաւոր լեզուն, այլ կ՛ընծայեցնէ լոկ մեր Ցաբեթական նախատոհմին գերդաստանական վաղեմի վիճակը ։

Ուրեմն ոչ միջարկութիւնք, ոչ բնաձայնք և ոչ չողոմաբառք՝

տեսնելով առ առաւելն սա ճշմարտութիւնը միայն կը ստիպուինք խոստովանիլ, որ խօսող մարդն հնչիւնն ու հնչական առարկաներն հնչող կամ նման հնչող ձայներով նշանակած է : Այսպիսի ձայնի յարմարողութեամբ յորջորջումն առած է նաեւ կկու = կուկու թռչնոյն անունը ֆուֆալէն · համեմատէ Յունարէն κόκκυξ, Լատիներէն cucu-lus. բայց թէ աս և ասոր նման քանի մը դէպքէ անդին չ'անցնիր բնաձայն նմանողութեանց գոյութիւնը՝ կրնանք բացարձակապէս հաստատել հասարակաց մայր լեզուին հնագոյն վիճակն համեմատութեամբ գիտնալով :

## ԳԼՈՒԽ Գ.



### Ձայնաբառք :

Նմանապէս լեզուին գաղափարական տարերքը չեն կազմեր ան փաղաքշական բառերն, որոնցմով հասարակօրէն մանկունք իրենց մերձաւորագոյն անձինքն ու ստիպողական պէտքը կը բացատրեն : Այսպիսի յօրինուածութեանց մեծ մասը շատ հին է և նախնի Յաբեթական (Հնդեւրոպական) լեզուի բնիկ ստացուածք : Ասոնց կարգէն են mâ, mamâ, nanâ (մայրիկ); pa, papa, tata, ata (հայրիկ, ատոյ) : Միթէ այդ փայփայիկ անուանց տղայք չեղա՞ն հնարագիւտ և պէտք չե՞նք թերեւս ենթադրել որ ասոնց նման բառերով յօրինուած ըլլայ տակաւ ամ-

բողջ մարդկային լեզուն ։ Ոչ բնաւ ։ Տղան՝ մարդկան ազգին ամենահին ժամանակներն իսկ՝ հիմակուան պէս լեզուն չէ թէ ստեղծելու կոչուած այլ ուսանելու պարտաւորուած էր , և այն անուանեալ մանկական լեզուին չէ թէ մանկունք այլ ծնողք եղած են հնարիչ , որ տղուն բերնին ընդունակութեան համեմատ ան փաղաքշական ձեւերն յերիւրած են ։ Որպէս թէ ձեռօքն ու ոտիւք , նոյնպէս խօսողութեան գործարաններովը վաղ սկսելով խաղալ՝ տղան նախ աննշանակ և անկատար անյօդ ձայներ կը թոթովէ , որոնք դիմացնին կեցող խնամակալներուն մամա , պապա չողոմաքառից նման կը հնչեն ։ Հայրն ու մայրն և այլ մանկան դաստիարակները մեծ հոգացողութեամբ կը հաւաքեն այդ տակաւին անորիշ անյօդ բառերն և իրենց յօդաւոր լեզուին համեմատ ուրիշ ձեւ տալով անոնց՝ մամա , պապա փաղաքշականները կը կազմեն յայտնի առոգանութեամբ և զանոնք կը սեպհականեն մանկան մերձակայ գտնուող անձերու և անոնց իմաստն ալ տակաւ կը սորվեցնեն տղուն ։ Իսկ այս փայփայական չողոմաքառից ձեւանալն անհրաժեշտ կախում ունի յայտնի իմաստ ու որոշ ձեւ ունեցող բառերէ կամ արմատներէ , որոնք ծնողաց լեզուին մէջ արդէն իրական գոյութիւն ու գործածութիւն ունին ։ Pa , papa , և ma , mamà կրճատ ձեւերն չէին նշանակեր հայրիկ , մայրիկ եթէ կանխաւ գոյող լեզուն pa-tar (հայր) և mà-tar (մայր) ամբողջ բառերը չունենար ․ վասնզի անոնք ասոնց առաջին վանկերուն զօրութեամբ գոյութիւն ստացած են ։ Ուրեմն աս մանկական լեզուին որպիսութիւնն՝ լուսաւորութիւն չի տար մեզի նախաւոր մարդկեղէն բարբառոյ հանգամանաց վրայ ․ փաղաքշական անուանք բնաձայնից յոռեգոյն մէկ տեսակն են , վասնզի տղուն բերնէն լըսուած խեցբեկ անյայտ ձայնին բոլորովին կամածին նշանակութիւն կը յատկացուի և այս տղայաբարոյ բարբառը չի յիշեցներ այն նախաւոր անբանական լեզուին մնացորդն որ կանխեց ըստ ոմանց մարդկային բանաւոր լեզուն , այլ կ՚ընծայեցնէ լոկ մեր Ցաբեթական նախատոհմին գերդաստանական վաղեմի վիճակը ։

Ուրեմն ոչ միջարկութիւնք , ոչ բնաձայնք և ոչ չողոմաքառք՝

որ Հնդեւրոպամայր նախալեզուին մէջ կարեւոր թեր մըն ալ չեն խաղար, կրնան սոնանել նոյն սքանչելի բարբառոյ անսադիւտ բանաւորութեան, որ վերջին յառկութիւնը կը շողայ ատուեղապէս ան արմատներու վրայ, որոնք զուտ խորհողութեան ծնունդ են։



# ԳԼՈՒԽ Դ.



Գաղափարական արմատք: Բայական եւ դերանունական արմատք։ Բարդութիւն համատարր, այլատարր համանշան արմատոց: Բաղադրութիւն կամ կազմութիւն բայի եւ անուան: Խոնարհում եւ հոլովում:

Հնդեւրոպական մայր լեզուին գեղեցկահիւս ամրաշէն կազմուածքին էական մասերն են լեզուական տարերաց այն միավանկ ձայներն, որոնք գիտակցութեամբ յօրինուած հաստատուն և կատարեալ գաղափարի յուշարար նշաններն են։ Ասոնք դարձեալ երկու կարգ կրնան զատուիլ։ Մէկ մասն որ սակաւ են թուով և ձեւով ոչ այնչափ զանազան a, u *, i մերկ ձայ-

* Կը զգուշացընենք մեր ընթերցողաց մէկ մասն, որ u ձայնաւորին գաղղիական հնչիւն չտան, այլ միշտ ու կարդան, նոյնպէս g բաղաձայնը միշտ գ (այսինքն կ) հնչելու է և ժ ոչ երբեք։

նաւորներէ կամ բաղաձայնով մէկտեղ a ձայնաւորէ՝ ինչպէս ka, ta, ma — դերանուններու կազմիչ մասերն են և աս պատճառաւ դերանուանական արմատ կը կոչուին ։ Երկրորդ մասն որ առաջիններէն շատ աւելի բազմաթիւ են, բովանդակ բայերու և ասոնցմէ ածանցած անուններու հիմն են և ասոնք բայական արմատ անուանուած են ։ Աս արմատներու կազմութեան օրէնքն է միավանկութիւն, այնչափ ձայն բովանդակել որչափ մէկ վանկին ընդունիլ կարող է — i, ta, ad, par, stak, spagh* ։

Ոմանք ջանացած են դերանուանականներն ալ բայական արմատներէ յառաջ բերել, սակայն անպտուղ եղած է աշխատութիւննին և լոկ մակաբերութիւններէ դուրս չեն կրցած ելլել ։ Այսպէս Հնդիկ քերականք ջանացած են ta (Հայերէն դա) դերանուանական արմատը ta (տարածել) բայականէն մեկնել առանց ամենեւին հաւանականութեան ։ Աւելի յարմարութիւն ունէր ma էմ առաջին դէմքի դերանուանական արմատին ma, man խորհիլ բայականին հետ համեմատութիւնը . սակայն աս փորձն ալ յաջողութեամբ չէ պսակուած, վասնզի ma նախապէս առաջին դէմքի միայն չէր յատուկ, ինչպէս բաւական յայտնի է sma (= sa-ma) և a-mu (= a-ma) այն, նա դերանուանական երրորդ դէմքի արմատներէն ։ Ուստի և աս երկու կարգ (բայական ու դերանուանական) արմատներն իրարու հետ խառնակելու չէ երբեք . և ասոնց անջատմամբը միայն կրնայ ճշմարտիւ մարդկօրէն խօսիլն սկսիլ և յառաջադէմ զարգանալ ։

Հոս հարկ է մոլորութեան մըն ալ առաջքն առնուլ, որ կրնայ ծագիլ շատ խոտորնակ թէ և սովորութեամբ ընդունուած դերանուն = փոխանուն անուան (pronomen) անուանակոչութենէն ։ Այսպէս անուն առած են յիշուած բառիկներն՝ այն զարմանալի ենթադրութեամբ՝ իբր թէ ինքնին զօրութիւն ու նշանակութիւն չունենալով՝ միայն այլ (բայէ ածանցած) անուններու տեղա-

---

*h հ թեթեւ շունչ մըն է, զոր նախալեզուին g, d, b, հնչող բաղաձայնները ունէին ։

պահութեան կամ փոխանորդութեան պաշտօն վարեն ։ Սակայն լաւ մը խորհրդածելով կ՚ըմբռնենք թէ բուն սկզբնական անուն՝ դերանուններն էին , վասնզի անունը բայի գաղափարն ալ առած է վրայ , երբ դերանունն առանց բայի խառնուածոյ անուան գաղափարը կը բովանդակէ , ուստի և բուն անուն ինքն է ։

Ահա մենք այսպէս **գործ** (բայական արմատին) քով համազոյ **անուն** (դերանունական արմատ) մըն ալ դնելով՝ բնապէս հակառակ կ՚ելլենք ան կարծեաց որ կը համարի թէ Հնդեւրոպական լեզուի սկզբնաւորութեան միջոցին եղած է ժամանակ , երբ լեզուն տակաւին **անուն** կազմելու անբաւական ըլլալով լոկ **գործական** արմատներէ (բայերէ) բաղկացած էր ։ Սակայն լեզու մը որ սոսկ գործողութիւն ու վիճակ բացատրել կարենալով՝ անոնց կրողն ալ նշանակելու կարողութիւն չունի , լեզու կոչուելու անարժան է , վասնզի մարդկային խորհրդոց և ոչ անկերպարան բացատրութիւն մը կրնայ համարուիլ ։ Վասնզի ինքնագիտութեան վրայ հիմնուած խորհողութիւնն՝ ամէն խորհուրդն երկու չական մասանց բաժնելով կը սկսի , այսինքն՝ գործը գործողէն անջատելով և դարձեալ միացնելով , և որովհետեւ չունինք բնաւ հիմ հաստատելու թէ միտքն որ պարզական զօրութիւն է , տակաւ գոյութեան գալով՝ լրութիւնն ու ամբողջութիւնն յետոյ ստացած ըլլայ , անոր համար հարկ է ընդունինք թէ առաջին մարդուն գիտակցութեանն ալ բնածին էր այդ անջատելոյ և յօդելոյ կարողութիւնը ։ Իսկ այս անջատումն զգալի եղած , երեւան եկած (բացատրուած) է ուրոյն բայց միաժամ ստեղծմամբ ան

ձայնից , որոնցմէ ոմանք **գործող** (դերանուն=անուն) , իսկ ոմանք ալ անոր գործը ( բայ ) կը նշանակէին ։ Ուստի և ամէն դերանուն արմատի մէջ իբրեւ ընդհանուր գաղափար և հիմնական նշանակութիւն պարունակուած կը գտնենք՝ բոլորովին ընդհանրապէս ըմբռնուած **նա** մը , իբրեւ զգալի կամ իմանալի գործող և արդիւնագործ ։ Աս ընդհանուր անորոշ գաղափարն իսկոյն բնապէս բաժնուեցաւ՝ գործողին առ խօսողն ունեցած մերձաւոր կամ հեռաւոր առնչութենէն և այսպէս երեւան եկաւ **ես** , **դու** , **նա** , իբր **նա ու ես** , **նա ու քեզ** , **նա ու նմա** ։ Ցետոյ աս

բայի ու դերանուան արմատներն — որ իսկզբան անդ զատուցեալ գոյութիւն ու կիրառութիւն չունէին, այլ ստեղծուած էին և կը գործածուէին ի միասին՝ յինքեան ամփոփ և ամբողջ խորհուրդ մը ցուցնելու, կամ՝ որ նոյնն ըսել է, առաջին նախադասութիւնը (préposion) կազմելու համար, — տակաւ սկսան իրարու հետ անձկապէս միաւորիլ։ Ահա ասոնց անձկագոյն միաւորութենէն՝ — որպէս այլ բարդութեանց մէջ ուր ամբողջ բառեր մէկ մէկու հետ կապուելով նոր բաղագրութիւն յառաջ կը բերեն, — առաջին բառակազմութեան սաղմն յղացաւ և սկզբնական բային ու անուան գործարանական (organique) ամուսնութենէն Հնդեւրոպական բառին ճշմարիտ ծնունդը ծնաւ։ Եթէ աս զուգաւորութեան մէջ բայական գաղափարն աւելի ծանրակշիռ գայ՝ բային երեւան կ'ելլէ ad-ma (ուտեմ = ուտել + ես). իսկ եթէ անուանականն առաւել կշռէ՝ կը ծագի անունն ad-tar (ուտող)։ Բարդութիւնն ընդհանրապէս այն անհնարին գործունեայ միջոցն է, որով լեզուի սակաւաթիւ տարրներէն բառերու յորդառուղխ առատութիւնը կը բղխէ։

Աս բարդութիւնն եթէ բարդուած տարերաց նմանութիւնը կամ աննմանութիւնը նկատուի երեքպատիկ է։

Ա. Նոյն տարերք իրարու կը կցին, կամ՝ ինչպէս սովորութիւն եղած է ըսել, կը կրկնուին։ Աս կրկնական բաղադրութեան եղանակն Հնդեւրոպական լեզուին մէջ ընդարձակ տարածութիւն առած է. մինչեւ միջարկութիւնք կը կրկնուին՝ ուժական կամ սաստկադոյն զգածում յայտնելու նպատակաւ. այսպէս Յունարէն αἰαί, Հայերէն վայ վա՜յ և հայ հա՜յ, որոնց բայական զօրութիւնը բովանդակուած է հայհոյելի մէջ. Նոր Պարսկերէնն ալ ունի های هوی های هوی. այսպէս դարձեալ Յունարէն παπαί և Հայերէն բա՛բէ։ Յիշեալ կրկնութեան յաճախագոյն գործածութիւնը կը դիտուի բայական արմատներուն մէջ՝ նշանակութեան այլեւայլ գոյները նկարելու վախճանաւ. զոր օրինակ այսպիսի կրկնական ձեւ կը ցուցընեն բայերուն յաճախական (fréquentatif) կամ սաստկական (intensif) ըսուած եղանակն, որ յոլովակի

կամ ուժգնակի կատարուած գործողութիւն մը կը նշանակէ ։ Սակայն սա եղանակն Հնդիկ լեզուն միայն ունի ։

Նոյնպէս կրկնութեամբ կը գործածուի բայերուն կատարեալ ժամանակին ալ՝ որ անշուշտ գործողութեան երկու զանազան առեն պատահումը նշանակելու համար է ։ Այսպէս da-da ետու (թերեւս = տետու), այսինքն լոր թէ տուի և կու-տամ, ուստի և տուած եմ ։ Յոյնի կրկնաւոր կատարեալ մեր լեզուին մէջ միայն տը-տը-ի մնացած է անկորուստ՝ տա-նեմ բայէն ։

Բ. Բաղադրութեան երկրորդ ձեւն է երբ չէ թէ նոյն այլ նման տարերք իրարու վրայ կը բարդուին ։ Այսպէս բայ բայի հետ միաւորած է ἔσ-θω ( ուտել ) բարդ բայն , որ ἐδ ( ուտել) և θε (դնել) արմատներէն բաղկացած է ։ Աս բարդութեան կերպն ունին զանազան դերանուական բաղադրութիւնք , որոնցմով մեր նախահարք ջանացած են այդ բնութեամբ անկայուն մասնիկներուն (դերանուական արմատներուն) կայ և հաստատութիւն տալ և նշանակութիւններին աւելի ճշդել ։ Այսպէս Հնդկերէն असौ ասաւ ( այս ) դերանունը բաղադրուած է a, sa, u երեք դերանուական պարզ արմատներէ , որոնք առանձինն գործածութիւն ալ ունին ։ Աս երեք տարրները կը գտնուին նմանապէս մեր ահա բաղադրութեան մէջ՝ որոնց վրայ գալով սի-կ , դի-կ , նի-կ դերանուական մասնիկներն՝ երեւան ելած են մեր ծանօթ ահաւասիկ, ահաւադիկ , ահաւանիկ հինգապատիկ բարդերն ։ — Յունարէն οὗτος (այս) բաղադրեալ դերանուան կազմիչ մասունքը նմանապէս երեք հետադաներն են , sa, u, ta. ինչպէս նաեւ Հայերէն դոյն երեք տարերաց բաղադրութիւն է դա , ու , նա . Նոյնպէս սոյն և նոյն ։

Գ. Սակայն բաղադրութեան արգասաւորագոյն եղանակն երրորդն է , որ աննման տարերաց միաւորութիւնն է , այսինքն բայ և անուն միատեղ գալով կը ձուլուին ։ Անձնական դերանունը բայական արմատին հետ միանալով՝ ամբողջ կատարեալ բայն երեւան կու գայ և այս կազմուածքը բառ ու նախադասութիւն է միանգամայն , ad (ուտել) և ma (ես) նախապէս յառաջ բերին ád ma նախադասութիւնն , որ է ուտ(ել) եմ , երկուքն ալ զատ

զատ չեշտուած՝ առանց միանալու, բայց յետոյ միանալով ծնաւ ád-ma մէկ շեշտով միայն, որուն դերանուան ձայնաւորն ալ վերջապէս նուազելով ád-mi (ուտեմ) ձեւն առաւ, զոր այժմ սահմանական եղանակի ներկայ ժամանակին եզակի առաջին դէմք կ'անուանենք և քոյր լեզուաց հնագոյններուն մէջ ցարդ պահուած կը գտնենք, բայց նորագոյններուն մէջ յետոյ ուրիշ ձեւեր ալ առած է։ Ինչպէս մեր մէջ ուտեմ, որ բայական արմատին (ad) թէ ձայնաւորն և թէ բաղաձայնն այլայլելէն զատ (ուտ), բայական ու դերանուանական արմատին մէջ ուրիշ տարր մըն ալ (ե) մուծած և հուսկ նաեւ դերանուան ձայնաւորը (ա) բոլորովին կուլ տուած է՝ անտարակոյս կանխաւ ի նուազումը կրելէն ետեւ և այսպէս երեւան ելած է մեր ուտեմ ձեւն, որուն մայր ձեւն է ա՛տ-մի և հնագոյն եւս ա՛տ-մա։

Նմանապէս բայական ու դերանուանական արմատի միաւորութենէն — սակայն դերանուան նշանակութիւնը կամ զօրութիւնը տիրելով՝ ինչպէս վերագոյն յիշատակեցինք, — յառաջ եկաւ անուանն, որ կոչական անուանեալ հոլովին մէջ իր նախնական ձեւով կ'երեւի։ Օրինակի համար pa պահել և ta տալ քովէ քով գալով եղաւ նախ pá tá, յետոյ páta և վերջապէս páti տէր, ինչպէս վերն ալ այսպէս ալ հոս դերանուան ձայնաւորը նուազելով։ Խօսեցանք ընդհանրապէս թէ ինչպէս բայական ու դերանուանական արմատ միանալով գաղափար մը բացատրելու յարմարութիւն առած են, կը մնայ մեկնել թէ Հնդեւրոպական բառի կազմիչ մասերն որո՛նք են յատկապէս։

Բառ կազմող տարրները երեք կարգ կը բաժնուին։

Ա. Փոփոխական, անկայուն տարերք խոնարհման և հոլովման, որոնք երբեմն անմիջապէս (մանաւանդ բային մէջ) պարզ արմատին վրայ կու գան և երբեմն ալ անոր ուրիշ յաւելուածով աճած ձեւին (յաճախ անուան մէջ) հետ կը կցին։ Աս մասնիկներն — որ բառին տրամաբանական յարաբերութիւնը կը ցուցընեն խօսքին մասերուն հետ, — բայի խոնարհումը և անուան հոլովումը կազմող մասնիկներն են։ Այսպէս vaghâ-mi վարեմ, վարէմ, vaghâ-masi վարեմք, վարէմք, vagha-si վարես, vagha-

tasi *վօքէր* և այլն ։ Նոյնպէս patar-s *հայր*, patar-sas *հարք*, patar-am *զհայր*, patar-am-s *զհարս* և այլն ։

Բ. *Անփոփոխ, կայուն տարերք, որ արմատին վրայ գալով անոր նշանակութեան առումը կը փոխեն ։ Այդ կայուն մասնիկներու վրայ կը յաւելուն յետոյ վերագոյն յիշուած անկայուն նշաններն հոլովելու կամ խոնարհելու համար ։ Նոյն անփոփոխ մասնիկներով կը շինուին հասարակօրէն գոյական և ածական անուններն. ինչպէս* ad-tar *ուտող, կերող, որ* ad *ուտել բայական արմատին վրայ* tar *մակդիրն աւելցընելով շինուած է ։ Բիչ կը պատահի որ առանց այսպիսի մասնիկ մը առնելու բայական մերկ արմատն իբրեւ անուն գործածուի ։ Այսպիսի բացառիկ դիպուած մըն է* vak-s *ձայնք, ձայն, որ* vak *ձայնել արմատին վրայ անմիջապէս բերած է ուղղական հոլովակերտ* s *տառը ։*

*Այդ յիշատակեալ մակդիրները բայի վրայ եկած ատեն՝ կը ծառայեն այլ և այլ ժամանակաց ձեւերը բային մերկ արմատէն որոշելու և հարկաւ ասոր նշանակութիւնն ալ եղանակաւորելու ։ Օրինակի համար այսպիսի տարր են ներկայի և ասոր հետ կապակցութիւն ունեցող ժամանակներու վրայ եկող* nu, u *մասնիկներն, ինչպէս* vas-nau-mi, *զ-գե-նու-մ*, ar-nau-mi, *առնում, համեմատէ Յունարէն* ἕν-νυ-μι *և* ἄρ-νυ-μαι, *որոնք թէ իմաստով և թէ ձեւով նոյն են մերիններուն հետ ։*

Գ. *Վերջապէս բառին բաղադրութեան բոլորովին անշարժական, և հիմնական տարերքն, — որոնց վրայ նախ ամփոփոխ և յետոյ փոփոխական մակդիրք կու գան, — Բայական և դերանուանական արմատներն են, զոր վերագոյն յիշատակեցինք ։*

*Հնդեւրոպական բառին կազմիչ մասերուն վրայ հոս այսչափ բաւական համարելով, անցնինք բայական արմատներու վրայ մասնական դիտողութեանց իջնենք ։*

*—Դերանուանական արմատներն, որպիսի են* sa *սա*, ta *դա*, na *նա*, ya *որ*, ka *ով*, *և այլն, առանձինն դիտողութեան չենք առնուր հոս, որովհետեւ այնչափ կարեւորութիւն չունին ։*



# ԳԼՈՒԽ Ե.

**Արմատ: Սահմանատառ: Որպիսութիւն արմատոց: — Նախալեզուի եւ հայաձայն տառերու համեմատութիւնը:**

Վերոյիշեալ յաւելուածոյ մասերն անջատելէն ետեւ՝ բառին մնացած պարզ տարրը՝ սովորութիւն եղած վայելչապէս ռըմափ կոչել, բուսաբանութենէ փոխ առնելով: Աս անուանակոչութիւնն ամէն նկատմամբ պատշաճական է, վասնզի բառի մը կազմակերպը զանազան ձեւերովն՝ յիշեալ նախնական տարրներէ իբր թէ կը բուսնի կ՚աճի և աս նմանութեան վրայ յենլով կ՚ըսուին երբեմն նաեւ քոն, ծխող արմատին վրայ եկած զանազան յաւելուածներն՝ անկէ հեռանալուն համեմատութեամբ: Արդարեւ ինչպէս ծառն իր արմատէն սնունդ առնելով՝ բունին վրայ կանգուն ոստալից սաղարթազարդ կը բարձրանայ կը տարածուի, այսպէս ալ Յաբեթական տոհմին հաստաբեստ հնօրեայ սաղարթագեղ համատարած լեզուն, որուն ներեւազարդ մեծաշուք հովանույն տակ Հնդեւրոպական տիեզերք կը հանգչին, իր առոյգ կենդանութիւնն ու պարարտ սնունդն առնելով աճած, զարգացած է հիւթեղ բեղմնաւոր արմատներէ:

Աս արմատներուն մէջ՝ որոնց տարրական կազմութիւնն այլ և այլ աստիճանի է, կան ամենապարզ և անլուծանելի տեսակներն ալ, թէ և այսպիսիները սակաւաթիւ են. ինչպէս՝ i Եբ-բոլ, da տոլ: Այդ ամենապարզ արմատներէն բարդուած են նուազ պարզութիւն ունեցողներն՝ արմատական տարերաց վրայ

*եղանակաւորիչ մասեր գալով, այսինքն ոչ նախադաս այլ յե-տադաս յաւելական տարրներով* * ։

*Այդ ամենապարզ արմատին վրայ գալով՝ անոր իմաստն զգա-լի և երբեմն անզգալի կերպով փոփոխող տարրը մի միայն գիր մըն է, զոր մենք* սահմանատու (déterminative) *կ'անուանենք, որ արմատին թէ ձեւը և թէ նշանակութիւնը կ'ամփոփէ, սահմա-նի տակ փակելով կը բացայայտէ ։*

*Այն արմատներն որ աւելի չեն կրնար կամ չեն կրցած լու-ծուիլ* նախնական *կը կոչենք, իսկ ասոնցմէ ածանցուողներն* եր-կրորդական ( secondaire ) *կ'ըսենք ։ Այսպէս* va, գործել *նախնա-կանին վրայ գալով* k, g, dh, bh, r, s *սահմանատուներն՝ ար-մատական նշանակութիւնը փոքր ինչ եղանակաւորելով կ'ածան-ցին երկրորդական արմատներն՝* va-k *և* va-g *պլլուիլ, փաթ-թուիլ,* va-dh *փաթթել, կապել, հագցընել,* va-bh հիւսել, ծածկել, va-r պատել, ծրարել, հովանել, va-s հագուիլ = ընդգրկել փաթթել ։

*Երկրորդական արմատներն ուրիշ սահմանատուով դարձեալ կրնան աճիլ, ինչպէս վերոյիշեալներէն* va-r *ածանցականը* g *և* t *սահմանատուներով կրկին աճելով* va-r-g ծածկել *և* va-r-t դարձընել *կրկնատու սահմանեալներն երեւան եկած են ։*

*Նախնական արմատ, ինչպէս վերագոյն ալ ըսինք, կրնայ բաղկանալ ։* 1. *Միայն մէկ ձայնաւորէ, ինչպէս* a, i, u. 2. a *ձայնաւորէ և հետեւորդ մէկ բաղաձայնէ, ինչպէս* ad, ap, as. *և* 3. *վերջապէս մէկ կամ կրկին կից (կրկնակ) բաղաձայնէ և հե-տեւորդ* a *ձայնաւորէ, ինչպէս՝* da, pa, sa, *և* sta, spa, sna.

---

* *Նախադաս տարրով երբեք չ'աճիր արմատ. ուրիշ են նախդիր մաս-նիկներն որ յետոյ բային հետ ձուլուելով մէկ բառ սկսան համարուիլ ։ Որ-պիսի են, օրինակի աղագաւ, Հայերէն* ըստ, առ, ընդ, ող (ապա), *եայլն ։ Համեմատէ* ըստ-անձն-ել (ըստ և անձն), ող-ոխան-ել (ողա և ոխն), ընդ-ունել (ընդ և ունել), առ-նել (առ և առնուլ) *եայլն ։*

Ուրիշ ձեւ ունեցող արմատները կրնանք ըսել նախաւոր չեն, այլ նախնականներէն յառաջ եկած են կամ ձայնաւորի նուաղմամբ, կամ նախնականներէն անցած են վերագոյն յիշատակեալ սահմանիչ տառերով։

Աս իրաւամբ յանդուգն երեւցող վճռոյս՝ կրնանք նախ զուտ փորձական ապացոյց մը տալ, ցուցընելով թէ վերեւ գրուած երեքկարգեան նախնականներէն այլակերպ ձեւ ունեցող, եթէ ոչ ամէն գոնէ շատ արմատներն առանց բռնութեան կարելի է վերածել ձեւով և իմաստիւ՝ այն եռաչար նախածին պարզագոյն արմատոց։

Ծան. — Հոս մեր քննութիւնն աւելի դիւրացնելու նպատակաւ՝ հարկ է ինչ ինչ դիտողութիւն ընենք նախալեզուին ձայներուն նկատմամբ։ Պէտք է նախ գիտնալ որ մեր հասարակաց մայրենի լեզուին ձայնաւորներն հետեւեալ երեքն էին միայն ա, ի, ու*, միացածներն որ դուստր լեզուներն յետոյ ծնած են, այն առաջիններէն են, ինչպէս Հայերէն ե, է, ը, ո։ Իսկ բաղաձայններէն ծանօթ էին լոկ k, g, gh կոկորդականները. t, d, dh ատամնականները, p, b, bh շրթնականները, y, v կէս-ձայնաւորներն, (որ այսպէս կոչուած են ի և ու ձայնաւորներուն նման ըլլալնուն պատճառաւ) s շչող-ատամնականը. r շփողականը և n ու m ռնգականները։ Ասոնցմէ դուրս գտնուած ձայներն որ հիմակ այլեւայլ դուստր լեզուներու մէջ կը գտնուին,

* Ւ առանձինն որ երբեմն կը հանդիպի, հիսուսոյ և հոգւոյ և առանց նըման դիպուածոց մէջ՝ աւելի ի-ի քան թէ ու-ի նմանութիւն ունէր։ Իսկ թէ նախնիք ինչու ու ձայնը ցուցնող տառ մը չգտան՝ որ անշուշտ մեծ դժուարութիւն մը չէր պատճառեր, ադոր պատճառն Յունական այբուբենքին նման հանգամանաց մէջ պէտք է կարծենք փնտռել, վասնզի Յոյն լեզուն ալ՝ գոնէ մեր Թարգմանիչներուն առենը ου կրկնագիր ձեւով ու ձայնը կը նշանակէր, իսկ υ նշանագիրն որ անտարակոյս ու կը հնչուէր նախնապէս, նոյն ժամանակներն ի-ի նման հնչմունք առած էր, մանաւանդ թէ ի ձայնի նուաղած ալ էր վերջապէս։ Մեր նախնիք, ինչպէս ծանօթ է, նոյն տառին մերթ ի- և մերթ ի ձայնը կու տան։

վերոյիշեալներէն բղխած են զանազան բնախօսական օրինք։ Այսպիսի ածանցական տառեր են մեր մէջ + , ɫ , ʃ , ǂ · քմականաց ամբողջ կարգը՝ ճ , ջ , ւ , և ծ , ʒ , ց · նոյնպէս « , ղ , ժ , ղ · դարձեալ ւ , ղ , ‒ և վերջապէս հ ։ Հոս սա ալ ըսենք անցողակի որ դուստր լեզուներու մէջէն ոմանք ան Հնդեւրոպական մայր ձայները կորսնցընելէ վերջ՝ յետոյ ուրիշ ճամբով դարձեալ ստացած են եթէ ոչ նոյն գոնէ նման հնչմամբ ։ Զոր օրինակ gh, bh, dh շնչող (թաւ) հնչական տառերը մեր լեզուէն բոլորովին ջնջուածկ'երեւին և ասոնց համեմատ չեն գար +, ǂ, ʃ, թէեւ ասոնք ալ շնչող (թաւ) են , միայն սա տարբերութեամբ որ + , ǂ , ʃ , (=կհ, պհ, տհ) հնչական չեն ։ Հնչական հին շնչողներն մեր մէջ եղած են ɡ , ɓ , ɗ · իսկ + , ǂ , ʃ հնագոյն sk, sp, st յօդուածոյ ձայներէն ելած են , ինչպէս հաւանական է բաղաձայնից տեղափոխութեամբ, «՝ հ շունչին փոխուելէն ետեւ կցորդ բաղաձայնին առջեւն անցնելով ։ —Դարձեալ « ատամնական–շչուղը մեր « քմականին հետ նոյն չէ հասարակօրէն և հնագոյն կոկորդականէ յառաջ եկած է ըստ օրինի, ինչպէս քանի մը քոյր լեզուաց մէջ ալ ։ — Նոյնպէս մայրենի լեզուին յ կէս – ձայնաւորը քիչ տեղ պահուած է և մեր յ ձայնը ծագմամբ տարբեր է նոյն տառէն , մեր մէջ շատ տեղ հին նուաղումն է յ ։ — Վերջապէս մայր լեզուին մէջ սկզբնապէս գոյութիւն ունեցողներէն ալ ոմանք , ինչպէս , k, g; t, d; p (b) , ընդհանրապէս սկզբնականութիւն չունին մեր մէջ մանաւանդ երբ 'նախաձայն ըլլան , այսինքն նախալեզուին այս ձայներուն չեն պատասխաներ մեր նոյնաձայն տառերն, այլ ուրիշ մայր ձայներէն աղաւաղելով յառաջ եկած են հասարակօրէն ։ Օրինակի համար մեր կ , փ , (պ) տառերը g, d, (b) մայր տառերուն համեմատ կու գան ընդհանրապէս , այսինքն ասոնց հետ կրնան բաղդատուիլ ։ Ա'ս հասարակ խօսելով Հայ այբուբենքին ձայնական բովանդակածը (systéme) ձայնաւորաց բայց մանաւանդ բաղաձայնից կողմանէ մեծ այլայլութիւն կրած է , և շատ քիչ Հայ ձայն մնացած է որ նախալեզուին հնութիւնն ունենայ ։ Այսչափս բաւական է ընթերցողին լուսաւորագոյն ըմբռնելու համար , սա ճշմարտութեանց

ապացուցումն հարկ է մեր այլ աշխատասիրութեանց թողունք։—

Սահմանատուից վրայ չխօսած՝ պէտք ենք նախ նկատել համեմատութեամբ նորածին արմատներն, որոնք նախնականներէն սերած են չէ թէ օտար՝ ածանցիչ գրի յաւելուածով (աճմամբ), այլ սկզբնական ձայնաւորին այլայլութեամբ կամ նուաղմամբ, երկարմամբ, և երբեմն նաեւ տեղափոխութեամբ։

Հոս սա գիտողութիւնն ալ ընենք, որ Հնդեւրոպամայր լեզուն բաւական երկայնաձիգ ժամանակ ամուլ ապրելէն և մինչեւ պառաւութեան նշաններ տալու սկսելէն ետեւ՝ զանազան դուստրներ ծնած է. վասնզի այն արմատներն՝ որոնց վրայ ստորեւ պիտի ճառենք, նոյն իսկ նախամայր լեզուին մէջ աղաւաղութեամբ յառաջ եկած են։

## ԳԼՈՒԽ Ջ.

### Նուաղում արմատական ձայնաւորի :

Ա. Հնդեւրոպական լեզուաց մէջ ի ձայնի ա հնագոյնէն նուաղելն այնչափ տարածութիւն առած է, որ ստուգելու համար օրինակ խռնել աւելորդ է *։ Այդ նուաղումը կրնայ տեղի ունենալ արմատին թէ սկիզբը, թէ մէջը և թէ վերջը։

* Ան արմատներէն որ թէ ավ և թէ իով գոյութիւն ունին, առաջնոյն երկրորդէն ժամանակաւ կանուխ ըլլալն ամենեւին տարակոյս չի վերցըներ, վասնզի ձայնի բնախօսութեամբ ցուցուած է որ ի աէն կրնար յառաջ գալ, բայց ոչ յետս ընդդէմ։

Սկզբնաձայն (արմատին սկիզբը) նուաղումը ցանցառ է, ինչ-պէս igh ըղձ-ալ որ յառաջ եկած է նոյնանշան հնագոյն agh բաղ-ձալ արմատէն: Ar և ir հասանել, ստանալ: As և is նստել:

Այդ սկզբնատառ նուաղումն յաճախագոյն երեւոյթ մըն է դուստր լեզուներուն մէջ: Այսպէս հին Հնդկուհին ունի iksh* (նայիլ, տեսնել), զոր նախագոյն ձայնաւորով կ'ընծայեցնեն մեզի Հայն աչ (աչել)** և Զանդիկն [illegible] ախշ նոյնիմաստ ար-մատներուն մէջ. այդ ակներեւ ցոյց մըն է Հնդկական ձեւին անհատականութեան, սակայն Հնդիկն ալ հնագոյն aks արմատն անվթար պահած է अक्षि ակշ-ի (աչք) բառին մէջ:

Միջաձայն նուաղման օրինակ ըլլան dak Յունարէն διδάσκω, Լատիներէն doceo և dik Յունարէն δείκ-νυμι, որոնց արմատա-կան նշանակութիւնն է ցուցանել և ասկէ ուսուցանել: Bhid (ճեղ-քել) findere և bhad (ծակել, փորել) fodere: Սոուգիւ աս երկու արմատներուն իմաստին նմանութիւնը շատ ակներեւ է: Դարձեալ nid ὀ-νειδ-ίζω և nad ὄ-νυ-μαι=ὀ-νοδ-μαι որ հաւասա-րապէս կշտամբել, արհամարհել կը նշանակեն: Վերջապէս skid σχίζω, scindo և skad σκεδάννυμι, առաջնոյն իմաստն է ճեղել և երկրորդին ցանել, և Հայ բառերն ոչինչ տարբեր են նախալեզուեան յիշեալ արմատներէն, թէեւ տառերուն կողմա-նէ Հայերէն ճան և ճեղ արմատներն սակաւ ինչ այլայլութիւն կրած են, մեր ց ձայնն հնագոյն հնչող ատամնականէ (d) սե-րելով, որ ուրիշ դիպուածներու վրայ ալ կ'երեւի:

Վերջապէս վերջատառ նուաղման օրինակ ըլլան ma և mi

* sh Անգղիական տճով՝ շ կարդալու է: Աս վերջին տառն ոտովհետեւ » և հ ձայներու խառնուրդ մըն է, անոր համար վերագոյն գրուած կերպով պատշաճ համարուած է նշանակել:

** Թէեւ ոսկի դարու մատենագրութիւնը չի ճանչնար նոյն արմատը, սակայն գաւառալեզուն ցարդ կենդանի կը ցուցնէ աչել՝ նայել, դիտել նշա-նակութեամբ:

մանրել ։ Երբ ամէն քոյր լեզուներն երկրորդ նուազեալ ձեւը միայն ունին ուստի և նախնական կերպարանաց հետքն իսկ կորսնցուցած են, Հայուհին անկորուստ պահած է հնագոյն մայրենի ձայնաւորովմա, որմէ սերած են մա–նու–կ և մա–նու (ման-ր)։ Համեմատէ քոյր լեզուներէն՝ Յունարէն μινύ-ω, Լատիններէն min-uo (մանրել՝ նուազեցուցանել), Գոթացերէն min-s (նուազ) և նոյն իսկ Սանսկրիտէն मिनु մի–նու ։ Վերջաձայն նուազմանց օրինակ են նոյնպէս pi և pa ըմպել և dhi և dha դիել* ։ Բայց կան նաեւ այնպիսի նուազեալ արմատներ, որոնց աննուազ ձեւը գտնել կարելի չէ եղած, այսպիսի են smi ժմայլել, dhi հայել, դիտել և ուրիշ մէկ երկու հատ ։

Բ. Ինչ որ ըսինք արմատական i ձայնի վրայ, նոյնն առաւելագոյն իրաւամբ ըսելու ենք իբրեւ արմատական ձայնաւոր երեւցող u ձայնին նկատմամբ թէ ընդհանրապէս հնագոյն a և երբեմն ալ va ձայնէն ծագում առած է ։

Իբրեւ սկզբնաձայն նուազում կրնանք ըսել թէ բնաւ չի պատահիր u, վասնզի uru (ոռնալ) ru (որոտալ, մռնչել) արմատին կրճատ կրկնութիւնն է փոխանակ ru-ru ․ Նմանապէս uks (աճել, կաթել), ug (զօրանիլ, կազդուրիլ), ud (հոսիլ), us (այրիլ, վառիլ) համառօտութիւնք կամ նուազմունք են vaks, vag, vad, vas նոյնանշան նախնական ամբողջ ձեւերուն ։

Իբրեւ միջաձայն ալ ցանցառ կը պատահի u ։ Այսպիսի են kup (ճօճիլ, երերիլ), որ կից ունի համանիշ նախաւոր ձեւը kap ։ Դարձեալ kruk կռկռչել, որուն դիմաց կան նաեւ համիմաստ krak ու kark ։ Վերջապէս bhugh (ծռիլ) և bhagh (դառնալ) ։

Վերջաձայն նուազմունք են ghu (գովել, գոչել) և gha որ

* Արմատներու վարդապետութիւնն հաստատելու համար օրինակներ չենք յաճախեր, վասնզի պատշաճ տեղն ընդարձակ ցանկը պիտի դնենք նախալեզուին թէ՛ արմատներուն և թէ՛ անոնցմէ ածանցուած կարեւոր բառերուն, զանազան լեզուներու հետ ալ համեմատելով ։

իր կրճատ կրկնաւորն ալ ունի gha-gh, ուր կը հայի նաեւ մեր ճանճ արմատն, որմէ ճանճիւն, ճանճաչեցունել, ճանճատել եւայլն։ Դ.արձեալ du և da տալ, որ ինչպէս այլ լեզուաց նոյնպէս մերինին մէջ պահուած է թէ աննուազ և թէ նուազ ձեւովն, համեմատէ տամ և ետու, տուր, լուսատու, տրիտուր եւայլն։

Անմիջնորդելի կը միան bhu (աճիլ, բուսնիլ), և gu (քալենել), աս վերջնոյն ծնունդ են մեր կով, կոյանոց բառերը։

Նախապէս ar վերջաւորած արմատները տեղափոխութեամբ ra եղած և յետոյ նաեւ ru նուազեալ ձեւն առած են։ Աս երեւոյթը կը ցուցընեն dhru դոյն, դուռն տալ (արմ. դուռ)*, որուն նոյնանշան սկզբնական ձեւը dhvar ցարդ պահելով գոյութիւն ունի դուստր լեզուներուն մէջ, kru (լսել) և kar (լըսելի առնել, հռչակել), pru,plu (լողալ) և par (խաղալ, երթալ) որ նախ տեղափոխութեամբ pra ձեւն առած և յետոյ նաեւ եղած է pru. վերջապէս sru (սողել, սողիլ) նմանապէս sra նոյնանշան միջնորդին ձեւով sar (սահիլ) մայր արմատին սերունդն է։



* Սանսկրիտականին (dh) շունչը հ՝ չին անցնելով ս եղած կ'երեւի, վասն զի ս = չհ է։

# ԳԼՈՒԽ Է.

---

## Աճում — Երկարում եւ Յաւելում — արմատական ձայնաւորի :

Նշանակութիւնն աւելի որոշ և ազդու ընելու կամ եղանակաւորելու նպատակաւ և կամ ասոնց նման ուրիշ փոխճանաւ մը՝ սկիզբ եղած էր մեր հասարակաց լեզուին շատ հին ատեններն իսկ՝ նախնական a ձայնաւորը կրկին հնչել կամ երկարել. իսկ երբ որ նախնական a նուաղելով i և u (նուաղականներն) յառաջ եկան, կրկնուող (կամ երկար հնչուող) ձայնաւորներուն առաջինն անփոփոխ a մնալով երկրորդ a ն i կամ uի նուաղեցաւ և ասկէ երեւան ելան ai և au կրկնաձայն կամ երկբարբառ ձայնաւորներն, որ որոշ պարագայից մէջ միայն կ՚երեւան : Արդ-աս ամէն երեւոյթները միանգամայն աճում ձայնաւորի կը կոչենք. իսկ նոյն ձայնաւորի աճումն յատկապէս երկարում կ՚անուանենք, ինչպէս à = aa, մինչդեռ աննման ձայնաւորաց աճումն յաւելում կը կոչենք, ինչպէս ai և au կրկնաձայնները :

Ցետոյ երբ i և u (aէն նուաղելով) ծնան և հաստատուեցան, ասոնք ալ սկսան երկարիլ նոյն պատճառաց ազդեցութեան տակ և այսպէս ծագում առին նաեւ î և û երկար ձայնաւորներով արմատներ. սակայն ասոնց երկարումը նախնական լեզուն գրեթէ չի ճանչնար, աւելի արիական լեզուաց յատուկ է և երբեմն նոյն իսկ սոսկ Սանսկրիտի սեպհական երեւոյթ մըն է : Ասկէ կը հետեւի թէ սկզբնապէս չունէր մայր լեզուն i և u նուաղականներն, ապա թէ ոչ ասոնց երկարումն ալ յաճախ պատահելու էր :

Ծան.— Հոս ցաւով խոստովանելու ենք թէ Հայ լեզուն ձայնաւորի երկարութիւնն ու սղութիւնն առանձին տառերով չի նշանակեր։ Թէ նշանագրաց գիւտին առեն այդ զանազանութիւնը զգալի չէր՝ չենք գիտեր, բայց հաւանական է թէ շատ չէր զգացուեր։ Սակայն գրեթէ խնդրական չէ ամենեւին թէ երբեմն նաեւ մեր Հայ Նախահարք խօսելու ժամանակ՝ երկար ու սուղ ձայնաւոր անշուշտ կը զանազանէին. վասն զի դուստր լեզուաց համեմատութեամբ գիտենք ապահովապէս թէ այդ երկարութեան ու սղութեան տարբերութիւնն յայտնի գոյութիւն ունէր՝ նոյն իսկ Նախալեզուին մէջ. ուստի և Հայն ալ այդ զանազանութիւնն ունէր կամ բաժնուած առեն մէկտեղ տարած էր, թէ եւ յետոյ կրնար՝ տակաւ կորուսանել մեծաւ մասամբ և նոյն իսկ պէտք չզգալ նշանագրով յայտնելու։ —

Ա. Նախաձայն a ձայնաւորին երկարումն սկզբնական չէր թէեւ Նախալեզուեան էր *, վասնզի ամէն դուստր լեզուները մի օրինակ նոյն երկարումը չեն ցուցըներ. ap (հասանել, ստանալ) և ոչ արիական լեզուաց մէջ հաւասարապէս երկար է, վասնզի երանեան լեզուն սուղ aով ալ նոյն արմատը կը գործածէ։ Իսկ Եւրոպական դստերք առանց բացառութեան միշտ սուղ ա ունին. համեմատէ Լատիներէն ap-iscor (ստանալ)։ Հոս կը վերաբերին Հայերէն ափ, յափշտակել, և հափ-ափել ** (կլըկնաւոր), բայց արմատական ա ձայնաւորին երկարութիւնը կամ սղութիւնն որոշել չենք կրնար։ Դարձեալ âr (օրհնել, աղաչել) թէեւ երկար ձայնաւորով կ'երեւի, բայց աս երկարութեան նախաւոր չըլլալուն կը վկայէ k սահմանատառով աճած ark (օրհնել, երգել), որ բոլորովին նոյն իմաստն ունի։ Հայերէն աղա-

---

* Այսինքն նախկին Հնդեւրոպացիք երբեք â չեն ստեղծած, այլ սուղ ստեղծուածն յետոյ երկարած են այնպիսի վախճանաւ մը, զոր վերագոյն յիշատակեցինք։

** Յ և Հ յափշտակել և հափափել բայերուն սկիզբն, արմատական չեն, այլ նախդիր են կամ անպէտ շունչ մը։

չել, նոյն արմատին հետ լծորդ է, բայց ամենեւին նշան մը չենք կարող գտնել՝ ձայնաւորին երկարութիւնը կամ սղութիւնը սահմանելու. Յունարէն ἀρ-ά (աղօթք) արմատական երկար ā ունի։ ās (նստիլ) թէեւ միշտ երկար ձայնաւորով գործածուած է բոլոր դուստր լեզուներուն մէջ, սակայն նոյն արմատին հետ անձուկ կապակցութիւն ունեցող Սանսկրիտ आस्था աս-թա (նիստ, կայանք) սուղ ձայնաւոր ունի. Նոյնպէս Յունականն ձեւն ἥ-αται (նստէին, նստան), ուր ամենեւին իրաւունք չունինք համարելու թէ սղումն յետոյ մուտք գտած ըլլայ։

Նաեւ միջատառ â սկզբնական չէ։ vâk (բառաչել, բչել) թէեւ Հնդեւրոպական ժամանակն ալ երկար էր, սակայն չի կրնար զատուիլ vak (գոչել, խօսիլ) արմատէն որ սուղ ձայնաւորով է։ Ձայնաւորի երկարումն հոն անշուշտ Ներկայ* ժամանակին յատուկ էր միայն, որ յետոյ միւս ժամանակներուն վրայ ալ տարածուած է, և այս սովորական երեւոյթ մըն է։ ghrâd (կարկաչել) անջատուիլ չի կրնար ghar ճեղ-ճեղել արմատէն, և անիկայ աւելի աճած է d սահմանատառով։ Նոյնպէս ուրիշ քանի մը միջաձայն âով արմատներ իրենց նախնական aին կրնան հանուիլ։ Իսկ kâs (հազել) և yâs (գործի ածել) արմատներուն ըսկզբնական սուղ ձեւը գտնել շատ դժուար է։ Սակայն ասոնք պատահականութիւն մը իրաւամբ պէտք են համարուիլ և չեն զօրեր դէմ սորվելու որ Հնդեւրոպականյայ նախկին լեզուին մէջ միջատառ âով արմատ ընդունինք։

Ազգաց բաժանումէն առաջ շատ աւելի տարածութիւն առած էր վերջատառ â, այնպէս որ կրնայ մէկը պնդել մինչեւ թէ ամէն աս դրից մէջ գտնուող a կրնար երկարիլ։ Սակայն արիական լեզուները շատ աւելի միտութիւն կը ցուցընեն վերջատառ a ձայնն երկարելու, մինչդեռ Եւրոպական դասերք մայր

* Բայերուն Ներկայ ժամանակին ձեւերն իբրեւ տեւողութեան նշան միշտ միւս ժամանակներու ձեւերէն աւելի ծանր են զանգուածով՝ այսինքն երկար ձայնաւոր ունին կամ ուրիշ յաւելական տարրներ կ՚առնուն, և ասոնք կը կորսուին հասարակօրէն երբ բայն ուրիշ ժամանակի անցնի։

ձեւին աւելի հաւատարիմ գտնուած են, թէպէտեւ ասոնք ալ բաւական յաճախութեամբ նմանադիր երկարումներն ընդունած են։ Այս երկարումները կ'երեւի թէ կամայական էին և նշանակական կարեւորութիւն մը չունէին և այս յայտնի է հետեւեալ օրինակէն։ Նախնի լեզուին մէջ անշուշտ gna և gnâ (ճանաչել) թէ՛ սուղ և թէ՛ երկար ձեւերն հաւասար իրաւամբ կը գործածուէին, վասն զի երկուքէն ալ ըստ կամի կազմուած ձեւեր կը գտնենք դուստր լեզուաց մէջ. օրինակի աղագաւ սուղ ձեւէն ծագում առած են Յունական ὄνομα և Գերմանական naman. ընդհակառակն երկարին սերունդ են արիական ձեւերն, ինչպէս Սանսկրիտերէն नामन् նա՛ման, Զանդերէն 𐬥𐬁𐬨𐬀𐬥 նա՛ման, հին Պարսկերէն 𐎴𐎠𐎶 նա՛մա, Նոր Պարսկերէն نام, և Լատինական nômen, իսկ Հայերէն անուն (= ա-նոմն), սեռ. անուան (= ա-նոման) դարձեալ արմատական ձայնաւորին ամանակն անորոշ կը թողու։

Այդ վերջատառ երկարման կամ սղման տարտամ վիճակն հաստատուն կերպարանք ստացած է յետոյ դուստր լեզուներու մէջ, որոնցմէ ոմանք երկար ձեւը միայն, իսկ ոմանք ալ լոկ սուղն իրենց սեպհականած կ'երեւին, թէեւ ճոխագոյն լեզուներն երկու ձեւերն ալ միանգամայն կը ցուցընեն երբեմն նոյն իսկ մի և նոյն բառի վրայ. այսպէս յունարէն δοτήρ և δωτήρ տուող, δῶτις և δόσις տուրք, և այլն։

Վերջատառ â Հնդեւրոպական մայր արմատներէն յիշենք քանի մը հատ, gâ և ga գնալ, dâ և da տալ, կապել, գիտել, dhâ և dha դնել, դիել, pâ և pa ըմպել, պահել, հովուել, bhâ և bha փայլիլ, երեւիլ, stâ և staստանալ, կալ, snâ և sna լուանալ, նաւել և այլն։

Լեզուաց բաժանումէն առաջ տիրող աս սովորութիւնն երթալով տարածուած է նաեւ այն a ձայներու վրայ, որոնք արմատական չեն այլ ածանցական, և ասոնք ալ դարձեալ կրկին՝ երկար ու սուղ ձայնաւորով գործածուած կը գտնենք այլ և այլ քոյր լեզուներուն մէջ։ Այսպիսի են gnâ և gna ճանաչել որ չէ թէ gan արմատին տեղափոխութեամբ այլ ածանցիչ aի մը յա-

ւելմամբ յառաջ եկած է . ուրեմն gna = gana, ուստի և երկ-րորդ a արմատական չէ , այլ ածանցական ։ Ըս կարգէն են drâ և dra արտորալ, mnà և mna իմանալ, մտածել, yâ և ya երթալ ևայլն ։ Ըսոնց պարզական մայր ձևերն են dar, man, i, որ նոյն նշանակութեամբ շատ կը գործածուին դուստր լեզուաց մէջ ։

Հետազօտութենէս սա կը հետևի որ լեզուաց բաժանումէն առաջ ալ կար սուղ aով վերջաւորած ամէն արմատներն անխը-տիր երկարելու ոչ օրէնքն այլ սովորութիւնը , առանց կարևո-րութիւն տալու նոյն ձայնաւորին արմատականութեան կամ ա-ծանցականութեան , բայց նախաւոր սուղ ձևն ալ չէր դադրած գործածութենէ և բնակերտութեան ինչպէս նաև բայի որոշ ժամանակները կազմելու մէջ յատուկ կիրառութիւն ունէր ։ Սոյն սովորութիւնը շարունակուեցաւ նաև ազգայնութիւնները կազ-մուելէն ետև, միայն սա տարբերութեամբ՝ որ աս միջոցիս սուղ կամ երկար ձևն աս կամ ան ազգին մէջ աւելի ընդհանրակա-նութիւն ստացաւ և երբեմն նոյն իսկ միակ արժողութեան ա-ռաւելութիւնն ունեցաւ ։

Բ. a արմատականին երկարման վրայ ըսածնիս բաւական համարելով՝ անցնինք i ձայնին , որուն երկարումն , ինչչափ կ'ե-րևի , բոլորովին մերժելու ենք Հնդեւրոպական մայր լեզուին՝ արմատին թէ՛ սկիզբը , թէ՛ մէջը և թէ՛ վերջը ։ Աս քմաձայն ձայնաւորին երկարումն աւելի Սանսկրիտ լեզուին սիրելի է , ո-րուն և ոչ Զանդիկ լեզուն կը հաղորդակցի ։ Համեմատէ հին Հնդկերէն ईर्म îrma, որուն Զանդկերէն կը պատասխանէ [illegible] arema, նոյնպէս մերն ալ armunkn ։ Այս երկու վերջին լեզուներն, ինչպէս կը տեսնենք , ձայնաւորի թող երկարում և ոչ նուաղում կը ցուցընեն , այլ պահած են սկզբնական նախաձայն a ձայնա-ւորն անվթար , որով i ձայնի թէ՛ նուաղումը և թէ՛ յետոյ եր-կարումն իբրև յատուկ Հնդկային այլայլութիւն երևան կու-գայ ։ Այս ճշմարտութիւնն աւելի բացայայտ կը տեսնուի եթէ Լատինական armus և Գոթական armis ձևերն ալ բաղդա-տենք ։

Գ. Աւելի հնութիւն և հաստատութիւն կը ցուցընէ արմատական û, թէեւ սոր ալ նախնի ձեւն u երբեմն զուգընթաց է առաջնոյն. այսպէս dhû և dhu խուժել, bhû և bhu բուսանել, աճիլ, rû, lû և ru, lu լուծանել, pû և pu փչել ; հոտիլ, փտիլ. pû միայն Հնդկերէն է ։

Դ. Արմատին մէջ երբեք ai կրկնաձայնը չ'երեւար, և Հնդիկ քերականներուն դրած այսպիսի արմատները բուն i են, ինչպէս քոյր լեզուները կը ցուցընեն ։ Օրինակի համար vêp = vaip յաւելական ձայնաւորով դրուած ձեւը՝ նախապէս vip (ճօճիլ, դողալ) արմատն ըլլալուն կը վկայէ Լատին vib-rare ճօճեցընել ։

Ե. Իսկ au իբրեւ արմատ av և ապէ նուաղած iv և yu ձեւերով կ'երեւայ և ասոնց ամէնն ալ թէ նախնական չեն այլ u պարզ ձայնաւորն է իրենց մայրը՝ կրնայ դիւրաւ ցուցուիլ։ Այսպէս av հաճանել և av օգնել քոյր լեզուաց միջնորդութեամբ կրնան նախաւոր u ի վերածուիլ. dhav (խուժել) ընկեր ունի dhu. նոյնպէս հետեւեալները giv կեալ և gu կեցուցանել, div տխուր լինել և du վառել. tiv և tu ուռնուլ, այտնուլ. div, dyu դիմել և du յղել. miv փոփոխել, և mu մղել, շարժել, Լատիներէն movere. siv և su կարել, skiv, skyu և sku շուել ։ Նոյն կերպով ձեւացած է նաեւ spiv (թքնել) գերմանական արմատն, որուն նախաւոր եւրոպական ձեւն է spu ։



# Գ Լ Ո Ւ Խ Ը.

## Այլայլութիւն – անկում, յաւելում, տեղափոխութիւն – բաղաձայնից :

Արմատական բաղաձայնից կրած այլայլութիւնները ձայնաւորաց չափ ծանրակշիռ չեն ։ Հոս երեք դիպուած կարելի է, անկում, յաւելում և տեղափոխութիւն ։

Ա. Հետեւեալ k, t, n, p բաղաձայններէն առաջ անմիջապէս կից եղող s շչողը կրնայ սահիլ իյնալ. Նոյն իսկ նախազգային ժամանակէն կը գտնենք արմատներ, որոնց սկիզբը նոյն շչողն իյնալու մէտ է, որ դարձեալ երեւան կու գայ երբ կերպով մը բառին մէջ գայ, զոր օրինակ եթէ բառին սկիզբը նախդիր մը գայ ։ Այսպէս kar (գործել, առնել), զոր նախանկար ṣkar ձեւովն բաւական յաճախ կը ցուցընեն Արեաց լեզուները ։ Նոյնպէս kad և skad (խածանել) հաւասար գոյութիւն ունին ։ Շըչողը նմանապէս կորսնցուցած է tan (թնդալ), որուն ամբողջ ձեւն ալ stan հաւասարապէս գործածուած է ։ Դարձեալ ta (կալ), որուն անվթար ձեւն sta շատ աւելի գործածութիւն ունի ։ Իսկ tag և stag (թագուցանել, ծածկել) արմատներուն երկրորդանապական ձեւը միայն Եւրոպական լեզուներուն մէջ պահուած է ։ — Կրնայ nէն առաջ s ինկած ըլլալ եթէ nau (նաւ) բառին բայական արմատն է sna, snu (լուղալ) ։ — Վերջապէս նոյն

ընկումը պատահած է նաեւ բէն առաջ, ինչպէս pu և spu (փըչել) կը ցուցընեն ։

Ծանօթ. — Վերոյիշեալ երկու դասակարգութեանց մէջէն կրկնաձեւ պահուած skad և kad, stan և tan, spu և pu արմատներուն համեմատ կու գան մեր լեզուէն խոփ կամ խոծ*, թոն և փո, որոնց վերջին երկուքն իրենց այս պարզական ձեւերով չեն պահուած մեր մէջ, այլ զանազան ածանցիչ տառերով (դ, գ), աճած են ։ Համեմատէ թոն-դ, որմէ թնդ-ալ, սրտաթունդ, և փո-գ, որմէ կրկնական ձեւով փո-փո-գ-ել ունինք, բայց հին լեզունիս աւանդած է մեզի նաեւ սփո, որ նախաձայն չչողն անկորուստ պահած է, և անկէ ունինք դարձեալ կրկնուած ձեւով սփո-փ-ել ։

Բ. Զանազան քոյր լեզուներ արմատին մէջն այս կամ այն բաղաձայնը մուծանելու սովորութիւնն ունին, որմէ զերծ է մայրենի նախաւոր լեզուն ։ Այսպէս sի և rի մէջ t մը մտցընել Գերմանական - Սլաւեան լեզուաց յատուկ է ։ Աս երեւոյթը կը դիտենք stru (սորել) արմատին մէջ, որուն հասարակաց նախնի ձեւն է sru ։ Այսպէս նաեւ svasar (քոյր) նախալեզուեան ձեւին դիմաց կը գտնենք գոթերէն svistar, նոր Գերմաներէն schwester, Հին Սլաւոներէն sestra ։ Նմանապէս Հին Սլաւոնին միայն ծանօթ է strang (հոգալ), զոր դրացի Լիթուանական ու Գերմանական քոյրերն իսկ sarg գիտեն ։

Գ. Տեղափոխութեան ենթակայ է միայն ր լպիրծ ձայնն, այս ետեւ առաջ սահելու յատկութիւնը նոյն տառն ամէն լեզուի մէջ ունի (և եթէ չենք սխալիր ամենէն աւելի Հայ լեզուիս

* Խոծ (խածանել) արմատին հնագոյն ձեւն էր խոփ, ինչպէս յայտնի է խանփ-ուլ բայէն, որ բուն խածանել ըսել է, վասն զի նախանձիլ իր անձը մանաւանդ ընկերը խածնել մըն է ։ Խանփ արմատին միջամուխ յաւելուածոյ ռնգականին (ն) վրայ քիչ մը եաքը պիտի խօսինք . իսկ թ, փ և ք ձայներուն մեր լեզուին մէջ ծագումն արդէն մեկնած ենք, տես էջ 26 ։

մէջ) ։ Դնենք երկու օրինակ, argh և ragh արգելել և arg արժանել և rag ներկել * ։

Ծանօթ. — Հայերէն երկու արմատներն արգ և արժ բաւական պայծառութեամբ կը ցուցընեն թէ նախնական ձեւն arg է և ոչ rag, ուստի և աս վերջինը տեղափոխութեան հետեւութիւն է ։ Ընդհակառակն Հայերէն արօտ յայտնի չ'ըներ թէ ragh եթէ argh է նախնական ձեւը. վասնզի սկզբնաձայն ա կրնայ անբուն յաւելուած մըն ալ ըլլալ. այս վերջին պատահականութեան թերեւս փոքր ինչ կը նպաստէ երօտ ձեւն՝ ե նախատառով, որ շատ հեղ, ինչպէս գիտենք, հնչման դիւրիչ յաւելուած մըն է անպէտ ։

Մինչեւ հիմա մեր նկատողութեան նիւթ մատակարարող փոփոխութիւններն սա հասարակաց ծանուցիչն ունէին, որ արմատական ձեւին վրայ նոր տարր չէին յաւելուր, այլ միայն արմատական տարերաց նուազմամբ, աճմամբ, կորուսմամբ և յաւելմամբ և տեղափոխութեամբ յառաջ եկած առերեւոյթ նոր արմատներ էին ։ Անցնինք հիմակ արմատի աւելի ծանրակշիռ եղանակաւորութիւններուն՝ արմատին վրայ եկած ծանուցիչ գրերով, զորոնք ածանցաւոր անուանեցինք ։



* Ներքեւ բային արմատը ներք = նի-արք է, ուստի և նի նախդրով հիւսուած, ինչպէս նշող (նշոյլ) = նի-շող, որ յայտնի է շող, շողշողել բառերէն ։ Այսպէս է նաեւ նսեմ = նի-սեմ, թէեւ սեմ (սեւ) մինակ չի գործածուիր մեր մէջ, սակայն քոյրերն ունին, համեմատէ Հնդկերէն श्याम սեամ (մութ) ։

# ԳԼՈՒԽ Թ.

## Սահմանատառք a, n, m եւ կրկնութիւն արմատոց :

Նախ կը ճառենք a, n, m սահմանատառից վրայ, որովհետեւ ասոնցմով ձեւացածներն աւելի մերձաւորութիւն և անձուկ կապ ունին դեռ եւս իրենց պարզագոյն մայր ձեւերուն հետ կամ անոնց հետ զուգընթաց գործունէութիւն իբրեւ երկրորդական ձեւք մայր ձեւերուն պակասութեան լրացուցիչք. մինչդեռ միւս սահմանատառք բոլորովին զատուցեալ առանձինն կեանք կը ցուցնեն և խօսողական գիտակցութեան մէջ մայր արմատէն անջատած հեռացած արմատներ նկատուած են :

Ա. Արդէն նախաւոր լեզուին առեն կային a ով յաւելում կրած արմատներ, որ ընդհանուր սովորութեան համեմատ, ինչպէս վերագոյն յիշատակեցինք, կրնային նաեւ երկարիլ : Ասոր երեւոյթը կը դիտենք հետեւեալներուն վրայ. gya և gi ճնշել, ճմլել. gna և gan ճանաչել. ghva և ghu գոչել, կոչել. dra և dar ընթանալ. dhya և dhi դիտել, bhsa և bhas ուտել, ծամել, ya և i երթալ : Ասոնք ամէնն ալ Հնդեւրոպական ժամանակին կը վերաբերին. լոկ արիական է drá (նիրհել), որուն եւրոպական ձեւն է dar. սոսկ Եւրոպացւոց յատուկ են gnâ և strâ որ gan (ծնանել) և star (ցրուել) նախնականներէն սերած են : Աս աճումն աւելի յաճախ է Յունական լեզուին մէջ θαν և θνη մեռանել, χαμ և χμη ջանալ, յոգնիլ, δαμ և δμη սանձել, եւայլն :

Իսկ եթէ a սահմանատառին նշանակութիւնն հարցուի, սա

հաւանական պատասխանը կարող ենք տալ։ Հնդեւրոպական լեզուաց առաջին լծորդութեան բայերուն ներկայ ժամանակներն աս ա աճումը կը ցուցընեն իբրեւ ներկայ ժամանակի նշան։ Արդ աս ներկայի յատուկ ձեւին յետոյ ընդհանրականութիւն տրուելով, ինչպէս ուրիշ նման դիպուածներէ ալ գիտենք, բայի ընդհանուր արմատական ձեւի մը պէս սկսուած է գործածուիլ։ Ահա աս եղանակաւ par (լնուլ, հեղուլ) եղած է para, նոյնպէս man (իմանալ, խորհիլ) ստացած է manâ ձեւ։ Սակայն para, mana այսպէս ձեւանալով, իբրեւ արմատ նկատուելու սկսածին պէս, կարծես հարկ մըն էր միավանկութեան օրինաց տակ մտնէին և ասով ամփոփուէին ըլլային pra, mna· Աս է յիշեալ երեւոյթին հաւանական մեկնութիւնը և ուրիշ կերպ մեկնել դժուար է եթէ անկարելի չէ, օրինակի աղագաւ՝ իբրեւ տեղափոխութիւն չեն կրնար ըմբռնուիլ pra և mna ձեւերը, վասնզի ան ատեն gya, dhya, ghva ածանցականներն* որ վերագոյն յիշեցինք, պիտի ստիպուէինք ուրիշ եղանակաւ մեկնել, բայց անպատեհութիւն է՝ միեւնոյն երեւոյթը զանազան կերպով բացատրել։ Մեր տուած մեկնութեան հաստատութիւն մըն է Յունական լեզուն, որ ա սահմանատառովանած արմատներուն ամբողջական ձեւն ալ հասուցած է մեզի երբեմն հաւատարմութեամբ. այսպէս θαν-εῖν մեռնիլ, θάνα-τος մահ, θνη-τός մահկանացու. նոյնպէս καμ-εῖν ջանալ, աշխատիլ, καμα-τός և κμη-τός աշխատեալ· դարձեալ δαμ նուաճել, և ասկէ δαμά-τωρ նուաճող և δμη-τός նուաճեալ եայլն։

Ծանօթ.—Մեր մէջ ալ ա սահմանատառովանած արմատներեն, ծնա, գնա, տա, ևլն· որոնցմէ ծնած են ծնանիլ, գնալ, գնայուն, տալ, տացորդ, տացուած եւլն։ Ասոնց ամբողջական արմատական ձեւերըն էին մեր մէջ ծենա; գենա, տենա, որ մեր լեզուին հոգւոյն հա-

---

* Ասոնց սկզբնական ձեւերն ըլլալով gi, dhi, ghu, տեղափոխութեամբ gya, dhya և ghva ձեւերն, ինչպէս յայտնի կը տեսնուի, չէին կրնար առնուլ։

մեմատ ա վրայ եկած ատեն՝ ե ձայնաւորն հարկաւ պիտի տուժէին ։ Իսկ սու աճեցուն արմատն ոչ միայն այլ կրկին պարզ ձեւ կ'երեւայ թէ ունէր , այսինքն սուն և սին․ առջինէն ծնած են հովասուն , ընդասուն եւլն. երկրորդէն ծնունդ առած են , ամուսին , ի միասին , իսկ պարզական արմատին սկզբնական ձայնաւորը պահուած է սուն (ձեռնասուն) բառին մէջ ։

Բ. Ն ունդականով աճած արմատներն առանձինն կարգ չեն կազմեր , այլ ձայնաւորով վերջաւորած արմատներուն օժանդակ ձեւ մըն են և անոնց հետ փոխանակաւ կը գործածուին խոնարհման ատեն որոշ օրինաց համեմատ ։ Ցիշատակենք kan և ka (երգել), gan և ga ծնանիլ , ճանաչել , ճաճանչել , ghan և gha զանել , tan և ta տարածել, stan և sta թնդալ , skan և ska քանդել , svan և sva հնչել , եւլն ։ Ասոնք և ուրիշ ասոնց նմանները կ'երեւի թէ նախալեզուին մէջ սկզբնապէս չկային այլ յետոյ գոյութեան եկած են տակաւ ։

Ն սահմանատառին սկզբնաւորութեան մասին կրնանք ստուգութեամբ ըսել թէ նոյն է բայերուն ներկայ ժամանակին ձեւը կազմող նա և նու մասնիկներուն հետ , Հայերէն բա–նա–մ, բաց–ի , առ–նու–մ , առ–ի ։ Արդ աս կրկին մասնիկներուն ալ ձայնաւորներն (ա, ու) տակաւ նուաղելով, կորնչելով և միավանկութեան օրինաց հպատակելով , բուն արմատին մասն համարուած և այսպէս յառաջ եկած են ունդական վերջով կրճատ միավանկ արմատներ , որ այնուհետեւ բայերուն չէ թէ միայն ներկայ ժամանակը շինելու կը ծառայէին , այլ՝ իբրեւ անկախ և զատ արմատ նկատուելով , նաեւ ուրիշ ամէն ժամանակներուն մէջ ալ սկսած էին մտնել ։ Այսպէս ուրեմն , օրինակի համար , ga–na և ta–nu նախնական ձեւերէն կրճատուելով ելան gan (ճանաչել) և tan (տարածել) վերոյիշեալ արմատներն ։

Գ. Նախընթաց ունդական սահմանատառին կը յարենք շրթնական ունդականն , որ նոյնպէս առաջնոյն նման ազատ գոյութիւն չի ցուցըներ ։ Համեմատենք kam և ka յօժնիլ , gam և ga գնալ , dam և da նուաճել , կաշկանդել , dram և dra ընթա–

նալ, nam և na ծռել, yam և ya բռնել, ram և ra հաճիլ, հեշտանալ։ Իսկ tam հեղձնուլ և vam փսխել, արմատներուն առանց ունդականի պարզագոյն ձեւերը չեն գտնուած։ Եւրոպական սահմանի ամփոփուած են tram, Լատիներէն tremo և tar դողալ, darm, Լատիներէն dormio և dar նիրհել։

Այս սահմանատառին ծագումը մեկնել չենք կրնար, սակայն ան ստոյգ է որ նախաւոր լեզուն շրթնական ունդականով վերջաւորած արմատ բնաւ չէ ունեցած, իսկ անլուծանելի միացած vam և tam արմատները մեր ստացած ապահով արգասիքը չեն կարող տարակուսական թողուլ։

Դ. Առերեւոյթ արմատոց փոքր քանակութիւն մըն ալ կրկնուելով յառաջ եկած է, որ նախապէս յաճախական եղանակի և ներկայ ժամանակի բացատրիչ ու ծանուցիչ ըլլալով՝ ապա ստէպ գործածութեամբ ընդհանրականութիւն ստացած և աս պատճառաւ միավանկութեան օրինաց ալ տակ ինկած են։ Աս կըրճատ կրկնութեանց մեծ մասը բնաձայն են՝, այսպէս kark (= kar-kar) քրքջել, kuk (= ku-ku) քուքալ, քքուել, gag (= ga-ga) կականել, կանչել, կակաչուն լինել, garg (= gar-gar) կարկաչել (= կա-կար-չ-ել), ghagh (= gha-gha) գանգաչել, որ թէեւ չկայ, բայց գանգ-աչեցուցանել բայէն կրնայ հանուիլ. համեմատէ նաեւ արձագանգ. bab (= ba-ba) պապաչել, Յունարէն βαβάζειν, վերջապէս rar (= ra-ra) լալ, բաղդատէ լալիւն, լալական։ — Եւրոպական ազին մէջ միայն կրկնուած են bu-b (=bu-bu), բչել, բառաչել, Յունարէն βοᾶν, Լատիներէն bubere, baubari. parp (= par-par) կարկաչել, պապաչել, համեմատէ փարփար թռչունը, նոյնպէս փորոտալ (որոտալ) որ պարզ ձեւով է։

Ուրիշ կրճատ կրկնութիւնք ալ կան որ բնաձայն չեն, ինչպէս ghagh (= gha-gha) գնալ, համեմատէ Գոթացերէն gaggan. garg (= gar-gar) կլանել, համեմատէ մեր որկոր (= կոր-կոր) և կո-կոր-դ բառերը, dhadh (= dha-dha) ծծել, որուն պարզ ձեւն է dha դիել. վերջապէս pap (= pa-pa) փաղարել, համեմատէ փաղ, փաղար։

Դիտող. — Հայերէն օրինակներէն կը տեսնենք որ կրկնու-թեանց մէջ մեծ թեր կը խաղայ մեր մայրենի լեզուն ալ. Հոս Հայ լեզուիս մանրամասնութեանց իջնել նպատակնիս չէ, օր մը եթէ բախտն ունենանք Հայաձեւ արմատոց կրկնութիւնները դի-տելու, ընդարձակ երփնագոյն տեսարան մը պիտի բանանք այն գեղեցիկ գունագեղ խաղերն ընծայեցնելով, զոր մեր մայրենի լեզուն շողշողալով մթնոլորդին մէջ խաղացած է Հայ օդը բեկ-բեկելով:

# ԳԼՈՒԽ Ժ.

## Սահմանատառք:

Մինչեւ հիմա մեր զննութեան տակ ինկող a, n, m սահ-մանատառերն, ինչպէս նաեւ կրկնութեամբ յառաջ եկած կըր-ճատ արմատներն, ինչպէս նշանակեցինք, իրենց մայր պարզա-գոյն ձեւէն զատ ու ազատ չէին կրնար նկատուիլ, բայց այժմ մեր աչքին առջեւ այնպիսի արմատներ պիտի ելլեն, որոնք բո-լորովին անկախութիւն ստացած և օտարացած են իրենց մօր-մէն: Բաղաձայնից սովորական դասաւորութեան հետեւելով՝ որ հիմակ համեմատական լեզուաքննութենէ ընդունուած է ընդ-հանրապէս, ծանուցիչ և ածանցիչ սահմանատառից վրայ հե-

տաղայ կարգաւ կը ճառենք, k, g, gh; t, d, dh; p, b, bh; r, s. Նախընթաց տառից ցանկէն կը հետեւի որ Հնդեւրոպական մայր լեզուին ամէն ծանօթ ձայն գրեթէ իբրեւ սահմանատառ ալ կրնար գործածուիլ և գործածուած է։ Աս խուզարկութեանս նպատակը պիտի ըլլայ հաւանական ցուցընել որ վերոյիշեալ բաղաձայններով վերջաւորած արմատներն սկզբնական չեն և իրենց պարզագոյն ձեւերն ունին, բացառութեամբ միայն անոնց, որ առջ կամ վերի բաղաձայններուն մէկէն կազմուած են, ինչպէս ak ու ka, ad ու da եւայլն։

Ա. k տառով արմատներն աճեցնելու սովորութիւնն հին և մայր լեզուին շատ ընտելական է, և երկար ատեն կենդանի պահուած դուստր լեզուներու մէջ։ Մայր լեզուն աս սահմանատառով աճած բաւական արմատ կը ճանչնայ։ Մենք կը յիշենք ark մռնչել, հնչել, երգել, ar օրհնել, աղաչել, և տեղափոխութեամբ ra հնչել, rá հաչել։ — ark փայլիլ, շողալ, և ar նոյնանշան, որ հարկաւ կը հանուի մեր արեւ, արեգ, արուսեակ, բառերէն։ Համեմատէ նոյնպէս Հնդկերէն [illegible] տրոր, [illegible] տրորել (կարմիր, բոցագոյն)։ — tak ընթանալ, թանալ։ Առանց մէկալ քոյր լեզուներուն կարօտելու՝ Հայերէնը միայն բաւական է յիշեալ արմատին պարզագոյն ta ձեւն երեւան հանելու, որ մեր մէջ ազգային տառադարձութեան օրինաց համեմատ թաւացած եղած է թա, և ասկէ սերած են թէ՛ թանալ և թէ՛ ընթանալ*։ Իսկ ածանցականն ապահով գոյութիւն չունի մեր մէջ, բայց քոյր լեզուները զայն շատ յաճախ կը գործածեն։ Համեմատէ Յունարէն ταχίς ընթացիկ, արագ, τάχειν, τήχειν հոսել։—pak եփել, զոր մեր մէջ միայն պախ բառը պահած է ապահովութեամբ, նոյն արմատէն է նաեւ տապախ. բայց մենք երկուքին ալ հայու-

*Թէ մեր մէջ ըն=ընդ նախդիր մը կայ՝ ամէն հայ բանասէրք գիտեն։ Դարձեալ յայտնի է, որ յիշուած երկու բայերուն մէջ ալ՝ յաւելական տարր մըն է նա, որ ներկայ ժամանակի միայն յատուկ է եղծի և ընթացայ նոյն յաւելուածներէն զուրկ են։

թիւնը կասկածելի կը համարինք , մանաւանդ վերջնոյն պարա-
կականութիւնը կարծենք թէ անտարակուսելի է · համեմատէ
Նպ· نفخ (ափած) ։ Սակայն պարզական ձեւը pa , հաւանական
նշաններով կ'երեւայ թէ պահուած է նֆ ձեւով , որ կրկնականի
մը = ֆն–ֆ կը թուի թէ մնացորդ է , և այս վերջինը նախ հն–ֆ
ձեւն առնելէն ետեւ՝ վերջապէս նախաշունչ հ տառն ալ թողլով
ն–ֆ կերպարանքն առած է , ուրեմն ն–ֆ=հն–ֆ=ֆն–ֆ։ Աս ճամբով
յառաջ եկած է ոփի բառն ալ , որուն նախընթաց ձեւը կենդա-
նի է հոփի, և նոյն իսկ ասոր մայրն ողջ է տակաւին՝ ֆո–ֆոֆել,
որ բուն հոփէ , շունչ տալ կը նշանակէ , ուստի և ոֆո–ֆ–ել · այս
վերջինն ամենամայրն է բոլոր յիշատակուածներուն ։ — mak և
ma ծայել ։ Պարզ ձեւը ծա՝ արդի լեզուի ծայել բային մէջ է , իսկ
ծափի՝ որ հանած ձայնին նմանողութենէն անուն առած կ'երեւի,
կը բովանդակէ ածանցաձեւը ։ Կան նաեւ նոյնանշան muk և mu ,
որոնց վերջինը ծուն , իսկ առջինը ծունջ և ծռել = ծունչ–ել բա-
ռերուն մէջ ծածկուած է ։ — muk ծոցել և mu ծռել, Լատ· mo-
vere , Գղ· mouvoir · mu նախամայրն այլ եւ այլ Հայ դուստր-
ներ ծնած է զանազան սահմանատառիւք , որ են ծու–փ (մօտա-
նել) , ծու–խ (մխել) , ծու–ծ (մուծանել) ծու–ղ (մղել) և վեր-
ջապէս ծու–ց , որմէ ծոց–ել (զատել , հեռացընել) , որ muk ա-
ծանցականէն սերած է ։ — sark և sar հորկանել , որկանել ։
Պարզագոյնը պահուած է հաւատարմութեամբ մեր աւանդապահ
լեզուին մէջ ։ Գիտենք որ մեր հորկ–անել բայն երկու արմա-
տական ձեւ ունի հորկ և հոր · առջինով կը կազմուին ներկան և
ասոր յարակից ձեւերն , իսկ երկրորդով բային այն ժամանակ-
ներն , որոնք ներկայէն կախում չունին , ինչպէս հոր–է , հոր–էց ,
հոր–եալ ։ — skak թակ–ել և ska համանիշ մայր ձեւն , զոր ա-
ւանդած է մեր մայր լեզուն թա–յ–թա–յ–ել կրկնականին մէջ ։

Աւելի կրնայինք օրինակներն յաճախել , բայց կարծենք այս-
չափս ալ բաւական է զմեզ համոզելու թէ k ստուգիւ սահմա-
նատառ մըն է ածանցիչ յատկութեամբ , որ ազգայնութիւնները
կազմուելէն վերջն ալ՝ գործունէութիւնը պահած է գրեթէ ա-
մէն քոյր լեզուաց մէջ ։ Իսկ եթէ ածանցատառին ծագումն հար-

ցընենք, որ նախալեզուին սկզբնաւորութենէն մինչեւ նոր ատեններն իսկ այսքան կենդանութիւն ցուցած է, կրնանք սա հաւանական պատասխանն տալ: Ամենահին ժամանակէ սկսելով կը գտնենք բայերու վրայ sk = ska ձեւով ներկայաբուն մը (ներկայի յատուկ ձեւ մը) և ասոր հետ կարծենք նոյնացնելու է մեր սահմանատառն, որովհետեւ երբեմն նաեւ իրարու տեղապահի պաշտօն կը վարեն sk և k, և ուրիշ նշաններ ալ կան՝ որոնցմէ կրնայ հաւանականութեամբ հետեւցուիլ թէ ասոնք իրօք նոյն էին երբեմն: Ածանցատառս մեր մէջ հասարակօրէն չ ձայնի նուաղած է, այսպէս փախ-չ-ել, մոռ-չ-ել, հանգ-չ-ել եւայլն, որոնց մէջ՝ թէ չ միայն սահմանական ներկայի յատուկ է, կը հետեւի հետագայ ժամանակներէն փախ-այ, մոռ-այ, հանգ-այ: Բայց կան նաեւ բայեր, որոնց չ տառը բային բոլոր ժամանակներուն վրայ տարածուած է յետոյ, ինչպիսի են ող-ող-ել՝ ող-ող-եցի, հառ-աչ-ել՝ հառ-աչ-եցի եւայլն: — Նախալեզուին Յոյն-Իտալական ճիւղին մէջ՝ սկզբնաւորական (սկսիլ նշանակող) իմաստ մը տրուած է յետոյ նոյն յօդուածոյ sk = չ տառին: Այսպէս Յունարէն γηρά-σχω, Լատիներէն sene-sco ծերանամ, և դարձեալ γι-γνώ-σχω և no-sco ճանա-չ-եմ, ծան-եայ: Վերջին օրինակիս մէջ Հայն, Յոյնն ու Լատինն իրարու հետ կը նոյնանան նաեւ sc = չ ներկայաբուն ածանցիչ մասնկով. հոս դիտողութեան արժանի է սկզբնաւորական նշանակութեան բացակայութիւնը, զոր ճանաչել բայն ոչ մեր և ոչ միւս քոյր լեզուներուն մէջ բնաւ չունի, որ բաւական փաստ մըն ալ է նոյն նշանակութեան նախնական չըլլալուն:

Բ. Նախորդ k և sk տառերուն նուաղումն է կարծես g, թէ և նախալեզուին ժամանակն իսկ ծնունդ առած: Ըստածին հաւանականութեան դրդիչ պատճառ մըն ալ նախ սա դէպքն է, որ երբեմն g սահմանատառին հետ sg բաղադրութիւնն ալ կը գտնենք, ինչպէս kի զուգընթաց մերթ sk ալ կը հանդիպի, համեմատէ sak և sask հեփեփէլ, vrak և vrask հերչյալ, նոյնպէս ալ sag և sasg հաշել, յաճկել, mag և masg ընկղմել, մըրծել: Երկրորդ՝ կը գտնուին տասնի չափ գրեթէ նոյնանշան ար-

թիւնը կասկածելի կը համարինք, մանաւանդ վերջնոյն պարա-կականութիւնը կարծենք թէ անտարակուսելի է. համեմատէ նպ. [illegible] (եփած)։ Սակայն պարզական ձեւը pa, հաւանական նշաններով կ՚երեւայ թէ պահուած է նէ ձեւով, որ կրկնականի մը = ֆէ-ֆ կը թուի թէ մնացորդ է, և այս վերջինը նախ հէ-ֆ ձեւն առնելէն ետեւ՝ վերջապէս նախաշուեշ հ տառն ալ թողլով է-ֆ կերպարանքն առած է, ուրեմն է-ֆ=հէ-ֆ=ֆէ-ֆ։ Աս ճամբով յառաջ եկած է օֆի բառն ալ, որուն նախընթաց ձեւը կենդանի է հօֆի, և նոյն իսկ ասոր մայրն ողջ է տակաւին՝ ֆօ-ֆօֆել, որ բուն հօֆէ, շունչ փուլ կը նշանակէ, ուստի և օֆօ-ֆ-ել. այս վերջինն ամենամայրն է բոլոր յիշատակուածներուն։ — mak և ma ծայել։ Պարզ ձեւը ծա՝ արդի լեզուի ծայել բային մէջ է, իսկ ծաքի՝ որ հանած ձայնին նմանողութենէն անուն առած կ՚երեւի, կը բովանդակէ ածանցաձեւը։ Կան նաեւ նոյնանշան muk և mu, որոնց վերջինը ծուն, իսկ առջինը ծունջ և ծնչել = ծունչ-ել բառերուն մէջ ծածկուած է։ — muk ծոցել և mu ծըել, Լատ. movere, Գղ. mouvoir. mu նախամայրն այլ եւ այլ Հայ դուստրներ ծնած է զանազան սահմանատառիւք, որ են ծու-փ (մոտանել), ծու-խ (մխել), ծու-ծ (մուծանել) ծու-ղ (մղել) և վերջապէս ծու-ց, որմէ ծոց-ել (զատել, չհեռացընել), որ muk ածանցականէն սերած է։ — sark և sar հորէանել, որէանել։ Պարզագոյնը պահուած է հաւատարմութեամբ մեր աւանդապահ լեզուին մէջ։ Գիտենք որ մեր հորէ-անել բայն երկու արմատական ձեւ ունի հորէ և հոր. առջինով կը կազմուին ներկան և ասոր յարակից ձեւերն, իսկ երկրորդով բային այն ժամանակներն, որոնք ներկայէն կախում չունին, ինչպէս հոր-է, հոր-էց, հոր-եալ։ — skak ցոկ-ել և ska համանիշ մայր ձեւն, զոր աւանդած է մեր մայր լեզուն ցա-յ-ցա-յ-ել կրկնականին մէջ։

Աւելի կրնայինք օրինակներն յաճախել, բայց կարծենք այսչափս ալ բաւական է զմեզ համոզելու թէ k ստուգիւ սահմանատառ մըն է ածանցիչ յատկութեամբ, որ ազգայնութիւնները կազմուելէն վերջն ալ՝ գործունէութիւնը պահած է գրեթէ ամէն քոյր լեզուաց մէջ։ Իսկ եթէ ածանցատառին ծագումն հար-

ցընենք, որ նախալեզուին սկզբնաւորութենէն մինչեւ նոր ա-տեններն իսկ այդքան կենդանութիւն ցուցած է, կրնանք սա հաւանական պատասխանն առնուլ: Ամենահին ժամանակէ սկսելով կը գտնենք բայերու վրայ sk = ska ձեւով ներկայա-բուն մը (ներկայի յատուկ ձեւ մը) և ասոր հետ կարծենք նոյ-նացնելու է մեր սահմանատառն, որովհետեւ երբեմն նաեւ ի-րարու տեղապահի պաշտօն կը վարեն sk և k, և ուրիշ նշաններ ալ կան՝ որոնցմէ կրնայ հաւանականութեամբ հետեւցուիլ թէ ասոնք իրօք նոյն էին երբեմն: Ածանցատառս մեր մէջ հասա-րակօրէն չ ձայնի նուաղած է, այսպէս փախ-չ-ել, թռ-չ-ել, հանգ-չ-ել և այլն, որոնց մէջ՝ թէ չ միայն սահմանական ներկայի յատուկ է, կը հետեւի հետագայ ժամանակներէն փախ-այ, թռ-այ, հանգ-այ: Բայց կան նաեւ բայեր, որոնց չ տառը բային բոլոր ժամանակներուն վրայ տարածուած է յետոյ, ինչպիսի են աղ-աչ-ել՝ աղ-աչ-եցի, հառ-աչ-ել՝ հառ-աչ-եցի և այլն: — Նախա-լեզուին Յոյն-Իտալական ճիւղին մէջ՝ սկզբնաւորական (սկսիլ նշանակող) իմաստ մը տրուած է յետոյ նոյն յօդուածոյ sk = չ տառին: Այսպէս Յունարէն γηρά-σχω, Լատիներէն sene-sco ծերանամ, և դարձեալ γι-γνώ-σχω և no-sco ճանա-չ-եմ, ծան-եայ: Վերջին օրինակիս մէջ Հայն, Յոյնն ու Լատինն իրարու հետ կը նոյնանան նաեւ sc = չ ներկայաբուն ածանցիչ մասնկով. հոս գիտողութեան արժանի է սկզբնաւորական նշանակութեան բա-ցակայութիւնը, զոր ճանաչել բայն ոչ մեր և ոչ միւս քոյր լե-զուներուն մէջ բնաւ չունի, որ բաւական փաստ մըն ալ է նոյն նշանակութեան նախնական չըլլալուն:

Բ. Նախորդ k և sk տառերուն նուաղումն է կարծես g, թէ և նախալեզուին ժամանակն իսկ ծնունդ առած: Ըսուածին հա-ւանականութեան դրդիչ պատճառ մըն ալ նախ սա դէպքն է, որ երբեմն g սահմանատառին հետ sg բաղադրութիւնն ալ կը գտնենք, ինչպէս kի զուգընթաց մերթ sk ալ կը հանդիպի, համեմատէ sak և sask հետեւիլ, vrak և vrask հերձուլ, նոյն-պէս ալ sag և sasg ծածկել, յանկչել, mag և masg ընկղմել, մխր-ճել: Երկրորդ՝ կը գտնուին տասնի չափ գրեթէ նոյնանշան ար-

մատներ, որոնք իրարմէ միայն k և g սահմանատառով կը զա-
նազանուին և ասոնք մինչեւ համազգային ժամանակը կ'ըլլեն: Այսչափս այս նկատմամբ հերիք համարելով՝ g ածանցատառի քանի մը օրինակ բերենք: — arg վարել, որ քոյր լեզուներուն մէջ հասարակօրէն տեղափոխութեամբ (որ սովորական երեւոյթ մըն է ր լպիրծ ձայնին քով) կը գտնուի rag ձեւով, ինչպէս Լատ. règ-ere, միայն Հայերէն արած-ել (= վարել) նախաձայն ա ունի. բայց աս նախնականութեան իրաւունք չի կրնար ունենալ ցորչափ ընդունուած կը մնայ թէ Հայ լեզուն սկզբնատառ ր չի տանիր, առանց ա կամ ե յենարանի: Իսկ ածանցականիս պարզական ձեւն ar առնել, յա-րե-րել նշանակութեամբ թէ՛ քոյր լեզուներու և թէ Հայերէնի մէջ պահուած է, համեմատէ մեր ար արմատն, որմէ առ-նել, ար-ար-ի ևայլն: — arg արծ-արծ-ել ուր կը հային նաեւ արծ-նել (= փայլեցնել) և արծ-աթ (= փայլուն), իսկ ar պարզական նոյնանշանէն են մեր ար-եւ (ար-եգ) ար-ուսեակ բառերն, ինչպէս արդէն յիշատակած ենք: — yug լծել (= լուծ-ել). Յուն. ζεύγ-νυμι, Լատ. jungo = jug-no լծել, զուգել: Ասոր պարզականը yu մեր յօ-դել (զօ-դել) ածանցականէն կը հետեւի, բայց կայ նաեւ նոյն մերկ ձեւով քոյր լեզուաց մէջ, ինչպէս Հնդկերէն यु յու: — varg և var վարկ-ել, վարակ-ել: Ածանցականին լծորդ հայերէն արմատն է վարկ ինչպէս յայտնի է դրուածէն. իսկ պարզական ձեւը var մեր մէջ այնչափ յայտնի գոյութիւն չունի պատել, պատպատել նշանակութեամբ, թէեւ այս առմամբ կրնայ երբեմն մեր վարելն ալ մեկնուիլ. բայց միւս քոյրերն var արմատը սոյն իմաստով աւանդած են, այսպէս Հնդ. वृ և Զնդ. վար, ծածկել, պատել կը նշանակեն: Սակայն նոյն իսկ Հայերէն գաղտ և անկէ գաղտնի նոյն պարզագոյն արմատին կը պատկանին, որմէ են նաեւ գեղ-մն (= ծածկոյթ) և գառ-ն (= ծածկեալ) և ասոնց Յունարէն լծորդներն εἶρος գեղմն և ἀρήν գառն, որոնք Յունական տառադարձութեան օրինաց համեմատ իրենց նախաձայն վ գրէն զըրկուած են, զոր մենք ալ դարձուցած ենք, որ՝ ինչպէս Հայ նոյնպէս ուրիշ քանի մը քոյր լեզուաց ալ ծանօթ երեւոյթ մըն է: —

Այդչափ օրինակ կը բաւէ · իսկ սահմանատառիս ծագումն հոս հարկաւ չենք կրնար որոնել, քանի որ զայն լոկ նուաղում կը համարինք k լծակցին, որուն վրայ բաւական խօսեցանք արդէն ։

Գ. Նախորդ սահմանատառն հնագոյն k ի նուաղում կրցանք կարծել, իսկ gh ածանցատառիս հնութիւնն այնչափ բարձր է, որ ծագումն որոշել թող թէ ապահովութեամբ և ոչ հաւանականութեամբ կարելի է ։ Սակայն սա ստոյգ է, որ զgh ալ իբրեւ սահմանատառ հարկ է ընդունիլ, սկզբնական թերևս միայն հետեւեալներն համարելով, որ են agh ձաղձալ և իւր նուաղականն igh ըղձալ ։ Այդ ածանցատառիս ալ քանի մը օրինակ տանք ապահովագոյններէն ։ — dhargh համ-եռաց-ել և dhar դա-նել, հմմ. դար, որմէ կը յայտնուի թէ դա-նել (=դար-նել = դառ-նել) ձեւին մէջ ր ձայնը տուժուած է ։ — bhargh և bhar պառալ · որոնց լծորդ են հայերէն բռանչ և բառ ու բող · առջինէն եղած է բռբռանչ-ել = բռ-բռանչ-ել և միւսէն բառ-բառ-ել ու բող-բող-ել, երեքն ալ կրկնական և քիչ շատ բնաձայն ։ — Սահմանատառիս խոր հնութեան վկայող սա իրողութիւնն ալ յիշատակենք, որ սոյն տառն ածանցական զօրութիւնը կորուսած կ'երեւի նախալեզուն դուստր լեզուներու չըբաժնուած . վասն զի Ասիականաց յատուկ այսպիսի ածանցք մը չէ վկայուած, իսկ հետեւեալ երկուքն որ Եւրոպականաց սահմանին ամփոփուած կ'երեւին — lagh եղեալ եալ, անկեալ ընկել և vargh խեղդել — անշուշտ նախալեզուեան ժամանակն իսկ գոյութիւն ունէին, վասն զի մեր սախարնակ հայերէն լանջ-ք և որոտ-այթ բառերն ալ անոնցմէ զատ ուրիշ արմատներէ չեն կրնար մեկնուիլ ։

Կոկորդական սահմանատառերը թողլով՝ անցնինք ատամնականներուն, որ են t, d, dh ։

Ա. Ամենահին ժամանակներէ սկսելով լեզուաց անհատականութիւնը կազմուելէն վերջն ալ կենդանութենէ չէ դադրած t սահմանատառն, որ ընդհանրապէս մեծ դեր կը խաղայ դուստր լեզուաց մէջ թէև հնդևրոպամայրն այնչափ հարուստ մթերք չ'ընծայեցներ նոյն տառով ածանցած արմատներու ։ Ահա քանի

մը օրինակ ։ — kant քանդ-ել, յունարէն κεντ-έω և ka, որուն կրկնական ձևը բովանդակուած է մեր քայ-քայելին մէջ (էջ 46) · սա բուն հայ է, մինչդեռ քանդել երկբայական հայութիւն ունի, համեմատէ նպ. کند քանդ-ել ։ — kart քերթ-ել և kar քերել, κείρ-ειν · — kit և ki նայիլ, տեսնել ։ Առջինն՝ հնդիկ լեզուի մէջ գոյութիւն ունի թէև նուազեալ ձևով, իսկ երկրորդին հետ նոյն է մեր քէ-ն արմատը ն սահմանատառով, որով, ինչպէս որ յիշատակած ենք, ածանցականք՝ սկզբնականներէն այնչափ չեն տարբեր ։ Նոյն քէն արմատէն կրկնութեամբ կազմուած է քննել (=արմատ՝ քէն-քէն=քէն..քէն) և ասկէ զննել=զ-քննել ։— sput, spu թքել ։ Ածանցականը մենք փոթորիկ բառէն միայն գիտենք, իսկ պարզականն՝ փք—ք-ել (էջ 38) կրկնականէն ։ — Սահմանատառիս բեղմնաւորութիւնը զարմանալի է մանաւանդ եւրոպական դուստր լեզուներուն մէջ · համեմատէ լատ. plec-t-ere և հին բարձր գերմաներէն fleh-t-an հիւսել ։ Առանձինն լեզուներն յետոյ դեռ կարողութիւննին չէին կորսնցուցած պարզական արմատներն այդ սահմանատառով աճեցնելու · այսպէս յունարէն δα-τέ-ομαι (բաժանել), որուն հնդևրոպամայր ձևն է da, դարձեալ ἀρύ-τω (ստեղծել) որ ἀρύ-ω պարզագոյն ձևն ալ ունի առընթեր ։ Նմանապէս լատիններէն me-te-re հնձել, որուն տառամնականէն զուրկ է յունական նոյնանշանն 'α-μύ-ω, նոյնպէս bê-te-re (երթալ), որուն պարզական ձևը յոյն լծակցին քով կը գտնուի βη, որմէ ἔ-βη-ν (չոքայ) ։ Գերմանական լեզուներն ալ նոյն տառով ածանցումներ կը ցուցնեն, ինչպէս գոթերէն al-th-an ծերանալ, լատ. ad-ul-tu-s (չափահաս), դարձեալ գոթերէն ba-th-an օգտել և լատիններէն fa-te-or խօսիլ խոստովանիլ, որ հնդևրոպամայր պարզագոյն bha բան արմատէն ածանցած են նոյն տառամնական սահմանատառով ։ Արդ սա օրինակները յայտնի կը ցուցնեն որ այդ տառով սահմանուածներն ոչինչ տարբեր են նոյն կերպով ածանցուած այլ և այլ անուններուն և յատկապէս -nt, (-ող) և -ta (-եալ) ընդունելութիւններուն ձևերէն ։

Բ. Նախալեզուին d ով աճած արմատներուն թիւը նախըն-

թացէն աւելի կ'երևի, սաոնց մէջէն դարձեալ քանի մը հատն յիշենք։ — kard «որդ-նուլ», որ նոյնանշան skard «խրդ-նուլ» արմատին նուազեալն է, որուն պարզականը skar թէև մենք չունինք, բայց կայ պահուած յունական ἀ-σκαίρ-ω նոյնանշանին մէջ։ — kad «անկանել, հոսկանել, ոսկանել», լատ. cadere, cedere և հայերէն «սատակել»։ Սոր պարզականն հնդիկ ու զանդիկ քոյրերը պահած են ռնգական նով աճած. հնդ. शद् «սատն» (սատակել), զնդ. [illegible] «սատնա» (սատակումն)։ Նաև հին պարսկերէն բեւեռագրութիւնք նոյնն արմատն աւանդած են՝ նախդրիւ [illegible] «Հէ-սատն» (սատակել)։ — gad (գոչել, խօսիլ) մեր կարդալն է, որուն սկզբնական նշանակութիւնը ծաղրածո-ձեռով ձայն հանել, խօսել եղած պիտի ըլլայ։ Պարզականը ga ամփոփուած է մեր կա-կանել կրկնականին մէջ, ն ռնգականով աճած. հնդկերէն ալ गद् «գա՛» (երգել) նոյն արմատն է, թէև երկար է ձայնաւորով և իմաստն ալ ձայնի ուրիշ մէկ եղանակաւորումը կը ցուցնէ։ Նախալեզուին ձայնել ընդհանուր նշանակութիւնն յետոյ դուստր լեզուներուն մէջ կրնար զանազան գոյն առնուլ, և բնական էր որ գաղափարաց յառաջադիմութեան հետևէր։ Սս ըսուածին ուրիշ օրինակ մըն ալ հետևեալն է։ — ghard «ողջել», «ողջել» ածանցականը գոթական լեզուն ունի grêt-an «ողբալ, լալ»։ պարզականը ghar բովանդակուած է նոր բարձր գերմաներէն gel-len «ճչել», «ձայն հանել» բային մէջ, զոր մենք ալ ունինք կրկնաձև ճեր ու ճեղ։ Առջինէն է ճեր ճորճել (ողբս հարկանել), երկրորդէն ճեղ-ճեղ-ել կրկնականը։ Համեմատէ նաև հնդ. घर् «ճհար-ճհար-ա» (քրքիջ), դարձեալ հին հիւսիսային լեզուաց gal-a «երգել»։ — mand «յամել», «սպասել» և man «մնալ»։ Առջինն ունի Հընդիկը՝ «մանդ» (յամել, սպասել, հանգչիլ), իսկ պարզականը պահած ենք մենք «մն-ալ»=«մն-ալ», Յոյնք μέν-ω, μί-μν-ω և Լատինք՝ man-eo նոյնանշան բայերով։ — Վերջապէս smid և smi «ծիծաղել»։ Ածանցականն ունինք մեր «ծմր-ել»=«ծիծր-ել» բային մէջ սկզբնատառ շչողը ծի փոխուած, որ հասարակօրէն չ'ըլլայ ՚ի առջև*։

* Նոյն փոփոխութիւնը կը ցուցնէ նաև «ծորր-ել» = «ծիծր-ել», բայց առի-

Համեմատէ նաև յունարէն μειδ–άω որ սկզբնաձայն շչողը առած է, լեթերէն smaid-it ժպտիլ։ Պարզականը պահած է հնդկերէն սմի (ժպտիլ), որ նոյնպէս պահուած է մեր զմայ-լ-ել բայով (որուն հետ համեմատելու է անգղիերէն smile ժպտիլ), նաև եթէ լ սահ-մանատառ կամ ուրիշ ածանցիչ մասնիկ ըլլայ։ Համեմատէ նոյն-պէս լատիներէն mir–us զմայլելի, հիանալի, և ասկէ mir–ari զմայլիլ, և հին բարձր գերմաներէն smier–en, smiel–en ժպտիլ։ Ժպտիլ և զմայլիլ գաղափարաց նմանութիւնը կարծենք անու-րանալի է։ — Քանի մը խօսք ալ աւելցնենք սահմանատառիս ծագման վրայ։ Թէև ինչպէս զ g նախադրոյն k ի նուազում դը-րինք, նոյնպէս հոս նոյնչափ հաւանականութեամբ կրնայինք զ d սկզբնադրոյն t ի խանգարում համարիլ, սակայն աւելի հա-ւանական կ'երևի da տալ արմատին մնացորդ կարծել, վասն զի ասիկա նշանակութեամբ մեծ յարմարութիւն ունի այսպիսի պաշտօն մը վարելու և իր օժանդակիչ զօրութիւնը քոյր լեզ-ուաց մէջ յետոյ շատ կարևոր դեր խաղացած է արդէն։ Դարձ-եալ պիտի տեսնենք ստորև որ յաջորդ ածանցատառին ալ ծա-գումը՝ յաճախ գործածուած նման արմատով մը պիտի կարե-նանք մեկնել։

Գ. dhով աճածները նախորդին չափ չեն երևար թուով և դժուարալոյծ կը թուին, բայց կրնանք քանի մը ապահով օրինակ գտնել։ — mardh մեղկանալ, որմէ են յունարէն μαλθ–ακός մեղկ, գոթերէն mild–is մեղմ, իսկ մեր մէջ այդ ածանցականը կ'երե-ւի թէ անվթար գոյութիւն չունի, բայց mar պարզականն ստուգիւ ամփոփուած է մեր մեղ–կ, մեղ–մ բառերուն մէջ, որոնց կ և մ տա-ռերն ածանցատառ կամ մասնիկ մը միայն կրնան ըլլալ։ — vardh վերանալ, աճել, զոր բայապէս գործածուած սանսկրիտե-րէն वृध् վարդհ արմատին մէջ կը գտնենք. հոս կը պատկանի նաև յունարէն ὀρθ–ος ուղիղ, վեր, որ գաւառական βορθ–ός ձևէն

---

կայ շրթնական ռնգականն ալ որ դարձուցած է, որ դիւրաւ կրնար պա-տահիլ՝ որովհետև նման են իրարու՝ արտաբերութեան նոյն գործարանով կազմուելնուն։

ալ ունի ։ Իսկ պարզագոյն նոյնանշան var արմատէն է վեր , որմէ վերանալ ։

Գալով սահմանատառիս ծագման՝ չենք դանդաղիր ասոր վրայ dha դնել հնդեւրոպամայր բային կրճատ ձևը ճանչնալու , որ արդէն դուստր լեզուաց մէջ կարևոր դեր կը խաղայ խոնարհման և բնակերտութեան մէջ ։ Բաւական է յիշել յունական θην մասնիկն , որ կրաւորականի անորոշ անցեալը կը կազմէ , նոյնպէս գերմանական da՝ սոյն լեզուի մէջ անցեալ ժամանակի կազմիչ մասնիկ մըն է , վերջապէս յունարէն ἔσ-θω=ἔδ-θω ուտել և ἔσ-θω հօքցնել, որոնք ամէնն ալ վերագոյն յիշուած dha արմատով իրենց լիուլի մեկնութիւնը կ'առնուն ։

Լմնցուցինք ատամնականներն ալ, անցնինք շրթնականներուն , որ են p , (b) bh ·

Ա· Առաջին ածանցատառով աճածներն իրենց բազմութեան համեմատ դիւրին ալ լուծում ունին , մենք հետևեալներն յառաջ կը բերենք ։ — skap քերել, յունարէն σχάπ-τω նոյն իմաստով· իսկ հայերէն միայն կրկնական ձևին մէջ մնացած է ձայնաւորն անվթար ճաք ( ճ=սկ ), որմէ ճաճաքել = ճաք-ճաք-ել, իսկ չկրկնուած ձևին ձայնաւորը նուազած է ճէք կամ ճեղք , որմէ ճք-ել · քերել ու ճէքել կամ ճեղճքել գաղափարներուն նմանութիւնն յայտնի է ։ Իսկ պարզական ska ձևը կ'աւանդէ մեզի ուրիշ քոյրերէն զատ նաև յունարէն σχάω քերել, քծել ։ — trap յօծել, ճմլել, որ գեղեցիկ պահուած է մեր թռ-ըթռք-ել = թռ-թըռք-ել կրկնականին մէջ · հոս կը պատկանի նաև յունարէն τρέπ-ω ե թօց դառնալ ։ Ածանցականիս պարզականը կը ներկայացնեն հնդ· तर् [illegible] (վրայէն անցնիլ) և պնդ· [illegible] (մտնել) ։ — stap հրել, զարնել, մեր ոթափ-ել, թափ-ել, թափ-թափ-ել և թափ-առ-ել բայերուն վրայ չքեղութեամբ կը շողայ ։ Տարակոյս չկայ որ սոնց պարզականն է sta կալ, որուն նաև նշանակութեան կողմանէ նմանութիւնը կրնանք դիւրաւ ըմբռնել , եթէ ածանցականն ըմբռնենք ի վերայ կալ իմաստով ։ Այս ըմբռնումը կ'արդարացնեն նոյն sta արմատէն ուրիշ սահմանատառով աճած արմատք ալ , որ նշանակութեանց նոյն աղերսը կը ցուցնեն , այս-

պէս stag հրել, լատ. tang-o դպչիլ, գոթ. stiggan հրել, որոնց հետ կը համեմատի հայերէն թեկ-ն (=թէկն), թեկ-ունք, կռնակ՝ կռթնելով հրելէն այսպէս կոչուած ։ — Եթէ փորձ մըն ալ փորձենք սահմանատառիս ծագումն իմանալու, պիտի դրդուինք նման մեկնութիւն մը տալ սոր ալ սկզբնաւորութեան ։ Հոն գտանք dha դնել, տնել մայր բայն, հոս ալ մեր դէմ կ'ելլէ ap=pa գործել, որմէ լատիններէն op-us, op-era գործ ելած են ։ Արդ աս երկու բայերու իմաստն իրարու նման ըլլալով կրնային նոյն պաշտօնի՝ այսինքն սահմանատառութեան կոչուիլ նախապէս ։ Յետոյ նոյն ածանցատառն սկսած է հնդիկ լեզուի մէջ անցողական (պատճառական) բայերուն ձեւը կազմել և այն՝ շատ յարմարութեամբ, ինչպէս յայտնի է նշանակութեններէն. այսպէս भापय բհա՛-պա-յա (ընել որ վախնայ, վախցնել) ։

Բ. Սահմանատառ b մը չպիտի կարենանք դնել, վասնզի արմատին վերջն երեւցած տեղերն հնութեան երաշխաւորութիւն չի տար, այլ հնագոյն bh և երբեմն նաեւ v ձայնէ սերած կ'երեւի, նոյնպէս կրճատ կրկնութիւն է մերթ ։ Անցնինք ուրեմն շնչող շրթնականին որ է bh ։

Գ. Ասոր ածանցականներն այնչափ բազմաթիւ չեն երեւար ։ — Gharbh գրաւել, զոր շատ քոյր լեզուներն ալ ունին. համեմատէ գոթ. greip-an, նոր Պարսկերէն گرف գիրիֆ-տան ևայլն ։ Անտարակոյս աս աճած արմատէն է նաեւ գաղաֆ-ար, համեմատէ նոր բարձր գերմ. greif-en գրաւել և be-griff ըմբռնում =գաղափար ։ Պարզականը ghar նոյնպէս գեղեցիկ պահուած է մեր մէջ՝ գերի (=բռնուած), և ասկէ գերել, զոր նաեւ հնդիկներն ունին՝ हृ հար = գհար (բռնել, առնուլ) ։ — Գոհ ըլլալով այս մէկ բայց շատ ապահով հասարակաց օրինակով, յիշատակենք լոկ Հայերէն նոյնատառ ածանցական մըն ալ, որ բովանդակուած է մեր «կիզ-բ-ն» բառին մէջ ։ Ասոր մէջ բ տառին ածանցականութեան բարձրագոյն վկայ մըն է «կզ-անել», որ միանգամայն կը ցուցնէ թէ «կիզ-բ-ն» բառին զ ձայնն անմիջապէս հետեւող բին պատճառաւ սկզբնական « կերպարանքն այլայլած է. իսկ «կիզբն» ալ իր կողմանէ կը վկայէ թէ «կզ-անել՝ արմատա-

կան ՝ ձայնաւորը տուժած է, ուստի և պիտի ըլլար «կն–անել»։ Այս վերջնոյն վրայէն Հնդեւրոպամայր ձեւ մըն ալ եթէ հանել ուզենք՝ միայն skak = skaç կրնայ ըլլալ, որ բարեբախտութեամբ ալ իրօք կը գտնուի յառաջ քալ նշանակութեամբ։ Սկանել ստուգիւ ծագել, յառաջ քալ մըն է և մեր բային սկզբնական իմաստն ուրիշ կերպ դժուարաւ կրնար ըմբռնուիլ։

Կը մնան վերջին սահմանատառքն, որ են r, s.

Ա․ Ոչ դոյզն դժուարութիւն կը պատճառեն առջինով սահմանուածներն, որ բաւական բազմաթիւ ալ են։ Բայց ասոնց դժուարալոյծ հանգամանքը սա միայն կը ցուցնէ, որ այս ածանցատառը միւսները հնութեամբ կը գերազանցէ և թերեւս նախալեզուին առաջին սահմանիչ տառն է։ Դնենք ասոր ալ քանի մը օրինակ։ — Gar քոչել, որ մեր մէջ պահուած չէ, այլ դ = dh և չ = k սահմանատառերով աւելի եւս աճած են — կոչ-դ-ալ և կոչ-կա-չ-ել = կա-կոչ-չ-ել։ Իսկ garին պարզականը ga քոչել կը հետեւի մեր կա-դ = ga-d (էջ 51) և կա-ն = ga-n (էջ 43) արմատներէն, որոնց սահմանատառերն եթէ վերցուին կը մնայ պարզագոյն մայր արմատը ga և Հայերէն կա։ — Ghar քաշել, երթել։ Վերագոյն յիշատակեցինք թէ ասոր լծորդները պահած ենք քեր ու քեղ (էջ 51) արմատներով. իսկ gha պարզականը կրնանք հանել մեր քան-ք կրճատ կրկնականէն, որ կ'երեւայ քանքիւն և արձաքանքք բառերով։ — Dhvar դդել, Խռովել։ Շատ շնորհակալ ըլլալու ենք մեր նախնեաց որ աս արմատը կորստեան ճանկէն կորզած պահած և մեզի աւանդած են Ոսկեբերանի Եսայեայ մեկնութեան մէջ, ուր Հրէից համար ըսուած է՝ «Ընդ ամենայն սփեզերս դդուաղջեալք թափառականք»։ Պարզականը dhu և dhav նոյնպէս պահուած է որոշակի դե-դեւ-ել կրկնականին մէջ․ յայտնի է որ դդուաղել ալ մայր dhvar արմատին կրկնուած ձեւն է։

Պէտք չունինք աւելի օրինակ բերելու․ հոս սա պարագան յիշատակենք որ․ քով ածանցած արմատ գրեթէ չկայ, որ լոկ արիական կամ եւրոպական լեզուաց յատուկ ըլլայ, որմէ կը հետեւի նոյն սահմանատառին խոր հնութիւնը կամ ազգաց բա-

ժանման հետ ածանցական զօրութիւնէն դադարում մը ։ Ծագման վրայ ալ կրնանք ըսել որ r եթէ մասնիկ մը չէ, ստուգիւ ar տանել արմատին կրճատ ձեւն է ։ Եթէ վերջին կարծիքը ճշմարիտ է, ան ատեն d, dh, p ածանցատառից պէս ասոր ալ նշանակութիւն մը տրուած էր նախապէս ։ Թերեւս մեր Հնդեւրոպահայր նախնիք այս կամ այն արմատին յատուկ իմաստին աւելի ոյժ տալու համար կամ նման նպատակաւ մը՝ կը դրդուէին տանել նշանակող բայ մըն ալ մայր արմատին վրայ յաւելուլ ։

Β. Նախընթաց սահմանատառն մեռելութեան երեւոյթ ունէր՝ իրմով ածանցուածներուն իրենց մայր արմատներէն օտարացած ըլլալովը, իսկ s կենդանութեան սա նշանն ունի՝ որ անով սահմանուածներն իրենց մայրերուն հետ նմանութիւննին չեն կորսնցուցած ։ Դարձեալ՝ նախալեզուն այլեւայլ գաւառալեզուաց բաժնուելէն առաջ՝ մեր ածանցատառը տակաւին լիուլի զօրութիւն ունէր եւ ասոր ալ նշան սա իրողութիւնն է որ գաւառաբարբառք յետոյ իրարմէ անկախ՝ այլեւայլ մայր արմատներ նոյն սահմանատառով բեղմնաւորած կ'երեւին ։ Բերենք օրինակներն ։ — Krus եւ kru լսել ։ Կրկին ձեւովն ալ պահուած է մեր մէջ թէեւ նախաձայն « տառը տուժելով՝ լու-ս որմէ լս-ել, եւ լու, որմէ լու-այ, լու-ր, լու-եալ ։ Յաղթատէ յունարէն κλύ-ω լսել, գոթ. hliu-ma լսելիք, զնդ. śru շրու-՝ լսել, եւ հին բարձըր գերմաներէն hlôs-ên լսել ։ — Ghars (մազերը տնկուիլ, քստմնիլ, ցնծալ, ցնորիլ) ձուրչ-ել, կրկնուած ձա-րձուրչել=ձա-ձրուչ-ել եւ ր ինկալով ձա-ձուչ-ել, ձա-ձուչոտ (ծեր), համեմատէ լատ. horr-ere=hors-ere փշնիլ ։ Իսկ պարզականը ghar պահուած կ'երեւայ մեր ձոյզ ( տնկուած) բառին մէջ, իբր յունարէն χέρσ-ος կամ լատիններէն hirs-utus նշանակութեամբ, որոնք նմանապէս ghars ածանցականէն են ։ — Tars չորնալ, ցամքիլ, զոր շատ քոյր լեզուներն ալ հաւատարմութեամբ աւանդած են, այսպէս հնդկերէն तर्ष् տարշ (ծարուիլ, պապակիլ), յունարէն τερσ-αίνω եւ լատիններէն torr-eo=tors-eo (խորովել, չորցնել), terra=tersa (ցամաք, երկիր), գոթերէն thaurs-jan (ծարուիլ)

և հայերէն թօռչ-ամիլ (թառամիլ) և թօրբ-ում-ել * (ծարուիլ, ցամաքիլ, լքուիլ)։ Ածանցականին պարզականը tar թէ մեր մէջ պահուած է թէ ոչ՝ ապահովութեամբ չենք կրնար ըսել, վասն զի մեր թառ (թառամել) արմատը նոյնանշան թօռչ (թարշամել) ձեւէն միայն շ=s ի բացակայութեամբ կը տարբերի, բայց այս տարբերութիւնն աներեւոյթ կրնայ ըլլալ եթէ ա հնագոյն րշ=rs ի միատառ գրութիւնն է, ինչպէս նաեւ ուրիշ օրինակներ կը ցուցնեն. այսպէս տառ (հատղ) նախալեզուին ars (հանել) արմատէն ելած կ'երեւայ։ Աս վերջին պատահականութիւնը միայն կը կասեցնէ զմեզ թառ արմատը թօռչին պարզագոյն ձեւը չհամարելու, որուն բաւական իրաւունք ալ ունէինք, վասն զի երբեմն գրեթէ առանց պատճառի ա կը գտնենք ուր ո կ'սպասէինք, ինչպէս յետ, յետին, հատ, հատին, որ յեղին, հօղին, գրուելու էին, ինչպէս ունինք փառն, փեղին եւ։ Սակայն եթէ թառ երկդիմի կերպարանօքն զմեզ չկրցաւ համոզել իր պարզականութեան, աս նկատմամբ աւելի զօրութիւն պիտի ունենար թօռչա եթէ կարենայինք ապահովութեամբ պնդել որ մեր ծ ձայնըն հնալեզուին t տառէն կրնայ ծնանիլ, որ շատ հաւանական ալ է. և եթէ թօրբ-ում ու թօռ-ա ** ձեւերն իրարու դէմ դընենք՝ թէ ձեւով և թէ իմաստով նոյն կ'ելլեն մէկ մէկու հետ, որով կարծես կ'ստիպուինք ընդունիլ վերջնոյն թէ լծորդութիւնը և թէ պարզագոյն արմատականութիւնը։ Բայց նաեւ եթէ մեր թօռան ալ ակարանայ tar պարզականը ներկայացնելու, կայ հին լատիններէն tor-um=torridum նըան, ցամաք նշանակութեամբ։
— Mars մառնալ, հնդ. मृच् մարչ, և լիթ. միրշ-տի։ Հոս ալ հայե-

* Սկսան նքողել, ծարաւել, նուաղել, և ներգեւել թօռթում-իլ ի քաղցս և ի ծարաւոյ. Եզ. 91. — Ի ի տեղ ը թէեւ ոչ յաճախ բայց երբեմն երեւան կու գայ. տառ ապահով օրինակ մըն է թօռ որ ըստ օրինի ըլլալու էր թօռկամ թոռ. համեմատէ գոթ. thu և լատ. tu եայլն.

** Ո՛չ և ա նոյն են, միայն թէ վերջինն աւելի հին է. համեմատէ յաւանունակ և յունական, բոտանիքական ու բռնանքական եայլն.

րէնի մասին նոյն տարակուսանաց մէջ կը մնանք — ձայնին երկդիմի կերպարանաց պատճառաւ. ուստի և յայտնի չէ թէ ձայնային արմատը մռ՝ mars ածանցականին թէ mar պարզականին ներկայացուցիչն է. մենք առ այժմ առջինն աւելի հաւանական կը համարինք, վասնզի նախընթաց քանի մը օրինակներու մէջ — կրնար միշտ սկզբնական rsի ծագում նկատուիլ: — Vas հագնիլ մեր մէջ պահուած է գե* ձեւով և ծանօթ՝ զ նախդրով զ-գե, որմէ զ-գե-նու-լ, յունարէն ἕν-νυ-μι, ուր մենք ալ Յունաց նման բառին մէջ s շչողը նախ հի փոխած եւ յետոյ անհետ ըրած ենք, որով չենք կրնար պնդել թէ ածանցականիս պարզական ձեւն ամփոփուած ըլլայ մեր գե արմատին մէջ որ ըստուգիւ գեհ=գեւ=vas է, ուստի և աս վերջնոյն մայր va ձեւը փնտռելու ենք բոլոր լեզուներու միջոցով, և իրօք ալ բովանդակուած է հնդիկ वा վա՝ ծածկել, հեռանել արմատին մէջ: — Իսկ լոկ արիական լեզուաց յատուկ ածանցականներէն ունինք aks աչել, որուն ak նոյնանշան պարզականը պահուած է մեր ակն բառով, որմէ ակամնել, համեմատէ լատ. oc-ulus աչք: Աս վերջին հայ բառը կրնայ թէ ak և թէ aks արմատին ծնունդ ըլլալ: Դարձեալ միայն արիական ածանցք է ghus հնչել, գոչել, հայերէն գոչալ և աւելի գոչ-ակել, որ բուն գոչել, լուր տալ կը նշանակէ, պարզականը ghu մեր գոչել բային մէջ պահուած է:

Ամէն սահմանատուներն ըստ կարի նկատելէն ետեւ՝ կը մնայ նախալեզուեան արմատներու ցանկ մը դնել՝ անոնցմէ բուսած կարեւոր բառերն ալ կցելով, հետեւեալ տառական կարգաւ՝ a, i, u; k, (ç,) g, gh; t, d, dh, n; p, b, bh, m; y, r, (l,) v, s



* Հաստատուն ճշմարտութիւն մըն է որ մանաւանդ նախաձայն Վ կրնայ գի դառնալ. ինչպէս գինի vinum, գիտել videre, գործ նրգ. werk, ևլն.

# ԳԼՈՒԽ ԺԱ·

---

## Նախալեզուեան արմատներ:

1· Ak (aç) անցնիլ, թափանցել, հասնիլ, սրանալ, հայ· աս, որմէ ասեղն, և հ և յ նախաչունչ յաւելուածով հասանել, յեսան: Համեմատէ յունարէն ἥχω, ἱχνέομαι գալ, հասնիլ, ἀχόνη յեսան, լատիններէն acus ասեղն: Այս արմատին ներքեւ սա կարեւոր դիտողութիւնն ընենք, որ նախալեզուն կ'երևայ թէ երկու k ունէր, մէկը կոկորդական, միւսը քմական. աս երկրորդն ասիական դասերը և եւրոպականներէն սլաւականներն s ձայնիւ աւանդած են. սակայն բուն սկզբնալեզուն տակաւին այս անջատումը չէր ճանչնար հարկաւ:

2 Ak ականել և aks աչել. լատ· oc-ulus աչք, յուն· ὄσσ-ομαι ականել, ὄσσε աչք երկու, գոթ· ah-jan ականել, զնդ· [illegible] աչէ աչել, [illegible] աշի՝ աչք, և ևն:

3· Ak ծակել, կտրանալ: Մեր ականջ, նաեւ ունկն բառերն աս արմատին կը նային, միայն թէ վերջինը միջասատ ռնգական մը աւելի ունի ank, ասկէ է միանգամայն ունկն, որուն ձայնաւորը նուաղած է. եթէ ասոր քով ալ գրուիլը և ունկունք յոգնականին մէջ ունկեղ նշանակելն աչքի առջև բերենք, բնաւ չենք տարակուսիր հաստատելու թէ ականջ, ունկն և ունկեղ նոյն ak և ank արմատներէն ծագում առած են: Թերևս վերջին ձեւէն չի կրնար զատուիլ վերջապէս նաեւ ընկանել, ընկենել (էյնալ, ճյաւել=ծակել, ծակել): Քոյր լեզուներէն հոս կը պատկանին՝ հնդ.

अङ्क անք՝ և անգ. ծունկ, յուն. ὄγκος կոր, ճանկ, լատ. uncus, դարձ-եալ angulus անկիւն ։

1. Ag, Հնդ. अज् աջ, յուն. ἄγω, լատ. agere ածել, յածել, որմէ ածու՝ ագարակ (=ագրակ) նշանակութեամբ. վերջին բառն որ յուն. ἀγρός, լատ. ager և գոթ. akr-s նոյնանշաններուն հետ լծորդ է, եթէ օտարամուտ չէ, արմատին տառն անվը-թար պահած է ։ Աս արմատին կը հանուի այծ անասունն ալ յածող կամ գր. agile նշանակութեամբ, Յուն. αἴξ, Հնդ. अज աջա՝ այծ ։

2. Ag, ang օծանել որ հնագոյն անծ արմատին միջաձայն ռնգականը նուազելով յառաջ եկած է, ուստի և ն սկզբնական նի տեղը կը բռնէ. համեմատէ Լատ. ung-ere և Հնդ. अञ्ज् անջ օծանել ։ Աս արմատէն է նաև ածուղ (ածուխ), որուն հետ կը համեմատի համանիշ Հնդ. [illegible] անգա՛րա, Լիթ. anglis ևայլն. Հնդ. अग्नि ագ-նի, Լատ. ig-nis հուր նմանապէս նոյն արմատէն են ։ Ածուղ այսպէս կոչուած է նախապէս՝ հրային բնու-թենէն առնելով, իսկ հուրն իրեն շողուն կ'ըմբռնէին նախնիք և օծել կրնայ բնապէս շողացուցանել նշանակել ։

1. Agh, angh նեղել, Յուն. ἄγχω, Լատ. ango և Հայ. անձ-ուկ թէ փափուկ և թէ նեղ նշանակութեամբ. Հայ բառին հետ բաղդատել պէտք է մասնաւորապէս Գոթ. aggvu-s, Հոլ. անգէնք = անձուկ ։ Նոյն արմատին կը վերաբերի նաև օձ, սեռ. օձի՝ որ բուն նեղիչ կը նշանակէ, Հնդ. अहि ահի=ոփհի, Յուն. ἔχις Լատ. anguis, Լիթ. angis ևայլն ։ Նոյն պատճառաւ ապացած է թէ՝ ածել = անձել բային և թէ օձ = անձ բառին ռնգականը ն ի փոխելով ։ Օձին լծորդ է իժ, իժի, Զնդ. [illegible] աժի, բայց աս վերջինն օտար է թերևս ։

2. Agh քաղձել և աւելէ նուազած igh ըղձալ, Հնդկերէն էհ = իհէ, Յուն. ἰχανᾶν (Հեսիւք) ըղձանալ, Լատ. egeo կարօտել, egenus կարօտ ։ Թէ՛ աննուազ և թէ՛ նուազ ձևը պահուած կ'ե-րևայ մեր մէջ՝ աձ և էձ, թէև աստք այնպէս հիւսուած մնա-ծեն մեր քաղձ = ք-աձ-ղ և էղձ = էձ-ղ արմատներուն մէջ, որ քա-կել հանելն այնչափ դիւրին չէ ։ Հոս այնչափ միայն ըսենք որ մեր

է նախատառին նախդրական գրեթէ անուրանալի զօրութիւնը և ղ լծորդ տառին տեղափոխութեան միտումութիւնը՝ մեր կարծի-քը թերեւս ստուգութեան ալ կը հանեն ։

Յ· Agh, ասել, Հնդ. ահ अह = ասէն ։ Մեր աս արմատն, որ մէջ կը բերեն հին Հայ իմաստասիրութեան գեղեցիկ բառերն՝ աս-ութ, անասուն, թերեւս նաեւ առասպել, ասորական տառա-դարձութեան օրինաց համեմատ պէտք էր ըլլալ աղ կամ ադ. բայց նման անկանոնութիւն մը կը ցուցնէ նաեւ ես՝ գոնէ Հնդ. अहम् ահամ = ափհամ և Զնդ. azem ազէմ՝ ես ձեւերուն դիմաց. վասնզի Յուն. ἐγώ, Լատ. ego, Գոթ. ik ես ուրիշ ծագում գու-շակել կուտան, այսինքն աւելի կանոնաւոր ։

Ad ուտել, անվթար նախնական ձեւով նաեւ Հնդկերէն և Զանդկերէն. իսկ Յուն. ἔδω, Լատ. edo և Գոթ. itan, որ մերի-նին պէս թէ՛ ձայնաւորը և թէ՛ բաղաձայնն այլայլած է. եթէ ուտք (ուտելի) բառն ալ հոս կը պատկանի, արմատական ձայ-նաւորն առանց այլայլելու պահած է ։

Զ· ad ատել, լատ. od-isse ատել, od-ium ատելութիւն. և Հայ. ատել ։ Ուրիշ քոյր լեզուաց արմատը չունի ։

An շնչել, փչել, Հնդ. ան अन Գոթ. an-an փչել ։ Հաւա-նական է որ Հայերէն հեն-ծնալ (հեւալ) հոս վերաբերի, նախա-ձունչ անպէտ հ տառով՝ որ երբեմն կը պատահի ։ Արդի լեզ-ուին քանի մը բառերը նոյն նախատառ չնչով կը տարբերին հի-ներէն, այսպէս հոփնիլ և ոփանել, հոգի և ոգի, հոնդ և ոնդ և այլն. նաեւ հեն-ծնալ հին մատենագրութեան ծանօթ չէ ։

Ap հափ-ափել, յափշտակել, Հնդ. आप् ափ, Զնդ. ap ափ, հասնիլ, յափշտակել ։ Ինչպէս արդէն յիշատակած ենք աս (32) արմա-տէն է ափ, թերեւս նաեւ ապ-ուր՝ անձնագուր, մազագուր բառերուն մէջ, որմէ ելած է ասլել՝ այսինքն կորզել, առնուլ, յափշտակել ։

Am, առնուլ, ըմբռնել, Լատ. em-ere գնել, հոլ. իմեն՝ առ-նում. իսկ Հնդ. अम् ամ՝ յարձակիլ, ըմբռնել կը նշանակէ, ուր կը հայրին թերեւս մեր ամաչել, ամօթ բառերը, վասնզի ամօթն ըն-տանեկան բռնուած մըն է սրտիւ ։ Մեր ամալ (ամէն ամենն) բայն որ

բաշխել , լեցնել կը նշանակէ , չենք կրնար որոշել թէ վերոյիշեալ նշանակութիւններուն հետ կրնայ կապուիլ . տարակոյս չկայ որ առաջնոյն աւելի խնամութիւն ունի ։ Դիտողութեան արժանի է նաեւ Նպ. آمادن ամալ , مان աման ։ Վերջին հայ բառին հետ կըր-նան համեմատուիլ նաեւ Յուն. ἄμ-η եւ ἄμ-νι-ον անօթ ։

1. Ar յառնել , ելանել , ելթալ , Հնդ. ऋणोति առնէ , Յուն. ὄρνυμι , Լատ. orior , Հհիւս. ar-na յառնեմ , ելանեմ ։ Հայերէն ար եւ ել ձեւերով պահուած . առջինը յ նախդիրն առած եւ բաղա-ձայնը թաւացուցած է հետեւորդ ունդականին պատճառաւ , եւ ազատ արմատն երեւան կ'ելլէ արի հրամ. ձեւին մէջ . նոյն արմա-տին է ածանցատառով աճած ձեւն է ել-նալ ։

2. Ar առնուլ , Հնդ. ऋणोति առնէ , Յուն. ἄρνυμαι առնում , որ յառնելի նշանակութեան եղանակաւորումը կրնայ ըլլալ ։

3. Ar առնել , յօրել , յերիւրել , յօրդարել , Յուն. ἀρ-αρ-ίσκω յեր-ձարել , յարմարել , որ կրկնաւոր է մեր ար-ար-ի եւ ար-ար-ք ձեւե-րուն նման ։ Ինչպէս այլուր նոյնպէս հոս կը գտնենք յ նախդիրն յեր-ձարել եւ յօրդարել բայերուն սկիզբը ։ Անտարակուսելի է որ նաեւ յարմարել հոս կը պատկանի նոյն նախատառ յ ձայնով , որուն բուն արմատական մասը կը բովանդակուի յօր , յօրել . բառերուն մէջ ։ Մեր ար մակբային հետ կրնայ Յուն. ἄρτι նոյնանշանը բաղդատուիլ ։

4. Ar հերկ առնել , արօրով հանել , Լիթ. ir-ti զարօսել , Հսլ. oriti զարել , լուծել ։ Իբրեւ բայ այս վերջին երկու սլաւեան-ներուն մէջ պահուած , իսկ մեր մէջ արօրաքս , արօրաքոյ եւայլն մակբայներով աւանդուած է ։

5. Ar հերկել , Լատ. ar-are , Հսլ. or-ati , Գոթ. ar-jan ։ Այս արմատէն է Յուն. ἄροτρον , Լատ. aratrum եւ Հայերէն արօր , որ վերջինն օտարամուտ համարելու կարծենք բնաւ հիմ չկայ . վասն զի նաեւ արտ , Լատ. ar-vum , Յուն. ἄρ-ουρα , Գոթ. aird-a (երկիր) բառերուն հետ արմատակից եւ գրեթէ համանիշ է , ո-րով չի կրնար ուրացուիլ թէ հայական նախալեզուին ալ ծանօթ էր հերկել գաղափարը ։

6. Ar օրհնել , աղօթել ։ Մեր արմատն է աղ որմէ աղաչել ,

համաձայնելով որ նուաղած կ'երեւայ, ինչպէս աղաչել, ամաչել, ճանաչել արմատներուն շ ձայնը իր առջեւ նոյն նուաղումը կամ փոփոխումը կը ցուցընէ, որ յայտնի է աղաչ–իք, ամաչ–ի եւ ճանաչ–ի ձեւերէն։ Ասոնց վրայ սա դիտողութեան արժանի կէտը կայ, որ նուաղող շ ձայնը ընչող ըլլալուն՝ իր շունչն յաջորդ ատամնականին անցընելով զայն թ =թհ ըրած է, որ երեւոյթն արած–ին վրայ չի նշմարուիր, վասնզի նուաղող ծ տառը շունչ չունի, թաւ չէ։ — Arg ունի նոյնանշան rag ձեւ մըն ալ, զոր տես իր կարգին մէջ։

2. Arg շողալ, Հայ. արծ, որմէ կրկնութեամբ արծ–արծել, եւ արծնել որ բուն շողացուցանել կը նշանակէ։ Հնդկերէն अर्ज् արճ խորովել, նշանակութեամբ մեծ տարբերութիւն չունի։ Այս արմատէն է նաեւ արծաթ, Լատ. argentum եւ Յուն. ἄργ-υρος, եւն. եւ աս անունն առած է փայլուն, սպիտակ գոյնէն։ — Տեղափոխեալ համանիշ rag ձեւը տես իր կարգին մէջ։

1. Argh շարժել, յուզել, երերել, Հնդ. अर्घ արղ, Յուն. ὀρχ-έω։ Մենք չենք վարանիր շ–արժ–ել բային նախաձայն շ տառը նախդիր նկատելու, որով կը մնայ արժ եւ ասիկա ըստ օրինի կը համեմատուի յառաջ բերուած Յոյն եւ Հնդիկ արմատներուն հետ։ Վերադոյն յիշատակեցինք շ–ոլոր–որդ՝ նոյն շ նախդրիւ, հոս կը յաւելունք նաեւ շ–ականջել (ունկն դնել), որ ականջ բառէն չի կրնար զատուիլ։ Նաեւ արջառ, եւ ասկէ արջակել եւ յորջակել argh արմատին կը պատկանին։ —Arghին տեղափոխեալ ձեւն է ragh արտօսել, զոր տես։

2. Argh արժել, յարգել, Հնդ. अर्ह् արհ = արղ՝ արժել եւ अर्घ्य արղեա՝ արժանի, Նպ. ارزان արժան, ارزيدن արժել։ Մենք աս արմատը կրկին ձեւով պահած ենք արգ եւ արժ։ Առջինէն եկած է՝ բայական գործածութեամբ, յարգել՝ ծանօթ յ նախդրիւ. աննախդիր ձեւն իբրեւ բայ չի գործածուիր, բայց պահուած է արգոյ, արգաւոր, արգաւանդ բառերուն մէջ։ Իսկ երկրորդէն ելած են արժել, արժանի, եւն. Մեր եւրոպական քոյրերն argh արմատն անհետ ըրած են։

Ard Թրջել, ոռոգել, Հնդ. արդ՝ ողողել և Յուն. ἄρδω Թրջել: Աս արմատը մենք կորուսած ենք, որչափ կ'երեւայ:

Ardh աճել, խնամել, սնուցանել, Հնդկերէն արդհ և Յուն. ἄλθω, իսկ հայերէն թէեւ բայական գործածութիւն չունի, բայց բովանդակուած է արդիւնք բառին մէջ, որուն հետ մերձաւորապէս կը համեմատուին Հոլ. ras-ti (=ard-ti) բարգաւաճիլ, աճիլ, ras-tu (=ard-tu) բառը՝ վաշխ, տոկոսիք, rod-u (=ord-u) բառը՝ ծնունդ:

1. Arbh ծառայել, աշխատել, պահուած մեր արքանեակ բառին մէջ, որուն հետ նոյն արմատն ունին համանիշ Նրգ. arb-eit աշխատութիւն, վաստակ, հին Սլ. rabu (=arb-u) բառը՝ ծառայ:

2. Arbh Թողուլ որմէ կը բխին թէ՛ ժառանգութիւն և թէ՛ որբութիւն գաղափարները: Առաջին առումն ունին գերմանական լեզուներն, ինչպէս Գոթ. arbi ժառանգութիւն, երկրորդ առման բխումն է ὀρφ-ανος, Լատ. orb-us և հայերէն որբ:

Ars արշաւել, սահել, հոսել, Հնդկերէն արշ, որուն հետ ամէն նկատմամբ նոյն է մեր արշ արմատն, որմէ եղած է արշաւել, արշաւանք, եւն: Սակայն արշ նաեւ առ (=արհ=արշ) ձեւն առած է մեր մէջ, վասն զի առու (=հոսող) ալ հոս կը պատկանի: Այս տառական երեւոյթին պատահեցանք կանխաւ Թարշամել և Թառամել բայերուն վրայ խօսած ատեններս: Մեր ր տառին կըցող s շչողը կամ շ ձայնիւ կը պահուի կամ ռ՛ չնչողին մէջ կ'ամփոփուի և կամ իսպառ անհետ կ'ըլլայ: Այս վերջին դէպքը կ'ընծայեցնէ արու, որուն հետ կը համեմատին Զանդկերէն արշան և Յուն. ἄρσην, ἄρρην արու: Հաւանական է որ այս բառերն ալ վերոյիշեալ արմատէն ծագում առած ըլլան. վասն զի արուն ըմբռնուած է ընդհանրապէս իբրեւ բեղմնաւորիչ, և այս նշանակութիւնը կրնան առնուլ հոսել իմաստն ունեցող արմատները: Շչողը նոյնպէս աներեւոյթ եղած է հետեւեալ բառերուն մէջ արիւն, Հնդկերէն ասրա, հին Լատ. assir, իսկ Յուն. εἶαρ, ἔαρ, և գարուն Զնդկերէն վահրա, նպ. Լատ. ver և Յուն. ἔαρ. Աս նըկատմամբ տես նաեւ էջ 57:

1. Av յօժէլ, հաճիլ, հաւանիլ, Հնդ. अव ավ և Յուն ἄω կըշ-

տացընել ։ Մեր մէջ պահուած է ոգ և ու ձեւերով . առջինէն յոգել, յոգենալ և երկրորդէն՝ հաւանել, հաւատք, հաւատիք՝ , և հ նախդրով ։

2. Av հագնիլ, բնակիլ, Զանդկերէն ավ՝ մտնել և ասկէ աւ-թրա ագանելէ , հողաթափ, Լատ. ind-u-o հագնիլ, ex-u-o հանուիլ ։ Մեր արմատն է դարձեալ ոգ և աւ , որոնցմէ ելած են նախ ագանել թէ հագնիլ և թէ բնակիլ նշանակութեամբ , և երկրորդ աւդ (հո- ղաթափ) և աւթ (բնակարան) և աւթեւան ։

3. Av գոչել. կոչել, Յուն. ἄυω , Լատ. ov-are, Հնդ. अव ավ, իսկ Հայերէն պահուած աւաղ ձայնարկութեան և թերեւս աւետել բային և բ-աւթ բառին մէջ. աս վերջնոյն բ նախդրոյն նկատմամբ տես էջ 60 և համեմատէ ուռել և բ-ոլորել , ուղխ և բուղխ , ողջախոհ և բ-(ո)ղջախոհ , որոնց նախաձայն բ տառն ար- մատական դժուարաւ կրնայ ըլլալ ։

1. As նստել, զոր Հնդկերէն աս և Զանդկերէն անհ լեզուները միայն գիտեն , գոնէ բայական գործածութեամբ ։

2. As եմ , Հնդկերէն աս-մի, Զանդկերէն ահ-մի՝ եմ, Յուն. ἐσ-τί, Լատ. es-t է եայլն ։ Մեր էական բային արմատը միայն ե մնա- ցած է , մինչդեռ միւս քոյրերը չչողին հետքն երբեմն պահած են ։

As նստիլ, Հնդկերէն ա՛ս , Յուն. ἧσ-ται նստի ։ Մենք աս ար- մատը չունինք ։

I երթալ, այս արմատն որ ամէն քոյր լեզուներուն մէջ պահ- ուած է անվթար , անհետ ջնջուած է մեր լեզուէն ։

Ik, iç իշխել, տիրել, ստանալ, Հնդկերէն և Զնդկերէն իշ և Գոթ. aig-an, aih, աս արմատէն ալ զուրկ է մեր լեզուն ։ — Igh ըղձալ տես 2. agh բաղձալ ։

Id ուռիլ, Յուն. οἰδ-άω ուռիլ, οἶδ-μα և οἶδ-ος ուռեցք , Հայ. այտ-նուլ, այտ-ոյց , նաեւ այտ-ք որ ուռած երեւութէն այսպէս կոչուած է ։

Idh այրել, վառել, Հնդ. իդհ Յուն. αἴθ-ω , Լատ. aes-tas (=aed-tas) ամառն , Հբգ. eid խարոյկ ։ Այս արմատէն զուրկ ենք մենք եթէ հոս չի պատկանիր այրել, զոր օտարազգի հայագէտք կ'ուզեն այր (կրակ) բառին հետ նոյնացնել ։ Սակայն այր եկա-

մուտ է մեր մէջ և պահուած միայն տըրադոյն, տըրուշան, տըր-ճանակ օտարածեւ բառերուն մէջ, և նոյն բառին արմատն ինչպէս եւրոպական քերց, նոյնպէս Հայ հողին վրայ բնաւ երեւցած չէ. իսկ տըրել հայարուն բայ մըն է, որ յայտնի է նաեւ զանազան ածանցումներէն, ինչպիսի են տըր-եաց, ուստի են տըրեաց-տեր, հր-տըրեացք եւայլն։ Ուստի և մենք — որովհետեւ Հայ լեզուիս տառական օրէնք մեր համեմատութիւնը չեն արգիլեր — մեծ հաւանականութեամբ կ'ընդունինք որ տըրել կրնայ վերադոյն դրուած idh արմատին հետ համեմատուիլ, մեր տ-ր ձեւին ր ձայնն ոչ արմատական տարր այլ լոկ մասնիկ համարելով, որուն առջև կրնար դիւրաւ տառմնականն իյնալ, ինչպէս արդեամբք հանդիպած է երբեմն. այս վերջին ճշմարտութեան անսուտ վըկայ են ե-րեք, ե-րես, ե-րաշտ, որոնց նախաւոր ձեւերն էին աներկբայապէս Ըրե-ք, տըրես, Ըրաշ-տ։ Իսկ ենթադրուած ր մասնիկը նոյն արմատէն բուսած յունական հետադայ բառերը կը ցուցնեն՝ αἰθ-ήρ հրեղէն երկինք, վերին օդ, եթեր, αἴθ-ρα պարզ օդ։ Այրել ու փայլել առնչական են և վերին երկինք՝ օդ կրնար ընդնայպէս հրեղէն, փայլուն, պարզ նկատուիլ։

Is և isk խնդրել, ուզել, Հնդկերէն էշ, էշձհ = էւհ, Յոյն. eisc-ôn հայցել, Հին. iska, էշլ, Գոթ. fra-isan խնդրել։ Մեր արմատն է այց, (= այւհ) որմէ այցել և հ յաւելուածով հայցել, որուն կը համաձայնի պատահմամբ միայն Նրգ. h-eisch-en, տես նաեւ էջ 61։ Եւրոպացի հայագէտ մը՝ Ֆր. Միւլլէր սըխալած է հայցելը հարցանելին աղաւաղումն համարելով, վասն զի անհիմն ենթադրութիւն մըն է լոկ. նոյնպէս անհաւանական է Հնդկերէն սած-յա՛ձ աչքերել բառին հետ համեմատել, ինչպէս կ'ընէ Paul de Lagarde (բուն անունն է P. Boetticher) Գերմանացին, որովհետեւ չկայ նման օրինակ մը՝ որով կարենայ համեմատութիւնն հաւանականութիւն ստանալ։

Uk վարժիլ, սովորել, Հնդ. उच् ուճ, Լիթ. յ-ունկ-տի, Գոթ. bi-ûh-ti վարժութիւն, սովորութիւն. եթէ ստանիլ հոս չի կրնար բերուիլ՝ տառական դժուարութեանց պատճառաւ, հայ լեզուն ուրիշ բառ չի ցուցներ որ կարենայ այն արմատին հետ համեմա-

տութեան գալ։ Նշանակութեան առնչութիւնը նոյն է որ կայ նաեւ հին ոսկորել և նոր ոսրգէլ բայերուն մէջ ։

Ug օգնել, օծել և ud բերել, բանալ, տես vag և vad ·

Ur ոռնալ, վայել Յուն. ὑλ-άω, ὀλ-ολ-ύζω, Լատ. ul-ul-a բու և Հայ. թերեւս ուր-ուր թռչնոյն անունն ալ արմատէն ծագումըն առած է ։

Us վառել, փայլել, տես vas ·

1.Kak քրքջել, Հնդ. कक्ख կաչչ, Յուն. καχχάζω, Լատ. cachinnari, հայերէն ալ բնաձայն արմատը չկայ ։

2· Kak պարել, կապել, Հնդկերէն կաճ և կանճ, Լատ. cingo, Լիթ. kink-au, և Յուն. κάχαλον պար, պարիսպ, Հայ. ցանկ և ցանգ, որոնցմէ ցանկել կամ ցանգել՝ որ բուն պարել կը նշանակէ, և ցանգ կամ ցանկ մակբային հանապազ, միշտ նշանակութիւնը բխած է պարել նախնական իմաստէն ։

Kat ողկել, շաղակրատել։ Հնդկերէն կաթ՝ ողկել, Յուն. κωτίλος շաղակրատ, Լիթ. kat-ilinti շաղփաղփել, և Հայ. թերեւս կատակ, կատակել, նոյնպէս կատաղի եւն, բայց տես նաև gad ·

Kan շաչել, հնչել, Հնդ. कण कան՝ հնչել. Յուն. χαν-άζω շաչել, Լատ. can-ere հնչել, երգել, և Հայ. կա-կան, կա-կանել, բայց տես նաեւ gan ·

Kant, knat զարնել, հրել, խայթել, Հնդ. क्नथ կնաթ, Յուն. κεντ-έω · համեմատէ հայերէն խէթ և ասկէ խթել և թերեւս խայթ, ուստի խայթել · ալ վերջինոյն միջաձայն յ տառը կարելի է հնագոյն ռնգականին յիշեցնէ ։

1·Kap կալել, կառչել, Լատ. cap-ere, capulum, Յուն. κώπη բռնատեղ, երախակալ, Գոթ. haban բռնել, ունենալ. Հայերէն կալ և կափ · առջինէն կալել, կալուած, ասկէ կալանել · միւսէն կափուլ, կափուցանել, կափարիչ եւն ։

2· Kap, kamp ծռել, ծռծել · դողալ · Հնդկերէն կամպ, Յուն. χομπ-ίζω, բովանդակուած է մեր կափ-կափել (ակռաները դող-դողալ) կրկնականին մէջ ։

Kam կորանալ, Հնդ. կմար, Զնդ. կամարա, Յուն. καμάρα, Լատ. camerus, Նպ. خ և հայերէն կամար ։ Այդ զարմանալի կատար-

եալ համաձայնութիւնն իրաւամբ կասկած կուտայ փոխառութեան և հաւանական է որ ասոնց ծագումը պարսկական ըլլայ ։ Աս արմատէն է անշուշտ նաև քոմակ, զոր բնական է կոր ըմբռնել ։

Kar ընել, յատկապէս պահուած արիական լեզուաց մէջ, զոր մենք ունինք կոր (ընող) և կէր-տ (եղած, շինուած) ձևերով բարդ բառերուն ծայրն, ինչպէս Փնասակոր [illegible], կամակոր [illegible], դաստակերտ (ձեռագործ) որ իբրև քաղաքի յատուկ անուն յիշուած է յոյն պատմագիրներէ, ինչպէս Δασταγέρδι (Թէոփանէս) և արաբական ձևով دسکره, դարձեալ Տիգրանակերտ Digranocerta ևայլն ։ Միայն հին լատին լեզուն ունի cer-us արարիչ, և սովորական լատիներէն creare ծնել, ստեղծել, որ kar արմատին կը պատկանին ։ Իսկ կոր ու կերտ, զոր յիշեցինք, խնամութիւն չունին մեր կորել (կարող լինել) բային կոր արմատին հետ որ բնիկ հայ է, մինչդեռ առաջին երկուքն օտարութեան կասկած կուտան իրապէս՝ անձուկ կապ չունենալով մեր մայրենի լեզուին հետ ։

2. Kar գոչել, կոչել, Հնդ. կար, Յուն. καλέω, Լատ. calare, cla-mare կոչել, աղաղակել, Նոր. hallen հնչել, բովանդակուած է քարոզ (գոչող, հռչակող) բառին մէջ, որուն հետ դեղեցիկ կրնան համեմատուիլ Յուն. κῆρυξ և Հնդ. կա՛րու՝ փառաբան երգիչ․ սակայն քարոզ ձևական փոխառութիւն ալ կրնայ ըլլալ, եթէ քաղդէական համանիշ כרז քարոզն Հայոց երկրէն հոն գաղթած չէ ։

3. Kar, Լատ. currere ընթանալ, currus կառք ։ Հայերէն ունինք կառք և ասկէ կառավար, կառապետ, բայց նաև կարապետ (յառաջընթաց), զոր առջինէն զատել անկարելի է ։ Հոս ալ մեր դէմը կ'ելլէ ռ և ր իրարու տեղ փոխանակուած, և ինչպէս Լատիներէն currere, նոյնպէս Հայերէն կառք կրնային համանիշ kars ածանցական մը գուշակել տալ․ սակայն կարելի է որ Հռոմք ստուգիւ դրկած ըլլան Հայոցս՝ carrus կառք գաղղիական-լատինական բառն ։

Kart կտրել, կտրել, Հնդկերէն կարտ, Լիթ. kirt-au կտրեմ ։

Այս արմատն, որուն հետ աղերս չունին մեր կտրել ու կոտրել բայերն, պահուած է նաև կուրծ (կտրուած) ածականին մէջ, որմէ կրճատել. մեր կուրճին հետ համեմատէ Լատ. curtus. Թէ արմատին վերջն երբեմն քմական մը (ճ, ջ) հնագոյն դ կամ տ ատամնականէն կրնայ յառաջ գալ, կը վկայեն շառաչանալ և շառաջանալ, մռճել և մղրտել (թաթխել), ճողճան կամ ճողջան ու ճերջ և տտարտել, շուրջ և շուրթն, լուրջ և լրթագոյն, լրթացեալ, որոնք իրարմէ անբաժանելի են։ Ոչ ճ այլ տ կը ցուցնեն կուրտ և կրտ-սեր (փոքր տարիք ունեցող), որոնք դարձեալ նոյն kart կտրել արմատէն են։ Կրտ-սերին երկրորդ կազմիչ մասը սեր՝ նոյն է մեր սարդ (տարի) բառին հետ որ հետագայ բարդերուն ծայրը միայն պահուած է, Նաւասարդ (Նոր տարի), երիտասարդ, աւասարդ (պառաւ) և կը համեմատի Նպ. سال սալ բառին հետ։

2. Kart հիւսել, Հնդկերէն կարտ, որմէ ելած են նոյնպէս Յուն. χάρτ-αλος զամբիւղ, կողով. Լատ. crat-es հիւսկէն [illegible], ճանդակ, Գոթ. haurd-s (հիւսուած ճիւղերով) դարպաս դուռ։ Մեր մէջ ալ աս արմատը բայական գործածութիւն չունի, սակայն անկէ է անշուշտ խրճիթ, որ ճիւղերէ հիւսուած դռնակ կը նշանակէ։ Թէ ճ հնագոյն ատամնականէ մը կրնայ ծագիլ՝ նախընթաց արմատին վրայ տեսանք։ Մենք չենք դանդաղիր նաև խրթին ածականն այդ արմատէն հանել և կը կարծենք թէ բուն կնճռոտ կը նշանակէր։ Դարձեալ հաւանական է որ կուրթ բառն ալ հոս պատկանի, որուն մէջ հիւսկէն գաղափարին բովանդակութիւնը կուրթնակոտոր առնել ոճէն բաւական լոյս կ՚առնու։ Վերջապէս մեծ հաւանականութիւն կայ որ նաև որթ (որթատունկ, հիւսկէն կողով) հոս վերաբերի, վասնզի նախաձայն բաղաձայնք կրնան երբեմն իյնալ, մանաւանդ երբ մօտ կամ կից ունին ր. համեմատէ ուրախ, որ ըլլալու էր խուրախ և այս յայտնի է խրախ և տ-խուր բառերէն։ Դարձեալ տես çru լսել։

Kas քերել, խոզել, Հնդկերէն կաշ, Լիթ. kàs-ti, Յուն. χέ-ωρεω վերջատառ շշողը կորսուած, և Հայ. քոշ-ել՝ կրճատ կրկնական և ասկէ քոշքոտել։

Kâs հազալ, Հնդկերէն կա՛ս, Լիթ. kos-ti, Հբգ. huos-to

*հող, որոնք մեր հող, հողեր բառերուն հետ դժուարաւ կրնան լծորդութիւն ունենալ։*

Ki, kin **քննել**, **զննել**, *Հնդկերէն և Զանդկերէն* **ճի**, *և Հայ.* **քին**, *որմէ կրկնութեամբ* **քն-ն-ել = քին-քին-ել** *և* **զ-ննել՝** *նախաձայն* **ք** *կորսուելով վրայ եկած* **զ** *նախդրին պատճառաւ։ Լատիներէն* quae-s-o, quae-r-o **խնդրել** *նոյն* ki *արմատէն է* s *սահմանատառով աճած, որուն լծորդ կ'երեւան* **ճիշ-դ** *և Թերեւս* **ճշ-մարիտ** *(ճշդուած, ստուգուած)։*

Ku *և կրճատ կրկնութեամբ,* kuk **քուքալ**, *իսկ առջինէն* **ք-քուել**, **ք-քուանք**, **կ-կու** *(դարձեալ կրկնուած Հայ լեզուիս օրինաց համաձայն), Հնդկերէն* **կու**, *Յուն.* κωκύω **քուքալ**, *Նպ.* كوك **քուք**։

1. Kud **կշտամբել**, *Հնդկերէն* **կուտ**, *Յուն.* κυδ-άζω, *Հսլ.* kud-iti, *Հայերէն Թերեւս հոս վերաբերի կշտամբել, որուն ըսկիզբը* **կշ՝** *կրնայ տեղափոխութեամբ* **կուտ-շ** *ձեւէն ծագած ըլլալ, որ Հնդիկ լեզուին մէջ արդեամբք կը գտնուի —* **կուտս՝ կշտամբել**։

2. Kud **կոծել**, **կոտրել**, *Լատ.* cud-ere, *մեր արմատն է* **կոտ** *որմէ ածանցած են* **կտ-ուր** *և* **կոտ-որ** *և ասոնցմէ* **կոծել** *և* **կոտորել**։ *Այս* **կոծել** *այսինքն* **ցածցնել**, **կոծեցնել** *նշանակութենէն յառաջ կուգայ* **արհամարհել**, **նուաստացնել** *առումը, որ բովանդակուած է* **խոտել**, **խոտան** *բառերուն մէջ, իսկ* **խոտ** *(կտրուած) սկզբնական իմաստը պահած է։ Դարձեալ այս արմատին երկրորդ առումէն են* **խոտն** *և* **խոնարհ**, *որոնց մայր է* ku *և* kun *աւելի պարզ ձեւ մը, զոր քոյր լեզուներէն ալ ունին Հբգ.* hauen **կոտորել**, **կոծել**, heu **խոտ**, *Գոթ.* hun-s **խոնարհ**, **խոտն**, *Հսլ.* kov-ati **կոծել**։ *Այդ համեմատուած Հայ բառերէն անոնք, որ արմատական* **ոչ ու այլ օ** *կը ցուցընեն, զայն հնագոյն* **աւէն** *ամփոփած կ'երեւին, որ մեր մէջ դիւրաւ կրնայ պատահիլ։ Եւրոպացի հայագէտք մեր* **խոտ** *և* **խոնարհ** *բառերը վայրապար չարչրկած են՝ քոյր և օտար լեզուներու զանազան բառերուն հետ համեմատելով, որոնց հետ անոնք բնաւ յարաբերութիւն կամ նմանութիւն չունին։*

Çak պատառել, պատառոտել, խոցել, Հնդկերէն չակ, Լատ. conc-tari յամել, Գոթ. hâh-jan երկբայել: Տարակուսականները զանց առնելով յառաջ կը բերենք միայն խոց, խոցալ: Քիմաձայն k, ç կոկորդականին մեկնութիւնն ստորեւ պիտի տանք առանձինն ծանօթութեամբ:

Çad անկանել, կործանել, Յուն. κε-καδ-εῖν, Լատ. cad-ere և Հայ. սատակել որ բուն կորուսանել, կործանել կը նշանակէր:

Çan, çam խանջել, Յուն. κον-έω, κάμ-νω, Հայ. խան-ջ և ա-կէ խան-ջել, որոնց մէջ ջ տառը մասնիկ մըն է լոկ, ինչպէս մէջ = medium բառին մէջ:

Çar սառիլ, Լիթ. շալ-տի սառիլ, շալ-նա և շար-մա շաղ, եղեամ, Հայ. սառել, սառն, սառամանիք, սառոյց և այլն: Դարձեալ շաղ և ցուրտ, որոնց հետ բաղդատէ Նպ. ژاله, سرد և Զնդ. սարէտա՝ ցուրտ:

Ças, çans խօսել, խօստանալ, Հնդ. [illegible] սանս, Զնդ. [illegible] սանհ և Հպ. [illegible] թահ' = թահ, որ Դարեհի Վշտասպեայ բեւեռագրութեանց մէջ շատ հեղ կը կրկնուի [illegible] թահ'-տիյ' խօսք, ասէ: Մեր արմատն է խօսս որմէ խօսիլ, խօսուն, և ամփոփուած խօս, որմէ խօստանալ: Հոս դիտողութեան արժանի սա կէտը կայ, որ մենք թէեւ Երանեանց պէս ատամնական շչողն (s) հի փոխելու սովորութիւնն ունինք ընդհանրապէս, սակայն կան ինչ ինչ պարագաներ, որոնք կ՚երեւի թէ արգելք կ՚ըլլան մեր մէջ այս փոփոխութեան. այսպիսի է, օրինակի աղագաւ, նախաձայն ռնգականի մը կորուստը նոյն շչողէն առաջ, զոր կը ցուցնեն հետեւեալ բառերն — Ամիս, Լատ. mens-is, Յուն. μείς, սեռ. μην-ός, Հնդ. մա՛ս. իսկ Նպ. ماه: Միս, Գոթ. mimz, Հպ. մենսա, Հնդ. մա՛նսա, զոր Երանեան լեզուք չեն պահած: Ուս, Գոթ. amsa, Հնդ. ամսա, Յուն. ὦμος, Լատ. umerus և այլն: Ասկէ զատ դիպուածներ ալ կան, որոնք նոյն շչողը նաև իբրեւ նախատառ անփոփոխ պահուած կը ցուցնեն, երեւոյթ մը որ երանական լեզուաց մթնոլորդին մէջ տեսնուած չէ երբեք: Այս վերջին դիպաց օրինակ է սով-որել, որ բնիկ Հայ է և չի կրնար զատուիլ հին Լատ. sovo-s = suu-s իւր փոխադարձ

դերանունէն, որմէ եկած են sue-scere սովորել, con-sue-tudo սովորութիւն: Երանեան լեզուներն այդ դերանունն իրենց յատուկ օրինաց համեմատ դարձեալ փոխած են, համեմատէ Նպ. خود ինքն, خوی խույ, սովորութիւն:

Çu, çvan սնունանալ, սնանիլ, սնանել, պահուած մեր մէջ սուն և սին արմատներով, որոնցմէ եկած են հովասուն, ընդասուն, սունք, ի միասին, ամուսին, սին (պարապ), սնանիլ, սուն (ծեռնասուն) = սնեալ: Մեր բառերուն հետ լծորդ են Յուն. κῦ-ρος ոյժ, κεν-εός սին, հնդկերէն ս՛ունեա՝ սին, դարձեալ ս՛ուա՝ ոյժ, Լատ. cav-us սին, cav-ea խոռոչ:

Çru, çrus լսել, Հնդ. և Զնդ. սրու. Յուն. κλύ-ω, և Լատ. cluere և ապա in-clu-tus հռչակաւոր, Գոթ. hliu-ma լսելիք, և հայերէն լսու, նախատառ ս ինկած, ինչպէս լսայ. լսոր, լսեալ, լսելիք, հ-լու, որուն նախաձայն շունչը նախդիր մըն է յոյժ նշանակութեամբ, ինչպէս հնազանդ, հզաւր, հուժկու, հպարտ բառերուն սկիզբը, և արիական լեզուաց մէջ յաճախ գործածական է, Հնդ. սու, Զնդ. [illegible] հու, հպ. [illegible] սու: Բայց նաև անվթար պահած ենք պարզական սրու արմատը՝ նախընթաց դ և դս (= սու) մասնիկներուն առջեւ պատսպարուած, սրով և սրտ ձեւերով և են դ-սրովել և պա-րսաւել (= պա-սրաւել) որոնք բուն կը նշանակեն «համբաւն» տարածել: Իսկ çrus ձեւին՝ կը պատասխանէ լսել=լսաւել եթէ տեղափոխութեան արդիւնք չէ =սլել. քոյր լեզուներէն հոս կը պատկանին Զնդ. [illegible] սրաւ, Լիթ. klaus-aù, Հբգ. klôsèn լսել, անսալ, էջ 56.

Ծան. — Ուշադիր ընթերցողը քոյր լեզուաց համեմատութենէն տեսաւ և գործոյս ընթացքին մէջ դեռ պիտի տեսնէ, որ նախալեզուին k ձայնին մեր մէջ կը պատասխանէ ըստ օրինի կ և ք, խ, իսկ ç քմականին — որ նախամայր լեզուին սկզբնաւորութեան ատեն հարկաւ գոյութիւն չունէր և առաջնոյն հետ նոյն էր — ս, ց, խ, բայց նաեւ շ, որուն ստորեւ քանի մը օրինակ կուտանք: Արդ որովհետեւ մեր իբրեւ ապահով յառաջ բերած համեմատութիւններն երկբայութիւն չեն կրնար ծնանիլ, կը մնայ մեկ-

նել թէ նախաւոր լեզուին միեւնոյն k ձայնն ինչպէս կրնար այս-չափ բազմազիմի տառեր յառաջ բերել հայ լեզուին մէջ, ինչ-պիսի են կ, ք, խ, ց, ս, շ, եայլն: Այս երեւոյթին մենք սա հաւանական մեկնութիւնք կու տանք: Մեր մայրենի լեզուն գո-նէ մատենագրական մեզի ծանօթ վիճակին մէջ միտութիւն կը ցուցնէ միջակ (չնչող) տառերը թաւացնելու, սակայն այս՝ տա-կաւին սովորութիւն չէ եղած, որով կը գտնենք դեռ շատ մը բառեր, որոնք կ ունին նախալեզուեան անվթար հնչմամբ, փոխանակ ք կամ խ տառերուն, թէեւ ատոնք ալ սկսած են ար-դէն բաւական տարածուիլ ու տիրել, ինչպէս համեմատուած բառերէն տեսանք: Իսկ գալով ս, ց, շ քմականաց ծագման, էջ 37 նշանակեցինք որ նախատոհմեան լեզուն sk յօդուածոյ բա-ղաձայնն ունէր, որուն չչողը տակաւ սկսած էր նախալեզուին ժամանակն իսկ նուազիլ քայքայիլ կորսուիլ. արդ այս չչող կո-կորդային յօդուածքին եղանակաւորումները կամ ներկայացու-ցիչները կը համարենք մենք (ç քմականը և) մեր մէջ ս, ց, շ, նաեւ ք, խ բազադրեալ ձայներն եթէ ոչ միշտ գոնէ շատ ան-գամ. վասն զի այս տառերն ունեցող հայ բառերուն դիմաց քոյր լեզուներն յաճախ sk կը հանեն, և նոյն իսկ ç՝ sk յօդուածով նոյնանշան արմատներ երբեմն կից ունի: Ահա իրն այսպէս ըմբռնելով կը տեսնենք որ նախաւոր k և sk ձայներէն կրնային տակաւ սերիլ մեր մէջ կ, ք, խ, ս, ց, շ, եայլն. սակայն սա կրնանք նա թէ պէտք ենք խոստովանիլ թերեւս թէ նախալեզուին kն մեր մէջ կ, իսկ çն ս է տակաւին ընդհանրապէս. ինչպէս, սրունք, սրունից, Յուն. κλόνι-ς, Լատ. clûnis, Լիթ. szlaunis, հնդկերէն սրոնի, զանդկերէն, սրաոնի: Սար և սաղաւարտ (գլխու ծածկոյթ), Նպ. سر, զանդկերէն սարա, սարանհ, Յուն. κάρ, κάρα. Սկեսրայր, Զանդկերէն քասուրա, Նպ. خسر, Յուն. ἑκυρός, Լատ. socer, Գոթ. svaihra. Տասն, տասանց, Զանդկերէն դասան, Յուն. δέκα, Լատ. decem. Արտասուք (= տասրու) Յուն. δακρύ, Հին Լատ. dacru-ma (lacru-ma), Գոթ. tagr եայլն. այս վերջին բառն արիական հնդեւրոպացիք չունին: Ինչպէս արդէն յիշա-տակեցինք փոխանակ ս՝ի չէ թէ միայն ց այլ նաեւ շ կրնայ պա-

տահիլ, ասոր գեղեցիկ օրինակ մըն է շուն, սեռ. շան (=շուան), — Հնդկերէն «շւան», Զանդկերէն «սպան», Յուն. κύων, Լատ. canis· — որուն քով զարմանալի դիրք մը կառնու «կուանդ», Գոթ. hund-s և բնաւ չի կրնար զատուիլ անկէ ։ Արդ «կուանդ»ին նախաձայն «կ» յօդուածքն, որուն դիմաց քոյրերը մէկ տառ միայն կը հանեն՝ կ կամ ç, կրնայ հաւանական ընել թէ քոյրերուն նոյն ձայները սկզբնական sk բաղադրութենէ ծագում առած ըլլան ։ Հաւանականութեան դէմ սա հնարաւորութիւնը կայ միայն, որ «կ»ի մէջ կ կրնայ հնագոյն վ ձայնէն ալ յառաջ եկած ըլլալ՝ փոխանակ գ ըլլալու նախընթաց «ի»ն պատճառաւ (որմէ ետեւ գ հարկաւ կ ի փոխուելու էր)· վասն զի մեր մէջ սկզբնական վ չէ թէ միայն արմատին սկիզբն այլ և վերջը կրնայ գ ի դառնալ ։ Այս վերջին պատահականութիւնն անով աւելի հաւանականութիւն կը ստանայ, որ նաեւ «կեսուր» և «իւկ» (Լատ. se-d=sue-d) բառերուն նոյն «կ» յօդուածքն ալ սկըզբընական sv և ոչ ç ձայնէ յառաջ եկած է, ինչպէս քոյր լեզուները կը վկայեն ։ Այս պատճառաւ ահա «կուանդ» թէեւ մեր կարծեաց ոյժ չի տար այնչափ, սակայն ունինք երկու ուրիշ օրինակ ալ, որոնք այս նկատմամբ մեզի աւելի նպաստ կուտան, և են հասկ, հասկանալ և տատասկ ։ Հասկ ստուգիւ լծորդ է հաս արմատին հետ, որմէ կը բղխին հասանել, հասուն, հաս, հասակ եւայլն և կը համեմատուի Գոթ. ahs հասկ և թերեւս հին Լատ. agna հասկ բառերուն հետ ։ Հասկին վերջատառ կը մասնիկ համարելու հիմ չունինք, վասն զի ունինք նաեւ հասկանալ, ուր անկարելի է նոյն տառը մասնիկ համարել ։ Իսկ տա-տասկ կը համեմատի Հնդկերէն «դաս», Յուն. δάκνω խայթել, խածնել, Գոթ. tah-jan պատառել բայերուն հետ ։ Մինչեւ հիմակ ըսածնիս դըլխաւորելով կ'ըսենք թէ սոյն հետազօտութիւնս թէեւ ստուգութիւն ոչ՝ սակայն գոնէ բաւական զօրութիւն կուտայ մեր սա կարծեաց՝ թէ մեր ու քոյր լեզուաց ց ձայնը սկզբնական sk բաղադրութենէ նուազմամբ յառաջ եկած է ։ — Նախալեզուին k կամ ç ձայնն երբեմն, թէեւ դուն ուրեք, նաեւ կորսուած է բառին մէջ· այսպէս լեարդ, Հնդկերէն յակրտ, Յուն. ἧπαρ, սեռ.

Լատ. poscere = porscere պահանջել, նաեւ precari աղօթել, և procus (աղաչաւոր, աղջիկ հարցնող, հարս խնդրող). Գոթ. fraihnan, Նրգ. fragen հարցնել և forschen փորձել, հայերէն հարցանել, հարց. Թերեւս նաեւ հարսն և հարճ: Հոս կը պատկանի պարսիկ լեզուէ մնած փուրսիշ, նպ. پرسش և բնիկ հայերէն փորձել եթէ փորցել կը հնչուէր երբեմն, թէեւ ցի տեղ ձ ուրիշ յայտնի օրինակով մը չենք կրնար ցուցնել:

Ծան. — Երթնականաց կարգին մէջ ալ կրնանք ըսել թէ նախալեզուին քին դիմաց մեր լեզուն ղ կը հանէ ըստ օրինի, թէեւ այս վերջինը թուանալով տակաւ փ ձնչողին դարձած և բաւական յաճախ՝ շրթնական տարրն կորսուելով լոկ հ շունչը մնացած և տակաւին ալ նոյն խսկ յ ի՛ նուազելով՝ բոլորովին անհետ ալ եղած է երբեմն, ինչպէս համեմատուած օրինակներէն երեւցաւ: Ինչպէս նախընթաց տառերը քննելով տեսանք, հոս ալ կը նշմարենք որ նաեւ ղ լպիրծ (ր, ղ, լ,) ձայներուն քով սահած ինկած է երբեմն: Համեմատենք հոս քանի մը բառ ալ փոխէ. Հնդկերէն պա՛նչա, Հոլ. պէնքէ՝ տառը: Հինգ և նոյն հ չի նուազած՝ ցեան Լատ. quinque = pinque, Լիթ. penki, Հնդկերէն պանճան: Հերու, հնդկերէն պարուտ, Յուն. πέρυσι: Լու. Լատ. pûlex, Նրգ. floh և այլն: Նախալեզուին p ձայնը քովերն ընդհանրապէս անապական պահած, ոմանք միայն փ ի փոխած են, ինչպէս Գերմանք և Պարսիկք. Համեմատէ հրեշտակ فرشته, հրաման հին պր. ֆրամանա՛ 𐎳.𐎼.𐎶.𐎠.𐎴.𐎠, Հրուդէն فريدون, հրասանգ فرسنك, Հրոտից فوردكان φουρδιγᾶν, հարազատ فرزند, հրահանգ فرهنك և այլն:

1. Bha. bhâ փայլել, երեւել, հնդկերէն բհա՛, և բհա՛ սարդ. Յուն. φῶς լոյս, φαίνω երեւել, հայերէն բոց, բոց, բոսալ: Նաեւ բոլ այդ արմատէն զատուիլ չի կրնար և բուն բոց կը նշանակէ, բայց կրնայ նոյնանշան bhag արմատի մըն ալ հանուիլ, եթէ վերջնատառը ղ մասնիկ չէ այլ տահմանատառ:

2. Bha bhan, հնչել ըսել, Յուն. φημί, φά-σκω և φωνή ձայն, Լատ. fâ-ri, և ասկէ fâ-ma համբաւ, fâ-bula առասպել, Հոլ.

բոյսաբի ըմբոշխել, և հայերէն բու, որմէ բամ, բոյ և այլն պտկա-ստուոր բայը, նոյնպէս բան, բոյ բանք, երկբայել, գուցէ նաև համբաւ, և այլևայլ ածանցաւորութիւք բարբել, բամբասել, որուն ան կամ ածանցիչ տառ մին է և մն ալ նեցուկ յաջորդ բին, և կամ մ ու ս դիմորոշ տառեր են լոկ՝ առաջին և երկրորդ դէմքի: Նարձեալ բար-բառել, բարուրք, բող-բողայք, բանբն, բանկնար-կել, բաջաղանք, բար-բաջ = բա-բէռջ, բանդաղուշանք և այլն: Ասոնք ամէնն որ ձայնանիշ արմատներ են բ, ջ, դ, ր, ղ, ս, սահմանադրութիւք անած՝ պարզական բա արմատէն զատուիլ բը-նաւ չեն կրնար, և քոյր լեզուներուն մէջ առաւել նուազ իրենց լծորդներին ունին:

1. Bhag, bhagh, բաժնել և s ով անած bhak-s = bhags բաշխել, բաշխնել, ըմբոշխնել, հնդկերէն բհաջ, և բհակշ, զանդկերէն բաջ և բախշ և նպ. بخشیدن բաշխել, بخش բաշխ, باز բաժ, և հայերէն բաժ (բաժին), բաժորդ, բաժ, բաժին, բաժակ, բաժանել, և բաշխանել է անցատուկ տառին միջամտութեամբ, դարձեալ բաշխք, բաշխել, և բաշխնել ու ըմբոշխնել: Նոյնպէս հոս կը պատկանին Բագին, Բագրևանդ, Բագուան, Բագառայինջ, որոնց բակիզբն եղած բագ բառն աստուած կը նշանակէ իբրև բաշխող ամէն բարեաց բաժանարար ըմբռնուած: Համեմատէ հնդկերէն բհագա, զանդկերէն բագա, հպ. ⸗Y.〈YY⸗.⸗Y⸗.Y⸗⸗Y.⸗Y.Y⸗ բագա վազրակա (Աստուած մեծ), որ Արամազդայ մակդիրն է, հայերէն վզուրկ, նպ. بزرگ մեծ: Բաղդատէ նոյնպէս նպ. بغداد քաղաքի յատուկ անունն որ Աստուածատուր կը նշանակէ:

2. Bhag, bhang կոտրել, հնդկերէն բհանջ, և հին իրլանդերէն բոնգ և հայերէն բեկանել, բեկոր:

Bhagh, աճել, հնդկերէն բահն և ասկէ բահու՝ բազում. և բա՛հու՝ բազուկ. զանդկերէն բա՛զու, նպ. بازو յուն. πῆχυς բազուկ, կանգուն, և հայերէն բազում, բազուկ և թերևս նաև բազմել:

Bhandh, bandh կապել, հնդկերէն բանդհ, զանդկերէն և հպ. բանդ, նպ. بستن հրմ. بند և بند բանդ = կապել, գոթերէն bindan, յուն. πείσμα = πενθμα կապ, պարան, և հայերէն բանդ՝ պահուած պարտանդել, դանդանաւանդ, վարատանդապա

բառերուն մէջ, որ ստուգիւ հայ չեն։ Դարձեալ բնիկ չ'երեւար մեզի բհատ (կապուած) հաստաբհատ (ամրապինդ) բարդին վերջըն, որուն հետ համեմատուելու են զանդկերէն և հպ. բաստա և նպ. بسته , بست ։ Իսկ բհեդ, բհեդել բառերուն հայութիւնն անտարակուսելի է. հաւանական է որ երբեմն բհեդ ձայնն ունէր մեր արմատն ալ. համեմատէ բանդ = կապանք ։

Bhar բհարել, հնդկերէն բհար, զանդկերէն և հպ. բար, նպ. بر بردن انباردن ամբարել, Յուն. φέρω, Լատ. fero, Գոթ. bairan, Հոլ. բերոն, Հայ. բեր, բերեմ, համբարել, համբերել, նաև բեռն, թերեւս նաև բերան։ Այս արմատին տեղափոխեալ bhrâ (տարածանել) ձեւին կը հանուի, bhrâtar եղբայր=բերող որ գաղղիական frère ձեւէն աւելի, կրնանք ըսել, այլայլութիւն կրած է։ Միւս քոյր ձեւերն են հնդկերէն բհրա՛տար, զանդկերէն և նպ. բրա՛տար, նպ. برادر Յուն. φράτηρ, Լատ. frater, Հոլ. բրօդըր, Գոթ. brôthar ևայլն։

Bhar զարնել, մրզ. bern բաղխել, Լատ. ferire վիրաւորել, թերեւս նաև forare ծակել, և հայերէն բախել, բախիւն, որոնց խ տառն հնագոյն բաղխել ևայլն գրութեան կ'երեւի թէ մնացորդ է, այսինքն խ նախընթաց ղ էն պատճառեալ անպէտ յաւելուած մըն է, որուն ազդեցութեան տակ յետոյ ղ բոլորովին ընկճուած է։ Այսպիսի մեկնութիւն մըն ալ տալու է կարծենք նաև փախչել գրութեան. եթէ չենք սխալիր, թէ բախել և թէ փախչել բաղխել և փաղխչել ալ գրուած կը գտնուին։

Bhark, bhrak, նաև bhraç փայլել, բորբոքել, Գոթ. bairh-ts փայլուն Հոլ. բլինկը՝ փայլուն, հնդկերէն բհրա՛ս, և հայերէն բրոք որմէ կրկնութեամբ և ըի տեղափոխութեամբ բո-րբոքել։

Bharg շողալ, խորշիլ, բաղձալ, հնդկերէն բհրա՛ջ, զանդկերէն բարա՛ջ շողալ, բերելէ՝ անձուկ. Յուն. φλέγω և աստի φλόξ բոց, φρύγω խորշել, Լատ, flagrari բորբոքել և հայերէն բարկ (կծու), բարկանալ. թերեւս նաև բաղձալ եթէ բաղձալ կը հնչուէր երբեմն, բայց տես agh ըղձալ, բաղձալ։

Bhargh աճել, հնդկերէն բարհ, զանդկերէն բարեզ, և բարեզանհ՝ բարձանան և հայերէն բարձր, բարձունք, բարձրաւանդակ, նաև բարձ և բարձք ։

Bhu բլլալ, բնակիլ, Հնդ. բհու́, Յուն. φύω, Լատ. fuo, fui, Լիթ. buti, և Գոթ. bauan բնակիլ, և Հայ. բուել, բուսանդակ, բովանդակ, բոյն, իսկ բոյս, բուսանել բու պարզականին ով առած ձևն են։

Bhug բաժանել, ըմբոշխնել, Հնդ. բհուջ, Լատ. fungor, և Հայ. բաժանել, նաև բաժ, զնդ. բա́ղա, Նպ. ;։ Ունինք բառ մըն ալ բուտ (կեր), որ խոտաբուտ բարդին ծայրն ալ կ'երևայ և բաժանելին արմատէն բաժնուիլ չի կրնար։ Ասոնց ծ և տ տառերուն յարաբերութիւնը նոյն կամ նման կ'ելլէ արածել և ա-րօտ բառերուն նոյնաձայն գրերուն հետ (տե՛ս էջ 63-64)։ Bhug նուազում է bhag նոյնանշանին, զոր տես։

Ծան. — Նախալեզուեան bh շատ փոփոխութիւն կրած չէ և պահուած է բով ն շունչն անզգալի մնալով. այս օրինակին հետևեալ են քոյր լեզուներէն շատերն ալ։ Նախնական ամբողջութեամբ նոյնն աւանդած են Հնդիկք և Յոյնք, իսկ Լատինք f տառով կը ցուցնեն նոյն թաւ ձայնը։ Եթէ նաև գոնէ հեղ մը դ գտանք փոխանակ բի նախնական bh-ի դիմաց, այս երևոյթն ալ կը մեկնուի այն միտութեամբ, զոր նշանակեցինք երբ բ, դ ձայներուն տեղ երևցած պ, տ տառերուն մեկնութիւնը տուինք. էջ 82, 89։

1. Ma, մաշել, Հնդ. մա́ և Հայ. միայն արդի լեզուին մէջ մա, որմէ մաշել։ Նոյն նշանակութեամբ կայ նաև mak, որմէ Հնդ. մաչակա մաշող և Յուն. μηχάομαι մաշել և Հայ. մաքի։ Քոյր լեզուները կը ցուցնեն muk, mug ռնչել, մռնչել։ Յուն. μύχη մռնչիւն, Լատ. mugire մռնչել, որոնց հետ համեմատուելու են հայերէն մռունչ, ռնչել, որոնց պարզագոյն մու արմատէն է նաև մուն, Յուն. μυῖα ճանճ, տես նաև էջ 46։

2. Ma, man չափել, յիշել, համեմատել, Հնդ. և Զնդ. մա́, Յուն. μέτρον չափ, μῖμος միմոս=նմանող, μνάω յիշել, Լատ. me-tior չափել, Հայ. մա՛ն, որմէ՛ն նախդրիւ ն-ման, անկէ նմանիլ. դարձ-

եալ մա-ան և ամ-ա (էջ 72) ստացմանատառով. և մար, որուն հետ մերձաւորապէս կը համեմատուի հայ. մայր:

Այս արմատէն կը հանուի նաև Հնդ. և Զնդ. mâtar, Յուն. μήτηρ, Լատ. mater, Գերմ. mutter, Պրս. مادر և Հայ. մայր, որ գաղղիական mère ձեւին աստիճանին հասած է գրեթէ:

3. Ma, man մտածել, կարծել, Հնդ. և Զնդ. և Հպ. ման, Պրս. منيدن, Յուն. μέντις, μέμονα, Լատ. memini, mens, Գոթ. ga-mun-an, Գերմ. meinen, և հայերէն իմանալ, իմացայ, իմաստ և միտք:

4. Man մնալ, Զնդ. և Հպ. ման, Յուն. μένω, Լատ. maneo; Պրս. ماندن և Հայ. մնալ, մնացորդ, մնացուած, տես էջ 41, 51.

5. Man մանրել, զոր տես էջ 28-29.

6. Man մանել, որ բայական գործածութեամբ Հայ լեզուիս մէջ միայն պահուած կ'երեւի՝ մանել, մանուած, որմէ է նաև մանեակ, և ասոր հետ լծորդ են Յուն. μανιάκης, Լատ. monile, հայ. մանիաստ:

Magh, mag մեծնալ, Հնդ. մահ, Զնդ. մազ, Յուն. μέγας, Լատ. magnus, Գոթ. magan մարթել, կարել, և Հայ. մեծ, մեծանալ, մեծարել:

1. Mar մեռնիլ, Հնդ. Զնդ. և Հպ. մար, Պրս. مردن, Յուն. μαραίνω թառամիլ, βροτός = μορτός (գաւառական) մահկանացու, Լատ. morior մեռնիլ, mors մահ, Գոթ. maurthr սպանութիւն, Հայ. մեռանել, մահ, և մահկանացու, որոնց հ շունչը մեր արմատին ա = րհէն կրնայ մեկնուիլ՝ եթէ ր ինկած համարինք: Այս արմատին կ'երեւայ թէ կը պատկանին նաև մարդ, Պրս. مرد իբր մահկանացու և մօր, իբր մեռեալ ջուր և անկէ մօրատանալ, համեմատէ Լատ. mare ծով, Գոթ. mari-saivs ծով, Պրս. مرداب.

2. Mar մղանչել, մարտնչել, Հնդ. մար, Յուն. μάρνασθαι, թերեւս Լատ. malus չար, և Հայ. մեղք և մարտ, որոնցմէ մեղանչել և մարտնչիլ:

3. Mar, մաշել ուտել և աղալ, մաշել, Պրս. مالیدن Յուն. μύλλω, Լատ. molere, Լիթ. մալտի, Գոթ. malan և Հայ. մաղ, մաղել,

մալել, թերեւս նաեւ մա-մալ՝ կրկնաւոր ։

4. Mar մարել, սեւնալ, Հնդ. մալինա՝ մալին, Յուն. μέλας սեւ, եւ հայերէն ի մառն դառնալ, ի մայր դարձուցանել, մուր, մրուր, մրրիկ, մայլ, գուցէ թէ նաեւ աղջամուղջ , , եւ արդի լեզուաւ մարիլ որուն հնագոյն ձեւն էր թերեւս մայրիլ ։

Mark մռ-րմռ-ել = մռմռել, մեղկանալ, Հնդ. մարճ, Յուն. μαλκίω Լատ. marcere, եւ murcus մեղկ ։

Marg քերել, քաղել, Հնդ. մարջ, Յուն. ἀ-μέργω քաղել, ἀ-μέλγω կթել, Լատ. mulgere, Նրգ. melken կթել եւ Հայ. մերկ, եւ մերկանալ ։ Մերկ կը նշանակէ «հագուստը քերելով, քաղելով հանուած» կամ քերուած, քոյլքցուած ։

Mars մոռանալ, Հնդ. մարշ. Լիթ. միրշտի, տես էջ 87 ։

Masg մխել, մխրճել, Հնդ. մաջջ = մաջ, Լատ. mergere, Հայ. մուխ եւ ասկէ մխել, գուցէ թէ նաեւ մխրճիլ, որուն հետ լծորդ կ'երեւայ նոյնպէս մրտել ։

Migh (կաթել) միզել, Հնդ. մեհ, միհ, Զնդ. միզ, Յուն. ὀ-μιχέω Լատ. mingere, Հայ. միզ, միզել, եւ մէգ, Հնդ. միհ, մեղհա, Զնդ. մայղա, Յուն. ὀ-μίχλη, Լիթ. միգլա ։

Mit մեկտեղ՝ մտերիմ ըլլալ, Հնդ. միթ. եւ ասկէ միթրա՝ բարեկամ, նոյնպէս Զնդ. միթրա եւ Նոյ. [illegible] եւ Հայ. Միհր եւ Մհրական դիք, որոնք բնիկ չեն, խոլ մտերիմ, որ դարձեալ սա արմատէն է, օտար չէ ։ Համեմատէ Յուն. μοῖτος, Լատ. mutuus փոխ ։

1. Mu մղել, muk մոցել, տես էջ 46 ·

2. Mu գոցել, պնդել, Հնդ. մու, Յուն. μύω, Հայ. թերեւս մութ սա արմատէն է, եթէ առաջին muէն չէ ։

Ծան. — Շրթնական ռնգական մին վրայ սա դիտելիքն ունինք, որ ուրիշ լեզուներուն նման մեր մէջ ալ թէեւ անվթար կը մնայ երբ նախատառ է, բայց -ի կրնայ փոխուիլ՝ երբ որ իրմէ ետեւ բաղաձայն մը գայ անմիջապէս, ինչպէս սուս = սմս, տնտան = տնտամ, պաշտաւն = պաշտամ, փառն = փառմ եւայլն բառերը կը վկայեն ։ —

Yag յաղել, յաղտ առնել, Հնդ. յաջ, Զնդ. յազ, Նպ. يشت և ատէ ایزد, Արտազդ, Յուն. ἅζομαι, ἅγιος. Իբրև հայերէն նը-շանակուածները մենք չենք կարծեր որ բնիկ ըլլան ։

Yam, yat, yan, բռնել, ջանալ, Հնդ. յամ, Զնդ. յատ, Յուն. ζητέω խնդրել, ζημία տուժ, Հայ. յամել, յամառ, յամր, ջանալ, ջանք, ջատագով ։

Yu, yug յօդել, լծել, յարմարել ։ Հնդ. յու, յուգ՝ լծել, ըն-ծել, յօդել, յաւելուլ. յու՛ - տի յօդ, յուջ լծել, յօժարիլ, յօդնիլ, յուգա զանք, ճիգն. յուջ զօրող, զոյգ. յուգա լուծ, զոյգ, պա-ւակ ։ Զանդկերէն յու յօդել, տեւել. յաւիտեանք. յաւայտատ, Նպ. جاوید յաւէտ, յաւիտեանք. յուջ յօդել ։ Յուն. ζεύγνυμι յօ-դել, լծել. ζυγόν լուծ ։ Լատիներէն jungo յօդել, con-jux լծա-կից, ամուսին. jugum լուծ. jugiter միշտ, յաւէտ ։ Գոթերէն juk լուծ, զոյգ եւայլն ։ Նոյնանշան կրկնաձեւ արմատին հնդիկ լեզուին մէջ մանաւանդ առած զանազան առումներն՝ որոնք ըն-կերականն նշանակութենէն առանց դժուարութեան կը բխին, ընդհանրապէս լիուլի ստուգութիւն կամ երբեմն մեծ հաւանա-կանութիւն կու տան հետագայ համեմատութեանց, որոնք տառա-դարձական հանգամանաց կողմանէ ոչինչ դժուարութիւն կը կրեն ։

Միայն առ դիտողութիւնն ընենք որ նախատառ յ կամ պահ-ուած է կամ ինկած, կամ ւի, ջի, ծի, նաեւ զի փոխուած կամ յ կորսուելով զ նախդիրը վրայ եկած է ։ Այսպէս յաւելուլ, յաւելուած, յարականել, անյար, յաւէտ, յաւիտեան, յաւէժ (միշտ ապրող), յարդ, յարդել. յարմնել կամ յօրինել, յօրն. յարդ-արել. աւելի, առաւել. լուծ, լծել. ջոկ, ջոկատ. ծէք (=ճիւղ) ծէկել. զուգակ, զուգ, զուգել, զօդող, զուգող, զոյգ, զուգէլ, զու-գական ։

Ծան. — Այդ օրինակները կը ցուցնեն որ նախալեզուեան յ բաւական չարչարանք կրած պիտի ըլլայ այն զանազան կերպա-րանաց տակ մտնելով ։ Նոյն տառադարձական օրինաց համեմատ կրնանք նաեւ յաջորդները բաղդատել, ջաւար, Հնդ. եԶնդ. յա-վա, Յուն. ζεά, Նպ. جو. ջաւ, Զնդ. յուան, Նպ. جوان, جوانه, Լատ.

juvenis, Գաղ. jeune, զոր նախնական ձեւով ալ աւանդած են մեր յաւանուն ու յոլանուն բառերը։ Փարձեալ նոյն ծագումը կը ցուցնեն յեր, յեղ եւայլն, որոնց կը համեմատին Գոթ. jus, Հնդ. յուշմ, Յուն. ὑμεῖς դուք։ Վերջապէս լերդ ինչպէս լեարդ, լերդ, սկզբնական յ է յառաջ եկած ն մը մեր դէմ կը հանէ, Հնդ. յաքըր, Լատ. jecur, Նպ. ջիգ, տես էջ 75, 76. — Քոյր լեզուներէն Հնդիկն ու Զանդիկն, ինչպէս նաեւ Լատինք և Յունք՝ ընդհանրապէս անվթար աւանդած են նախալեզուին յ ն, իսկ Պարսիկք ճ ի կը դարձնեն խոսալացուց այս։ Յոյնք յ բնաւ չեն պահած, միայն երբեմն ζ տառով աւանդած են, որով մեր յ (ջ) ին մօտ կուգան։ —

1. Ra, ran հոսիլ, հեշտանալ, սիրել, Հնդ. րան, Յուն. ἔραμαι սիրել, ἔρος սէր և հայերէն թերեւս եռանդ, եռջանիկ. Քոյր լեզուները ունին նաեւ ram հանգչիլ, ras ճաշակել, որ յայտնի ածանցականք են և մեր մէջ լծորդ չունին եթէ չենք սխալիր։

2. Ra հաչել, արհամարհել, rap շաղփաղփել, ոգել, rabh ճչել, գոչել, ras ճչել։ Ասոնց արմատական և սկզբնական նշանակութիւնն էր յուզել։ Հնդ. րա՛, Լատ. lâtrare, հոլ. լայալ, Գոթ. laian հաչել կը նշանակեն, որ նշանակութիւնը կը բովանդակէր թերեւս մեր լալուն մէջ, և կրնայ նոյնանշան rag արմատի մը ծագումն ըլլալ։ Պարզական ra ին կը պատկանի մեր լալ, իսկ կրկնական են լալիւն, լալական։ Ասոնք նշանակութեան կողմանէ եղանակաւորուած կրած են։ Մեր ողբ (= ղբ) ու ողբալ բառերն աւելի rap քան թէ rabh արմատէն բխած կ'երեւին, նոյնպէս շաղփ-աղփ-ել (=շ-ղափ-ղափել) շնախոյզի (էջ 63-64). Համեմատէ Հնդ. րապ, լապ, և Յուն. ὀλοφύς, Լատ. lamentun

* Չէ թէ միայն բառին սկիզբն այլ և մէջ կամ վերջը կրնայ նախնական Լ ն փոխուիլ, ինչպէս քանի մը օրինակ արդէն յիշատակեցինք, էջ 65-66. Հոս կը յաւելունք լուանալ՝ լուանալ, Լատ. lavo, տալեր կամ տաեր, Լատ. levir, Հնդկերէն դեւար, Յուն. δαήρ. տարեալ, դերեալ (դալ), Հնդ. դարեւ։

ողէ ։ Այդ արմատն, որմէ ելած կ'երեւայ արհամարհել կրկնականը մի միջամտութեամբ, պարզական ra կամ arին տալ առած նոյնանշան ձեւը կարելի է ըլլայ․ իսկ առնալ նոյն է բոլորովին կամ տեղափոխութիւն կրած է եթէ նախնական ձեւն էր ra․ Մեր լալիւն, լալական բառերուն պէս կրկնական են նաեւ Յուն. λάλος շաղփաղփ, Գերմ․ lallen թոթովել, որոնք նոյն են ծագմամբ, թէ եւ իմաստիւ եղանակաւորեալ ։ Էջ 62 յիշատակած ենք ar օրհնել, աղօթել, որ հոս յուզուած ra արմատին համանիշ է ։

1․ Rag ներկել, գունաւորել, Հնդ․ րաջ, եւ ասկէ րակտա գունաւոր, կարմիր, եւ րաջաս՝ լոյս, մշուշ, մութ, միջօրէր, հող, ներկեր եւ րաջանի՝ գիշեր, Յուն. ῥέζω=ῥεγιω ներկել, ἔ-ρεβος խաւար (դըժոխոց)․ Գոթ. rigis խաւար ։ Էջ 64 յիշատակեցինք այս արմատին ուրիշ մէկ ձեւն ալ arg շողալ նշանակութեամբ որ համանիշ է եւ համեմատեցինք արծ—արծել, արծնել, արծաթ բառերը․ հոս կը յաւելունք նախ ՛ն նախդրիւ՝ ն-երկել (էջ 39), ն-արօտ-ա (=ն-արօկ-ա, էջ 63-4), եւ երկրորդ՝ երկին, երկիր, երեկոյ ։ Այս երեք վերջիններն որ ե սկզբնատառն ունին, կրնան թէ arg եւ թէ rag նոյնանշաններէն յառաջ եկած ըլլալ, մեզի երկրորդ դիպուածն աւելի հաւանական կ'երեւայ, ուստի եւ նախաձայն ե արմատական չէ ։

2. Rag ուղղել՝ վարել, Յուն. ὀρέγω, Լատ․ regere, եւ ասկէ rex իշխան, արքայ եւ Գոթ․ rakjan, որմէ reiks արքայ եւ Հնդ․ րա՛ջան, իշխան, արքայ ։ Անհաւանական չէ որ նաեւ մեր արքայ, արքունի եւայլն բառերն հոս պատկանին թէեւ տառադարձական օրէնք այնչափ նպաստամատոյց չեն*։

* Այս համեմատութեան դէմ դնող բոլոր դժուարութիւնը կը ծագի ք տառէն որ ըստ հայ տառադարձութեան օրինաց ըլլալու էր կ, տես էջ 79։ Սակայն ճիշդ նոյն ճամբով յառաջ եկած են նաեւ [illegible] եւ [illegible] (=[illegible]) արմատներն, որոնցմէ ելած են [illegible], [illegible], [illegible] եւ [illegible] ([illegible]), որ կը համեմատին Յուն. στέγω ծածկել, պահել եւ στίγω [illegible], [illegible] բայերուն ։ Արդ այս տառադարձական օրինազանցութիւնն հետեւութիւն է այն միտումին, զոր մեզի ծանօթ հնագոյն հայ լեզուն կը ցուցնէ նախալեզուէն չէ թէ միայն k ձայնը թաւացնելու, այսինքն ք=կհի փոխելու, այլ

Ragh արագել, Հնդ. րանգհ և րանհ և րագհու՝ արագ, Յուն. ἐλαχύς և Լատ. levis = legvis թեթև = արագ. իսկ հայերէն դարձեալ ռ և ե նախատառ ձայնաւորներով արագել և երագել, արագունք և երագունք, որոնց եզ. ուղղականներն իրենց ու ձայնը տուժած են՝ արագ և երագ: Կայ նաև argh նոյնանշան ձև մը, զոր տես էջ 64.

Rad քծել, քերել, Հնդ. րադ և Լատ. radere, Հայ. թերևս արօր, արօրել:

Ri եր-երել, Գոթ. reiran, Հնդ. րիլա՛յա:

1. Rik լքանել, Հնդ. րիք և րինճ, Յուն. λείπω, Լատ. linquo, Գոթ. leihvan փոխ տալ = օտարին թողուլ, և Հայ. լքե, որմէ լքանել, թող լքէ լինել, սին-լքոր:

2. Rik քծել, Հնդ. րիկ, լիխ, Յուն. ἐρείκω, Հայ. յղկել = յղ-կել:

Rig դողալ, երերել, Հնդ. րեջ, Յուն. ἐλελίζω = ἐλελιγιω; և Հայ. երկիւղ, երկն, երկնչել, բայց տես նաև targ:

Righ լզել, Հնդ. րիհ, Յուն. λείχω, Լատ. lingo, Հնդ. լեհոն Գոթ. bi-laig-ôn և Հայ. լիզուլ և լեզուլ, թերևս նաև լեզու:

Rug բեկանել, վշտացնել, Հնդ. րուջ, իսկ Լատ. lugere ողբալ, Հայ. լուծանել:

Ruk, ruks լուսել, փայլել, Հնդ. րուճ, րուկշա՝ փայլուն, Զնդ. րաոճ, րաոխշնա՝ լուսաւոր, Նպ. افروز، افروختن روشن، լուսաւոր, Յուն. λευκός ճերմակ, λύχνος աշտանակ, ճրագ. Լատ. lucere, lux լոյս, luna=lucna լուսին. Գոթ. liuhjan, Հսլ. լուճը՝ լոյս. լուճա՝ նշոյլ, և Հայ. լոյս, լուսաւոր, լուսին, լուսանն, լուցանել, լուցկի, թերևս նաև աչալուրջ կամ արշալուրջ, (կայ նաև արշալոյս եթէ չենք սխալիր) և լուրջ = լուրշ, եթէ շ և ջ տառերէն ա-

---

նաև նախամայր ցէն հայ լեզուին մէջ կ'ի փոխուած ձայնն, որ երևոյթը ընդպէս ալ կը պատահէր: Վասն զի ինչ տարբերութիւն կրնար ըլլալ հնագոյն և նորագոյն կ՝ ձայներուն մէջ, և եթէ կար՝ այնչափ մեծ չէր, որ գոնէ քանի մը պարագայից մէջ հարկադրուած էր տեղի տալ նմանութեան մեծագոյն զօրութեան, որ տակաւ սկսած կ'երևայ բոլոր հայ լեզուին վրայ տիրել ազդուապէս:

2. Vag, uks=ugs թրջել, Հնդ. ուկշ և անկէ ուկշան, Գոթ. auksa ցուլ. Յուն. ὑγρός խոնաւ, Լատ. uveo=ugveo թացանալ. uvidus թաց. umor գիջութիւն. Հայ. գէջ, գիջանալ, և առոգ-անել, ոռոգել:

Vagh երթալ (կառօք, նաւաւ), Հնդ. վահ, Զնդ. վազ, Լատ. vehere, Սլ. վեզան, Գոթ. vigan շարժել, Հայ. վազել թերևս նաև վարել (ի ստարածումն), դարձեալ վազել, վազ-վազել, ա-ռագակ: Այդ արմատէն է հնդեւրոպաշէն սայլին անունն ալ Հնդ. վա՛հա, Յուն. ὄχος, Սլ. վոզը, Լատ. vehiculum և Հայ. վազք, վաշ=վաղ:

Vad թրջել, թխել, Հնդ. ուդ, և անկէ ուդրա ջուր. Յուն. ὕδωρ, Լատ. unda, Սլ. voda, Գոթ. vato, Նեմ. wasser, Հայ. գետ, վտակ, ջեր, նաև թերևս ուրդ=ուղ:

Van յաղթել, շահել, Հնդ. և Զնդ. վան, Գոթ, vinnan, Հայ. վանել,

Vam փսխել, թքնել, Հնդ. վամ, Լատ vomere, Յուն. ἐμέω, Լիթ. vemti, հայերէն չկայ:

1. Var ծածկել, պատել, պաշտպանել, Հնդ. և Զնդ. վար, Գոթ. varjan, Հայ. վարել, վարք, վարանել, վարմ, որմ, վարտիք, սա-ղաւարտ (գլխու ծածկոյթ), նաև վերմակ, վերտ, որոնց վրայ աւելցնելու է էջ 48 նշանակուածները: Աս արմատէն ըլլալու է նաև որովայն, համեմատէ Հնդ, ուլվա և Լատ. volva, vulva նոյնանշանները: Հոս կը կցենք նաև varu, varv թաւալել, Յուն. εἰλύω, Լատ. volvo, Գոթ. valvjan և Հայ. հոլով, հոլովել, ո-րոնք իրենց մայր var էն զատուիլ չեն կրնար: Համեմատէ նաև գէլ, գլորել, գալարել, ոլորել, քոլորել, ք նախդիր, տես էջ 60:

2. Var վառել, եռալ, Գոթ. varmjan տաքցնել, vulan եռալ, Լիթ. virti եփել, Յուն. ἀλέα (ատտիկերէն) տաք, Հնդ. ուլկա՛ հրդեհ, Լատ. Vulcanus հրոյ դիք, և Հայ. վառ, վառել, թերևս նաև եռալ և զեռալ:

3. Var խօսել, արտաբերել, Զնդ. վար, Յուն. εἴρω. Լատ. verbum և Գոթ. vaurd և Հայ. թերևս վարդապետ, համեմատէ նայ. 339 աշակերտ:

Vark պատռել, քաշել, հերձել · Զնդ, վրաճ · Յուն. ἕλκω, և αὖλαξ ակօս, ἕλκος վէրք, Լատ. ulcus. Լիթ. vilkti, Հնդ. վրկա՝ ոլոր., իսկ հայերէն թերեւս հերկ, հերկել։ Այս արմատէն կը հանուի նաեւ Հնդ. վրկա, Զնդ, վեհրկա, Պրս. گرگ, Յուն. λύκος, Լատ. lupus, Հոլ. վուլֆ, Գոթ. vulfs և հայերէն գայլ որուն միջատառ կը կորսուած է ինչպէս վարգ բառին մէջ, զոր տես էջ 75։

1. Varg ծռիլ, ծռուիլ, տես էջ 48. Բոլոր լեզուներէն հոս կը պատկանին Լատ. vergere հակիլ, ծռիլ, valgus ծուռ. Հնդ. վրջանա ծուռ։

2. Varg հալածել, վրէժ խնդրել. Հնդ. վարջ, Գոթ. vrikan, ասկէ vraks հալածիչ, Հոլ. վրաքը՝ ոխակալ. Նրգ. rache (նախատառ v ինկած) վրէժ, Հայ. հալածել, վրէժ, վրէժոր։

3. Varg սառիլ, Հնդ. ո՛ւրջա՝ սառած, պաղած. Հայ. սառնանալ, անշուշտ նաեւ սառել, որ կամ նոյնանշան մայր արմատ մը (var) կ'ընծայեցնէ և կամ վերջատառ բաղաձայնը առած է։

4. Varg ողբել, գործել, Զնդ. վարեզ, Պրս. ورز վարզ, ورزيدن վարզիդըն, Յուն. ἔργον գործ, ῥέζειν գործել. Գոթ. vaurkjan գործել, Հայ. վարժ, վարժել, գործ, գործել, բայց նաեւ հարկ (գործ, ծառայութիւն) և ասկէ հարկաւոր (գործաւոր, սպասաւոր)։

Vart դառնալ, թաւալիլ, շրջիլ, Հնդ. , վարտ, Լատ. verto և versari, Հայ. ապարտել, այսինքն՝ դառնալ, փախստեան առնուլ։

Vardh մեծանալ, աճիլ, տես էջ 52-53.

Varsa մազ, Զնդ. վարեսա, Լիթ. varsà, Հոլ. վլոս և Հայ. վարս։

1. Vas հագնիլ, Հնդ. վաս, Գոթ. vasjan, Լատ. vestire Յուն. ἐσθέω, Զնդ. վանհանա՝ զգեստ. Հայ. զ նախդրիւ գ-էս վերջատառ s ինկած՝ անշուշտ հ ի դառնալէն ետեւ, զգենուլ, ըզգեստ, զգեցուցանել։ Հաւանական է որ նաեւ գաւառի և գաւառ (պարեգօտ բարդին ծայրն) հոս վերաբերին՝ — կորսուած տառին միացորդն ըլլալով։ Համեմատէ նաեւ էջ 58.

2. Vas բնակիլ, Հնդ. վաս, Զնդ. վանհ, Գոթ. visan, vas, և Հայ վանք՝ նէն առած s ինկած ինչպէս գէնք բառին մէջ. հա-

վեսմայտէ Հնդ. վասնա, իսկ Յուն. ὦνος, Լատ. vênum (ի վաճառ), որոնց երկուքին ալ իրենց s չչողը կորուսած են մերինին պէս։ Բայց կայ նաեւ Նրգ. wohnen բնակել, որուն հետ մեր հանգ բառը կրնայ նոյնպէս համեմատուիլ։ Այս vas արմատէն կ'ուզենք մենք հանել նաեւ գաւիթ (=գոմիթ, ինչպէս գաւառ=գաւհառ) բառը, Լատ. vestibulum նշանակութեամբ որ նմանապէս վեր արմատէն է. բայց գաւիթ կրնայ նաեւ Զնդ. գաւյաւիթ, Հնդ. գաւյութի հղկողներու բառերուն հետ համեմատութեան բերուիլ, և այն թերեւս աւելի հաւանականութեամբ։ Իսկ ոստան=վոստան մեր արմատէն չի կրնար ստուգիւ զատուիլ. համեմատէ Հնդ. վաստու՝ կայան, Յուն. ἄστυ քաղաք։

3. Vas, us լոյս ըլլալ, ծագել, վառել, Հնդ. վաս և ասկէ վասրա օր, նոյնպէս ուշ և ասկէ ուշաս՝ այգ. Յուն. αὔω, εὔω այրել, կիզուլ, ἠώς այգ, ἦμαρ, ἡμέρα օր. Լատ. aurora=ausosa այգ, Լիթ. ուշզռի՝ այգ լինել։ Իսկ հայ լեզուէս հոս կը պատկանի առաւ, որ s չչողը դարձեալ կլլած է թերեւս ժամանակ մը հ չնչով պահելէն ետեւ, և յետոյ կրնայ ալ փոխուած ըլլալ։ Այս երկու ձայներուն նմանութեան փաստ մըն են ...=հ..., ...=հ..., ...=հ... եւայլն գրութիւնները։

Vaskara երեկոյ, Յուն. ἕσπερος, Լատ. vesper, Լիթ. vakara, Հոլ. վեսպեր և Հայ. գիշեր։

Vi, avi թռչուն, Հնդ. և Զնդ. վի, Յուն. οἰωνός, αἰετός արծիւ, Լատ. avis. աս վերջնոյն հետ աւելի նմանութիւն ունի Հայ. հաւ (թռչուն), որուն նախատառ չունչը նոյն ազդեցութեամբ գոյացած է, որով նաեւ հաւ (պապ) բառին, զոր աւելի հաւանական է Լատ. avus դող քան թէ Յուն. πάππος բառին հետ համեմատել։ Նախաշունչ հին նկատմամբ տես էջ 61։

Vid գտնել, գիտնալ. Հնդ. և Զնդ. վիդ, Յուն. ἰδεῖν, Լատ. videre, Հոլ. վիդերե, Գոթ. vait, Նրգ. vissen, Հայ. գէտ, գիտուն, գիտել։ Համեմատէ Նոյ. ... տեսել և մեր նախնեալ (=ծանուցանել) բառերն, որոնց նախատառ ն ձայնը լոկ նախդիր մը կրնայ ըլլալ. տես նեկիել, նախատ, նաեւ, էջ 39։ Նոյն իսկ տեսութիք, տեսնել հոս կրնան բերուիլ, եթէ ն հնագոյն է ձայնը կը

փոխանակէ , որուն նման երեւոյթներ երբեմն կը նշմարուին , բայց տես նաեւ էջ 66 , ուր «առնել» ուրիշ արմատի մը հետ բաղդատուած է ։

Ծան. — Նախալեզուեան տառերուն մէջ թի նման v ալ շատ այլայլութիւն կրած է մեր լեզուին տակ . վասնզի մենք չէ թէ միայն նախնական հնչիւնները պահած , այլ նաեւ երբեմն զի փոխած ենք և այն բառին թէ սկիզբը և թէ մէջը ։ Այս երկու իրականութեանց ալ գրեթէ տեղեակ էին եւրոպացի հայագէտք, բայց անտեղեակ մնացած են ցարդ որ հնագոյն ւ յունականին նման մեր մէջ ալ հի կարենայ փոխուիլ ։ Այն ճշմարտութիւնը— զոր հարեւանցի միայն նշանակած ենք մեր Ք տառին գերմաներէն տետրակին մէջ և որուն բաւական օրինակ տուինք արդէն վերագոյն — աւելի մանրամասնօրէն պիտի քննենք երբ առանձին կերպով հ տառին վրայ ճառենք ։ Բոլոր լեզուներուն մէջ ընդհանրապէս անփոփոխ մնացած է ւ , միայն Յոյնք մեծ հակառակութիւն կը ցուցնեն նոյն ձայնին և մեծ ջանք կը յայտնեն նոյնն իսպառ խեղդելու բառին թէ սկիզբը , թէ մէջը և թէ վերջը ։ Պարսիկք և քանի մը Յոյն գաւառալեզուք մեզի նման երբեմն զի կը դարձնեն ։ —

Sak հետեւիլ . Հնդ. սաճ և սաճ , Յուն. ἕπομαι , Լատ. sequi և socius ընկեր , Լիթ. sékti. Sak ունի sag ձեւն ալ հնդկ., յարել , յածել նշանակութեամբ , բայական գործածութեամբ պահուած Հնդ. սաջջ = սաջ արմատին մէջ ։ Այդ sak ու sag արմատներուն հետ , որոնք իրարմէ չէին տարբերեր նախապէս , կը համեմատենք մեր լեզուէն հետեւեալները . հակ, հակառակ , հակել և , զ նախդրին պատճառաւ հ կորսուելով , զոկատել = զհակատել . դարձեալ հանգչել, հանգիստ, հանգոյց . վերջնապէս հ չի նուաղած յանգ և յանկ , յագչել , յանգչել , և յանկչել , յանկուցանել ։

Sagh բռնել, զօրել, յաղթել, տեւել , Հնդ. սահ , Զնդ. հազ , Յուն. ἔχω , Ἴσχω և Հայ հազ և ասկէ հազիւ , "բաղդատէ հազիհազ ոճը . անդէօք հոգալ , հազ կրնայ" կերպով մը նոյն արմատին հետ կապուիլ . տես էջ 70-71 ։

Sad նստիլ, Հնդ. սադ, Զնդ. հադ, Յուն. ἕζομαι, Լատ. sedere, Հղ. սեդիտի, Գոթ. satjan, Հայերէն պահուած միայն ն նախդրիւ նի-սդ, նստել, Նպ. نشان, Հպ. նիյաշադայամ, նստուցանէի, կացուցանէի.

Sana հին, վերջական սանսկրիտ սանա՝ հին, մշտնջենաւոր. Լատ. senex ծերունի, Յուն. ἕνη καὶ νέα այսինքն ἡμέρα հին և նոր օր (ամսոյ), Գոթ. sin-ista հնագոյն, sin-teino միշտ, Հայ. հին, հանի և և հանապազ.

Sama ամ, ամառն, Հնդ. սամա՛, Զնդ. համա, Գոթ. sumrus, Նգզ. sommer և Հայ. ամ և ամառն, որոնք իրենց նախաշունչ հ տառը կորուսած են.

Sar և բով անած sarp սահիլ, հոսիլ, սողալ, Հնդ. սար և սարպ և սարպա՝ օձ. Յուն. ἕρπω և ապա ἑρπετόν սողուն, Լատ. serpere և ապա serpens օձ, Հայերէն սողել, սողուն, սողոսկել, և սահել, սահանք, սուրալ, սուրհալ, սուրհանդակ, հ տառն ունեցողները sarp ածանցականէն ելած կ'երեւին, որուն ղ ձայնն անվթար մնացած է մեր սողողունն բառին մէջ. Հաւանական է որ հրասակ, հոսել բառերն ալ հոս պատկանին, որոնք նոյնանշան srus ձեւէ մը յառաջ եկած պիտի ըլլան. Համեմատէ Հնդ. սրա, Յուն. ῥέω, հոսել ῥεῦμα հոսանք, հոսել, ջեր ևայլն.

Sark շարժել, նետել, Զնդ. հարեծ և Գոթ. slahan, Հայ. հարկանել, շարկանել և թերեւս նաեւ արկանել, վերջին երկուքն իրենց հ շունչէն զրկուած. տես նաեւ էջ 46. Կրնայ նաեւ հերքել հոս պատկանիլ. Հնդկերէն սարջ և Զանդկերէն հարեզ, որ գրեթէ համանիշ են, sark նախնականին նուազեալ sarg ձեւէ մը միայն կրնան մեկնուիլ.

Su քամել, ծնանել, Հնդ. սու և ապա սու՛նու՝ ծնունդ, որդի, սուրա՝ հիւթ, սոմա՝ հիւթ, հաոմ. Զնդ. հունու, Գոթ. sunus որդի և Հայ. հիւթ և քամել, քամի.

Skak 'գործը մէջտեղ ելլել, երեւան գալ, Հնդ. խաջ, Յուն. κικίω, Հայ. խաղ, խաղընդոստ, խաղընդակն. նաեւ սխանել, զոր տես էջ 54-55, համեմատէ Նգզ. ge-scheh-en պատահել.

Scand ցատկել, ելնել, Հնդ. սկանդ, Լատ. scandere և անկէ scâla = scand-la սանդուղք, որ Լատին բառին հետ նոյն արմատէն է. « փոխանակ սկի կը ցուցնէ նաև սնդիկ կամ ծնդիկ, Հնդ. սկանդա :

2. Skad, skand խածնել, ատել, Հնդ. խադ, խադանա ակռայ, կերակուր, խադուկաʼ չար, նախանձոտ, Յուն. χναδάλλω խայթել, Հայ. խածանել, խածի, գիշախանձ (գէշ ուտող), անշուշտ նաև խայծ, նոյնպէս խանդալ կամ խանդաղ :

3. Skad, skand վառել, այրել, Հնդ. սանդ, և ճանդրանա լուսին, Յուն. χάνδαρος ածուխ, Լատ. in-cendo, candere, candela կանթեղ, Հայ. խանձել և խանձել, խանձատել, խանձող, բայց նաև խայծիլ, նոյնպէս շանդ կամ շանթ :

4. Skad, skid ճեղքել, զատել, Հնդ. սխադ և չիդ, և Զնդ. սճիդ, Յուն. σχάζω և σχίζω, Լատ. scindo և Հայ. ճանկել և ճեղքել, տես նաև էջ 28 :

1. Skap քերել, փորել, Յուն. σχάπτω, Լատ. scabere, Լիթ. scapoti, Նրգ. schaben, Հայ. շառ-շափել (էջ 53), թերևս նաև խոփ և շողել :

2. Skap ծածկել, փակել, Յուն. σχέπω, Հայ. խուփ, խուփանել, խափնում, խուփն : Աս արմատէն են Հնդ. կշապ, Զնդ. խշապ, Նպ. شب շէբ, թերևս հայերէն շապիկ=ծածկոյթ :

1. Skar քերել, կորել, Յուն. οχάλλω, Լիթ. skelti, Նրգ. scheeren, scharren, Հայ. քերել, քաղել, քաղող : Ասոր ածանցական skart նոյնանշան ձևէն կը բխէ քերթել : Աս վերջնոյն նշանակեալ kart կորել ձևը տես իր կարգին մէջ : Skar ունի նաև skarp ածանցականը որմէ, Յուն. σχορπίος և Հայ. քարբ=խայթիչ :

2. Skar ծածկել, փակել; այս ձևով միայն մեր սքողել բառին մէջ պահուած, որուն նախաձայն ս էն զուրկ է քող կամ քօղ : Քոյր լեզուները kar ձևով ունին, Լատ. celare, oc-cul-ere, Գոթ. huljan ևայլն : Համեմատէ նաև քարատուկ=քարաքուի :

3. Skar խառնել, Յուն. χεράννυμι, Հնդ. սամ-կիր, Հայ. խառն ի խառն, խառնել : Միայն հայերէն նախադասը ի սկզբնական

Ասոնց + ձայնը կի տեղ է և ասիկայ նախալեզուին ցէն սերած է. ինչպէս յայտնի է այս բառերը նաև + ով գրուած կը գըտ-նուին, վասն զի նախալեզուին վերջատառ ցն տանկաւին պահ-ուած է երբեմն +ով, որ համարակօրէն կի կը փոխուի, տես էջ 79-80. stag նաև ցանք ձեւն ունի մեր մէջ, որմէ յառաջ եկած է ցանքուզել :

2. Stag, stig հրել, Գոթ. stiggan, անգ. stagg և Հայ. ցեկն, ցնկունք, տես էջ 53-54 :

3. Stag, stig խայթել, ոբել, Յուն. στίζω, Լատ. stinguo, Հնդ. տիջ, կորուած է նախաձայն չչողը, հայերէն ցեփել, որուն +ն կի տեղն է, ինչպէս վերագոյն յիշատակեցինք : Արդեայ նաև տարբերել հոս պատկանիլ, իբր Լատ. di-stingu-ere նշանակու-թեամբ, որ նմանապէս ստ արմատէն է : Տէֆ, տէֆէ, նպ. تيغ, որ դարձեալ հոս կը վերաբերի, թերեւս ծառի է :

Stan ցնդալ, որոտալ, Հնդ. ստան և տան, Լատ. tonat որոտայ, անգղերս. stunian և thunjan և Հայ. ցանեք բարդերուն ծայրը սրտաբանդ և անկէ ցնդալ, համեմատէ նպ. تندباد ցոնդէի :

Stana ստինք, Հնդ. ստանա, Յուն. στήνιον և Հայ. ստինք ստն-տու, ստնդեաց :

Stabh, Stambh կանգնել, խեռել, հնդկերէն ստամբհ, ստաբհ Յուն. στέμβω, հայերէն ապստամբ և ստամբակ, վերջնոյն պէս նաև պահլաւերէն, իսկ նպ. ستم

Stap հրել, լողնել, տես էջ 53.

1. Star ցրուել, հնդկերէն ստալ և անկէ ստալո՛ տեղի, Յուն. στέλλω, հբգ. stalljan, նբգ. stall ախոռ, stelle տեղի և հա-յերէն տեղի, զետեղել, եւեղ :

2. Star տարածել, ցրուել, հնդկերէն ստար և անկէ ստորնա՛ յէր. Յուն. στόρνυμι, Լատ. sterno, հսլ. ստրետի, Գոթ. straujan, նբգ. streuen և հայերէն ցիր, ցրել, ցրուել. ստ արմատէն է նաև սփառամ, նպ. گستر :

3. Star աստղ, հնդկերէն ստար, նպ. ستاره Յուն. ἀστήρ, Լատ.

stella Նրգ. stern և հայերէն աստղ, աստեղ, յունականին պէս ա ձայնաւորի յենարանով:

Staria ամուլ, հնդկերէն ստարի՛, Յուն. στεῖρα, Գոթ. stairo, Լատ. sterilis և հայերէն ստերջ = ստերջա, նաեւ չորք = ստարիա, որ ամուլ կը նշանակէր անշուշտ նախապէս, համեմատէ Նպ. [illegible] չորք:

Stigh ելնել, հնդկերէն ստիգհ, Յուն. στείχω, Նրգ. steigen և հայերէն աստիճան և աշտիճան (ելանելիք) ա ձայնաւորի յաւելուածով և Չ ճի փոխուած:

Stu, sti ցցուել, Յուն. στύω, Լիթ. stoviu, հնդկերէն սթամ-նա, զանդկերէն ստանա, Նպ. [illegible] ստան, ցից, և հայերէն ցից-ց ցցել, ց-ցուել, ց-ցունք, որ կրկնուած են: Աս արմատէն է հնդկերէն սթա՛վարա, սթա՛ուրա, հայերէն ստուար, համեմատէ Լատ. re-stau-rare կազդուրել, Գոթ. stiur-jan հաստատել: Նաեւ հոն կը պատկանին զանդկերէն ստաւրա՝ ուղտ, էշ, Գոթ. stiur ցուլ. համեմատէ Լատ. taurus, Յուն. ταῦρος և հայերէն ցուլ, տաւար և տաւարած:

Snusâ նու, հնդկերէն սնուշա՛, հպ. սնըխա, Հրգ. snurâ, Յուն. νυός, Լատ. nurus. այս երկու վերջիններուն նման մեր նու, նուանք նոյանք բառերն իրենց նախաձայն շչողը տուժած են:

Spaç սպասել, զանդկերէն սպաս, Յուն. σκέπτομαι, Լատ. specio, Նրգ. spaehen, հայերէն սպասել, սպաս, սպասաւորել. հնդկերէն ձեւն է պաս, բայց կայ նաեւ սպաս՝ լրտես նշանակութեամբ:

1. Spar ցրուել, ցանել, հնդկերէն սփար, Յուն. σπαίρω և σπείρω, հայերէն սփիռ, սփռել, արդի հայերէն փռել, թերեւս նաեւ սպառել, իսպառ, սպառ իսպառ, ինչպէս խառն ի խուռն:

2. Spar ջնջել, Յուն. πτάρνυμι, Լատ. sternuo = spernuo, հայերէն փռնգամ, փռնկամ, փռնչեմ, որոնք թերեւս նոյնանշան sparg ձեւէ մը սերած են. համեմատէ հնդկերէն սփարջ, Յուն. σφαραγέω շաչել, շառաչել:

1. Spud փութալ, Յուն. σπεύδω, Լատ. studeo=spudeo, Նրմ. sich sputen, և Հայերէն փոյթ, փութալ, որոնց ըն տի տեղ է։

2. Spud ստել, Յուն. ψεύδω, ψεῦδος, Հայ. սուտ, ստել, և սոփեստ, որ այլայլածն է սփուտ արմատին կրկնուած ձևին։

Smi ժպտել, տես էջ 51-52.

Svad քաղցրանալ, հաճիլ, Հնդկերէն սվադ, Յուն. ἥνδάνω, ἅδομαι, ἡδύς, Լատ. suavis, d ինկած, Հնդկերէն սվա՛դու և Հայ. քաղցր, քաղցու, որուն միջատառ դին հետ կրնայ Լիթ. saldus քաղցր համեմատուիլ։ Կ'երևայ թէ այս երկու բառերուն մէջ ալ դ արմատական է, վասն զի կը յիշուի նաև Հնդկերէն սվարդ=սվադ և Լատ. ab-surd-us բուն անհամ կ'երևի թէ կը նշանակէ։ Տես նաև էջ 81.

Svan հնչել, Հնդկերէն սվան, Լատ. sonare և sonus հնչիւն, Հայ. արմատ հնչ, որմէ հնչել, չ ծանօթ ածանցատառիւ առած։

Svap ննջել, մրափել, Հնդկերէն սվապ, Լատ. sopor նիրհ, sopio նիրհել, Հոլ. օըպատի, Հին Հիւսիսական լեզուաւ svaf։ Հայերէն զուտ արմատը գործածուած չունինք, բայց կայ անկէ նոյն ածանցած բառն քուն=քոյն, որմէ քնանել. համեմատէ Հնդկերէն սվապնա, Զանդկերէն քաֆնա, Նպ. خواب, Յուն. ὕπνος, Լատ. somnus=sopnus ևայլն։

1. Svar ուտել, Զանդկերէն քար, Նպ. خوردن և Հայ. սուաղ, որմէ անսուաղ (անօթի, չկերած)։

2. Svar ճառել, երգել, Հնդկերէն սվար, Զանդկերէն քարեթա շողէան, Նրմ. schwuel գոլ. թերևս Հայերէն շող, շողիւն, շողալ։

Svasar քոյր, Հնդկերէն սվասար, Զանդկերէն քանհար, Նպ. خواهر, Լատ. soror=svasor, Գոթ. suistar, Հոլ. սուստր, տես էջ 38. Յոյնք այս բառը չունին։

Svid քրտնել, Հնդկերէն սվիդ, Յուն. ἰδίω, ἶδος քիրտն. Լատ. sudor, Նրմ. schweiss, և Հայերէն քիրտն=քիտ-րն, որուն ր մասնիկը լատին բառն ալ ունի։

Ծան. — Պէճառոս ձայներուն խրթնագոյնն է կրնանք ըսել նախալեզուեան s, որուն վրայ էջ 72-73 քանի մը խօսք արդէն ըսինք ։ Մեր բառծին ցուցումն ուրիշ յարմար առթուայ թողլով՝ հոս համառօտիւ միայն նշանակենք, որ նոյն ձայնը մեր մէջ թէև ընդհանրապէս հ շունչին դարձած (յոյն, սլաւեան և երանեան լեզուաց նման) երբեմն ջի ալ նուազած և նոյն իսկ անհետ իսկ եղած է, սակայն չի կրնար բնաւ ուրացուիլ թէ նաև հնագոյն ընիկ հնչմամբ և օ տառով ալ աւանդուած է s տառամենական ըն-չողը ։ Իսկ sv համապատկօրէն + = հվ է մեր մէջ, բայց ---, ով ձևերով ալ պահուած կը գտնենք, ինչպէս կրնայինք սպասել ըստպէս ։ Վերջապէս sk, st, sp թէև երբեմն ղ, ափ, ող ամ-բողջ տառերներով կ'երևան մեր մէջ, բայց համապատկօրէն ի, ի, և փ թաւերուն տակ ծածկուած են, նա թէ իր քով +, ղ, ց, և Իր քով ց ալ երևան կուգան ։

Քոյր լեզուներն ալ նոյն ձայնը բաւական այլայլած են ։ Հըն-դիկը, կրնանք ըսել, անվթար կը պահէ, թէև կան դիտուած-ներ ալ, ուր շ և ք ձայներուն կը փոխէ և նոյն իսկ հ շնչով մը միայն կը թողու երբեմն ։ Ցոյնք ինչպէս y, v նոյնպէս s ձայնի հակակրութիւն ունին, զոր մեզի պէս հ ի (δασεῖα) կը փոխեն և անհետ ալ կ'ընեն երբեմն, երբ քովը բաղաձայնի նեցուկ մը չունենար s. —



# ԳԼՈՒԽ ԺԲ.

---

## Դերանունական արմատներ.

A առաջին և երրորդ դէմքի դերանուններուն մէջ երեւան կու գայ. ինչպէս a-gham, Հնդկերէն ահամ, Զանդկերէն ազէմ, Հին պարս. ադամ, Յուն. ἐγώ, Լատ. ego, Լիթ. աշ, Հսլ. ազը, Գոթ. ik և Հայերէն ես, զիս, ինձ և այլն, այսինքն մեր մէջ Ե եւ Է ձայներուն նուաղած։ Նոյն արմատը բովանդակուած է դարձեալ հետեւեալ դերանունական կազմութեանց մէջ, ինչպէս a-na այն, նա, անկէ antara միւս, ատար, a-sma մեզ, մեր, a-va, նա, a-dha անդ, Յուն. ἔνθα, Հնդկերէն և Զանդկերէն ադհա։

An ժխտական մասնիկն է, որ բաղաձայնէ առաջ a կ'ըլլայ հասարակօրէն, այս վերջին ձեւով մեր մէջ կամայ ակամայ ոճին մէջ։ Համեմատէ Հնդկերէն անրթա, Զանդկերէն անարթա, Հայերէն անարդար։ Հնդկերէն անմրթա, Յուն. ἄμ-βροτος, Հայերէն անմահ։ Հնդկերէն անջնա՛տա, Յուն. ἄγνωτος, Լատ. ignotus, Հայերէն անծանօթ և այլն։

Ana Վրայ. Զանդկերէն անա, Յուն. ἀνά, Գոթ. ana, Հայ. նա, որ մեր լեզուէն կորսուած կ'երեւի, եթէ նախատել, նախանձել բառերուն սկիզբն երեւցող նա մասնիկը հոս չէ պատկանիր։ Այն երկու բառերուն արմատներն աննախդիր երեւան կու գան ատել և խանձել բառերուն վրայ։

Ani մէջ, Յուն. ἐνί, εἰν, ἐν, Լատ. և Գոթ. in, և Հայերէն թերեւս է հայցականի և ներգոյականի ծանօթ նախդիրը, որ յաճախ գործածութեամբ կրնայ մինչեւ այն աստիճան նուաղած ըլլալ։ Վերինին բաղդատական ձեւն է Հնդկերէն անթար, Լատ. inter ի մէջ, որ գուցէ թէ աւանդուած է մեզի ներ նախդիրով,

զոր հայերէնն յունաձեւ կերտող նախնիք յետոյ շատ յաճախ սկըսած են գործածել յունական ἐν, εἰς նախդիրը թարգմանելու . ինչպէս Ներկայ ἐνεστώς, Ներգործել ἐνεργεῖν, Ներածել, εἰσάτειν եւայլն: Սակայն սոյն նախդիրը շատ հին էր և այս յայտնի է Ներ-ք ձեւէն, որ մայրն է Ներքին, Ներքոյ, ի Ներքս հոլոված բառերուն : Նոյն բաղդատական ձեւը փոքր ինչ այլայլած կը ցուցնէ նոյնպէս հօս վերաբերող ընդերք որուն հետ կը համեմատուին հնդկերէն անթրա, Յուն. ἔντερον նոյնանշանները :

Anti դիմաց, առջեւ, հնդկերէն անթի, Յուն. ἀντί, Գոթ. and և հայերէն յանդիման, ընդ : Համեմատէ ընդարձակ, ընդասուն ընդունայն եւայլն, որոնց մէջ իբրեւ նախդիր գործածուած է ընդ :

Apa, հնդկերէն և զանդկերէն ապա, Լատ. ab, â, Գոթ. af, որոնք մեր բացառականի է նախդրին նշանակութիւնն ու գործածութիւնն ունին . իսկ մեր ապա (յապա, թերեւս նաեւ հապա) մակբային իմաստ հնդկերէն, զանդկերէն, հպ. ապարա, Գոթ. afar բառերն ունին : Այս իբրեւ նախդիր միայն բացառականի զօրութիւն ունի մեր մէջ . ինչպէս ապագովել (գովել), ապախուրել (խոյր), ապաշնորհ (շնորհք), ապաշխարել (աշխարել), ապարասան (երասան) եւայլն :

Api նախդիր և նախադրութիւն, որ մեր հայցականէ առաջ գործածուող է և յ տառերուն ոյժն ունի և հաւանական է որ ատոնք անկէ յառաջ եկած ըլլան . հնդկերէն ապի, Յուն. ἐπι-, և ἐπί, Լատ. ob.

Abhi ընդ, վրան, շուրջ, հնդկերէն աբհի, զանդկերէն աիվի Յուն. ἀμφί, Լատ. ambi-, Գոթ. bi-, իսկ հայերէն չենք գիտեր թէ արդեօք պահուած է :

I այս, անայլայլապէս պահուած է հնդիկ, լատին և գոթական լեզուաց մէջ, և sa ու դերանունական արմատին հետ բաղդրուելով aisa ձեւը կ'առնու, հնդկերէն էշա, զանդկերէն աէշա, և հայերէն այ-ս, որ նաեւ այ-դ, այ-ն յօդուածոյ դերանուններուն առաջին կազմիչ մասն է :

Upa նախադրութիւն ընդ գործիական խնդրով և իբրեւ նախ-

դիր հուպ նշանակութեամբ, հնդկերէն և զանդկերէն ուպա, Յուն. ὑπό, Գոթ. uf և Լատ. s-ub, որուն հետ աւելի մերձաւորութիւն ունի հ—ուպ, որմէ նաեւ հպա-տակ։ Ասիկայ նոյն գաղափարական կազմութիւնն ունի Նրգ. unter-gebener բառին հետ, համեմատէ Լատ. sub-jectus, Գաղ. sujet.։

Ka որ յարաբերական դերանուան արմատն է, միանգամայն ընդհանրացնող նշանակութեամբ. հնդկերէն և զանդկերէն կա և ճա, Յուն. πο և τε, Լատ. qui, que, Գոթ. hvas և h և հայերէն անորոշ դերանուանց ծայրն ինչպէս ոք, ուրուք, ումեք, և իք ռամկօրէն, զոր գրաւոր լեզուն միայն ն ժխտականով կապուած աւանդած է մեզի՝ չ-իք, որմէ չքաւոր, չքոտի, չքնաղ։ Դարձեալ անորոշ մակբայներուն վերջն ուրեք, երբեք, ուստեք։ Նոյն յարաբերական արմատը մանաւանդ հարցական նշանակութեամբը կը բովանդակեն քան, որքան, քանի, քանակ, դարձեալ քան-ն իւրաքանչիւր բառին մէջ, իբր Լատ. cunque, գոթ. huan-hun. համեմատէ Լատ. quisque իւրաքանչիւր, quam քան, քանզի։ Իսկ ք ն տառով կ'երեւայ, դարձեալ ընդհանրացուցիչ զօրութեամբ, հետեւեալներուն վերջն՝ ոչ, զինչ, ինչ, մինչ. բաղդատէ Լատ. ne-que, Գոթ. ni-h ոչ, հնդկերէն և զանդկերէն ճէ, Յուն. τί չի՛նչ։

Gha դերանունական արմատ մը որ նշանակութիւնը սաստկացնելու կամ ճշդագոյն որոշելու գործածուած է, ինչպէս հնդկերէն ղհա, հա. Յուն. γε, և Գոթ. ga-անանջատ նախդիր մը՝ ոչինչ աննման մեր զ սաստկացուցիչ նախդրին. ինչպէս՝ զգնալ և գնալ, զչարել և չար, զգետնել և գետին, զգուշանալ և գուշակել, ոսկեզօծ և օծանել, զաչացու և աչք և այլն։ Դարձեալ հայցական, բացառական (պատմական), գործիական (պարառական) և երբեմն նաեւ սեռական հոլովներուն մէջ, ինչպէս՝ զքարէ, զքարիւ, զքարի։ Նոյն gha արմատը կը բովանդակեն նաեւ գոնէ, գէթ = գայթ և գէն = գոյն, որոնց մէջ սաստկացուցիչ նշանակութիւնը շատ ակներեւ է։ Լատին լեզուին hi-c, ho-c այս ցուցական դերանուանն ստուգիւ gha արմատէն զատ-

ուիլ չի կրնար, որմէ իրաւամբ կրնայ հետեւցուիլ որ անոր ալ սկզբնական նշանակութիւնն բուն այս, ատ էր :

Ta, հնդկերէն և զանդկերէն տա, Յուն. τό, Լատ. is-te, Հոլ. դը, Իգ. դա, Գոթ. thata, և հայերէն դա, դորա, դմա, դոյն, և բարդութեանց մէջ այդ և ասկէ այդ-դեռ, այդ-չափ, դարձեալ ահաւադիկ, աւադիկ :

Tu, հնդկերէն տվամ, զանդկերէն տու, տում, Նոր. ու, Յուն. τύ, σύ, Լատ. tu, Հոլ. ty, Գոթ. thu, Սքգ. du, և հայերէն դու, բայց նաեւ ք տառով որմէ քո, քում, ի քէն, քեզ : Հաւանական է որ ռամկօրէն գործածուած ծօ, քո կոչականները բուն դու կը նշանակեն և հոս կը պատկանին :

Na նա, հնդկերէն ե-նա՛ այն, զանդկերէն նա իբրեւ սաստկացուցիչ մասնիկ, ոչ-նա՛ ո՛չ, Յունարէն νή, ναί այո, ἐγώνη ես իսկ, δεῖνα նոյն, τίς, τινός, τινί, Լատ. ne, nae այո, quis-na-m ո՞վ ով, և հայերէն նա, նոյն, նորա, նմա, և բարդութեանց մէջ այ-ն և ասկէ այն-դեռ, այն-չափ, դարձեալ ահաւանիկ, աւանիկ : համեմատէ նոյնպէս արդի հայերէն նէ (եթէ) յետադաս : Հայ լեզուին չափ և ոչ մէկ քոյր լեզուին մէջ կենդանի է այն նա դերանունական արմատը : Հնդիկ և զանդիկ, յոյն և լատին լեզուներն առաջին դէմքի յոգնակին կազմելու ալ կը գործածեն na դերանուն մը, ինչպէս Լատ. nos մեք, noster մեր, Յուն. νῶϊ, νώ, մեք երկոքեան :

Pra, հնդկերէն պրա, զանդկերէն ֆրա, Նոր. ն., Յուն. πρό, Լատ. pro, Հոլ. պրո, Գոթ. faur նախադրութիւն և նախդիր առաջ, առ նշանակութեամբ : Հայերէն առ, որուն թէ՛ նախադրական և թէ նախդրական գործածութիւնն յայտնի է, և հնագոյն հօր ձեւէ մը յառաջ եկած կ'երեւի, հ կորսնելու ատեն շունչը բին հաղորդելով, վասն զի ռ = րհ է, ինչպէս շատ անգ կրկնեցինք : Այն բառերն, որոնց սկիզբն հնագոյն հրա-ձեւոյն աւանդուած է առ հայութեան կնիքը չեն կրեր վրանին . այսպիսի են հրաման, հրահանգ, հրասախ եւայլն : Բուն հայ արմատներուն սկիզբն իբրեւ նախդիր միշտ առ ձեւով է, որպիսի են առանց, առաջի, առաւել, առնդուլ, առաքել, առկայծեալ եւայլն :

համ-ողջ, որուն քիչ նկատմամբ տես էջ 89 ։ Իսկ ամառն, (=համ-առա, տես էջ 86) անդամ նաև․ ընդ․ Նոյն նախդրին մը ն ի փոխած են հետեւորդ բաղաձայնին համար, որ շրթնական չէ ։

Sama նոյն, քոյր, հնդկերէն սամա, զանդկերէն համա, Յուն. ὁμός, հոլ. սամը, Գոթ. sama և հայերէն համ, ինչպէս համահայր Յուն. ὁμοπάτωρ, հպ. համապիտոր ։ Համեմատէ նաև համակ, նոյ. ձև, համայն, նոյ. շ... Ասիոնք նաև նախաշաւինչ հ կորսուած ամէն, ամենայն, ամենեւին եայլն ։

Sva իւր, քեզ, հնդկերէն սվա, հնդկերէն հվա, Յուն. οὗ, οἷ, ἕ, Լատ. sibi, se, հոլ. սեպէ, սին․ Գոթ. sik ։ Այդ դերանունը զանազան ձեւերով պահուած է մեր մէջ ։ Ամենէն հնագոյնն արդէն յիշատակած ենք էջ 72-73 ․ Հոս կը դնենք նախ ինքն և փառակել (նմանցնել = իւր առնել), որոնք սկզբնական sv բաղաձայնութիւնը ք տառով առանձնած են, ինչպէս քոյր, քեռի, քաղցր, որոնց վրայ խօսուած է կանխաւ ։ Իսկ, որ քոյ ինքեան, ինքնութիւն կը նշանակէ բուն, sv յօդուածքը աւելի կը ցուցնէ, որ երեւոյթն էջ 75 ալ տեսանք։ Իւր նոյն բաղաձայնութեան միայն v (= ւ)ն պահած է ․ նախատառ ի ձայնաւորը նոյն է ի-ով ին սկիզբն ալ երեւցողին հետ, իսկ ը դերանուանց սեռականին հոլովակերպն է ։ Կը մնայ յատուկ, որուն մէջ svaին vն պահուած է հ ով նուաղած, որուն օրինակները շատ տեղ յառաջ բերած ենք առթին ։ Քոյր լեզուներէն համեմատէ հետեւեալները, որոնք նոյն sva արմատէն սերած են, զանդկերէն քայրա՝ յատուկ, քայրաւ՝ խիստութիւն, քեզ, իւր․ փայրու՝ խնամութիւն, խնամի, հոլ. սվարը՝ ազգական ։



# ԳԼՈՒԽ ԺԳ·

## ԲՈՒՆ · — ԲՆԱԿԵՐՏՈՒԹԻՒՆ ։

Խօսեցանք բայական ու դերանուանական արմատներուն վրայ, արդ ժամն է այն տարրները քննելու, որոնք նոյն արմատներուն վերջը գալով՝ անոնց անորոշ, ընդհանուր նշանակութիւնը այլեւայլ կերպով կ'որոշեն կը մասնաւորեն ։ Ահա սոյն մասնիկներէն կամ մակդիրներէն — որոնք արմատներու հետ տակաւ միաւորած դերանուանական տարերք են անշուշտ — կը կազմուի բառին բունը ։

Բնակերտ (բուն կազմող) մակդիրք կրկին են Նախնական և Երկրորդական ։ Անոնք զուտ արմատին, իսկ ասոնք բունին վրայ կուգան ։ Այսպէս pa (պահել) արմատէն tar նախնական մակդիրով pa-tar (պահապան, պահող) հայր և ասկէ va երկրորդական մասնկով pa-tar-va (հօրու) հօրեղբայր ։

Նոյն բնակերտ մասնկունք, և այն նախնականներն հասարակօրէն, արմատին վրայ եկած ատեն՝ արմատական ձայնաւորը կ'աճի երբեմն, մանաւանդ երբ i կամ u է, որով կըլլայ i ai և u au, իսկ a, այսպիսի դիպուածի մը մէջ, միայն կրնայ երկարիլ և ըլլալ â · Այսպէս div (փայլիլ) արմատէն daiv-a (փայլուն) դէւ բունը՝ a բնակերտ մակդրով · նոյնպէս çraus-a հլու-ութիւն, çrus լսել արմատէն ։

Այդչափս ընդհանրապէս աւանդելէն ետեւ կը դնենք հոս բնակերտութեան գլխաւոր մակդիրները մեր գործածած տառական կարգաւ ։

նմանապէս նոյն է նշանակութիւնը, ինչպէս հատու, ազդու, հասու, բանս-արկու եւայլն, ամփոփումն է հնագոյն va կամ ava մակդիրին, որ յայտնի կ'ըլլայ յոքնակի սեռականի ուա = ուց ձեւէն, ինչպէս բանսարկուաց եւայլն:

Ta շատ պաշտօն վարող մասնիկ մըն է, բայց առանձին կերպով կը գործածուի կրաւորական կատարեալի ընդունելութիւնը կազմելու, Հնդ. սրուտա լուեալ, Զնդ. զա՛տա ծնեալ, Յուն. λειπτός լքեալ, Լատ. coc-tus եփեալ, Հոլ. պիւր արբեալ, Գոթ. sati-da եդեալ, նստուցեալ: Հաւանական է որ հոս պատկանի մեր ած մակդիրն ալ, որուն նախնական ձեւը կ'երեւի թէ ա-ծա էր՝ ինչպէս յայտնի է հոլովածէն. համեմատէ արարած, արարածոյ, ստեղծուած, ստեղծուածոյ եւայլն: Ինչպէս գիտենք, այդ ած՝ արդի լեզուին մէջ անցեալ ընդունելութեան սովորական մակդիրն է, թէեւ հին լեզուին մէջ հազիւ երբեք կը գործածուի:

Tar ող նշանակութեամբ, ինչպէս dâ-tar տուող, gan-tar ծնող, ad-tar ուտող: Նոյն մակդրով յօրինուած են pá-tar հայր, mâ-tar մայր, bhrâ-tar եղբայր բառերն: Կայ նաեւ tra ոչ գործող այլ գործի նշանակող, mâ-tra չափ, daç-tra ատամն, gâ-tra անդամ: Համեմատէ Յուն. ἄροτρον, Լատ. aratrum արօր: Անհաւանական չէ որ tar կամ աւելի բխած tara ձեւէ մը սերած ըլլայ մեր ող ընդունելութիւնն ալ, զոր ուղղականի հետ յարաբերութիւն չունեցող հոլովներն ող ձեւով ունին: Եթէ հաւր, մաւր, եղբաւր եւ օրաւր ձեւերուն դէմն հանենք ծնաւղ γενιτήρ genitor, տուաւղ δοτήρ dator, տառերու կողմանէ միայն ր եւ ղ ձայներու տարբերութիւնը կը գտնենք, որոնք իրարմէ տարբեր չեն սերնդով. ուստի եւ կը դրդուինք նաեւ երկու վերջիններուն ղ ին կից գտնուող ւ ձայնն հնագոյն ատամնականի մը ազդեցութեան տակ այնպէս յառաջ եկած համարիլ, ինչպէս նախընթաց չորս բառերուն մէջ ր ին կից եղող ւ ձայնը:

Ti [illegible] նշանակութեամբ, դուն ուրեք նաեւ գործող կը նշանակէ: Համեմատէ gan-ti ծնիւ, ծնունդ, dâ-ti տուրք, pâ-ti ըմպելի, ar-ti չուել, bhu-ti բնութիւն, mar-ti մահ, pa-ti պետ

եւայլն ։ Դուստր լեզուներն առանց բացառութեան ամէնն ալ ունին թէ նոյն նախնական ձեւով և թէ ինչ ինչ յաւելուածներով խառնուած ։ Մենք նոյնն ունինք թի ձեւով , որուն սա ամբողջական կերպարանքը սեռականի մէջ միայն երեւան կու գայ , ալեւոյթ , ծերոյթ , պայրոյթ , երեւոյթ , սեռ. երեւութի եւայլն ։ Նոյն մակդիրն է նաեւ ամաւթ , աղաւթ , ծանաւթ բառերուն վերջն , որոնց (յոգ.) սեռականներէն կը հետեւցուի թի բոլորական ձեւն , ինչպէս աղաւթից , ծանաւթից եւայլն ։ Բայց քոյրերուն նման Հայն ալ սոյն պարզական վիճակին մէջ չէ թողած այդ մակդիրն , այլ վրան բերած է ան մըն ալ , որով եղած է թեան , սեռ. թեան == թե-ան · այսպէս նեղութեան , նեղութե-ան եւայլն ։ Ծնունդ , ծննդե-ան , յաւ-ր , յաւ-րէ , նոյն թե-ան և թէ մասնիկները կը ներկայացնեն՝ միայն թէ ը ձայնի նուազած , որ անսովոր երեւոյթ մը չէ հայ լեզուի մէջ ։ Վերջապէս նոյն մակդիրը կ՚երեւայ թաքուստ , փախուստ բառերուն ծայրն , որոնց թաքստե-ան , փախստե-ան և թաքստէ , փախստէ կրկնաձեւ սեռականները դիտողութեան արժանի են ։

Tu բայանուն կը շինէ հնդիկ , լատին և սլաւական լեզուաց մէջ ։ Հնդիկք և լատինք ասոր եզ. հայցականը աներեւութի նշանակութեամբ կը գործածեն . հնդկերէն կար-տու-մ ընել . Լատ. doc-tu-m ուսուցանել ։ Մեր լեզուէն թերեւս սոյն մակդիրն ունենայ զգեստ , զգեստու ։ Յոյն լեզուէն հոս կը վերաբերի γελασ-τύ ծաղր , βρω-τύ կերակուր , βοη-τύ աղաղակ եւայլն ։

Na անցեալ ընդունելութեան կազմիչ է ինչպէս ta, բայց պաշտօնապէս հնդիկ , սլաւ և գերմանական լեզուներուն մէջ ։ Par-na լցեալ , ի par (լնուլ) արմատին անցեալ ընդունելութենէն , զոր գրեթէ ամէն պատերք ունին , նաեւ հայ. յղան , յղեա ձեւերով , որոնցմէ յղանալ , յղենալ՝ ի , յղի լինել ։ Մեր մէջ այնչափ յաճախութեամբ գործածուող ան ձեւով բայերն սկզբնապէս բնաւ տարբերութիւն չունէին մեր յիշատակած na մակդրէն ։ Նոյն մակդիրն ունին նաեւ svap-na քուն , vas-na գին , skai-na շէն , kars-na քորշ ։ Հայ լեզուէն հարկաւ հոս կը պատկանին կոխան , իշխան , դարան , ատրճան , որոնց յոգնակի սեռական-

ներուն մէջ — ճայնաւորն երեւան կուգայ ։ Սակայն ասոնք կրնան ծագումն առած ըլլալ նաեւ ana մակդիրէն, զոր տես, թէեւ ասս ալ վերինէն տարբեր չէ ծագմամբ, որչափ կ'երեւայ ։ Կայ նաեւ ni, որուն նշանակութիւնը ti մակդիրին հետ նոյն է, թէեւ ասոր չափ յաճախ չէ գործածութիւնը ։ Նախալեզուեան. ապա-հով միացորդ է ag-ni հուր, զոր քոյր լեզուաց շատն ունին և որուն ag շողալ արմատէն է մեր ածուխ բառը ։ Մեր թան, բան, ջան, բառերը կրնան ni բնակերտն ունենալ, որոնք ի հոլովման կը հետեւին, և հաւանական է որ արմատներն թա, բա, ջա ըլլան ։ Կայ նաեւ nu, որ ներկայարուն կը կազմէ, ինչպէս առնում, զգենում, զոր այլուր պիտի յիշատակենք ։

Ma. mana կրաւորական ու միջակ (հասարակ) բայերուն անցեալ ընդունելութիւնը շինելու կը ծառայեն ։ Առջինը պահուած է նախալեզուին հիւսիսային եւրոպական, և միւսն ասիական և հարաւային եւրոպական ճիւղերուն մէջ, սակայն հաւանական է որ համգիտապատիւ գործածութեամբ երկուքն ալ նուիրած էր նախաւոր մայր լեզուն ։ Համեմատէ dha-dha-mana, dhâ-sya-mana, dha-mana եդեալ, որոնց կը պատասխանեն Յուն. τιθέμενος, θησόμενος և θέμενος. ma գոյական և ածական բուներ ալ կը շինէ ինչպէս garma ջերմ, dhû-ma ծուխ, ծծումբ, ai-ma գնացք, ar-ma արմունկ ։ Այդ ma մեր մէջ ալ բաւական կիրառութիւն ունի, բայց բայէն դուրս՝ ինչպէս հողմ, տիղմ, սեղմ, ջերմ, որմ, և այլն կը ցուցնեն ։ Ազգակից է maի man. եթէ նոյն չէ բոլորովին, վասն զի նոյն բառերն երբեմն այս կրկին մակդիրներով ալ կ'երեւան ։ Համեմատէ gnâ-man անուն, ghái-man ջեռան, ջերան, եղեան, çrau-man լսելի և այլն ։ Մեր լեզուէն նոյն մակդիրին սերունդն է ան և հոլովելու ատեն մուն և ման, ինչպէս ջերմն, սերմն, սանդն, հիմն և այլն ։ Հոս կը վերաբերի նաեւ ուսումն, ինչպէս հեղումն, կոչումն և այլն ։ Նաեւ անուն (= անուան) և պաշտաւն, սեռ. պաշտաման, հոս կը պատկանին ։ Բառակազմութեան մէջ ալ գործ ունի ma, զոր տեղը կը դնենք ։

Ya ներգործական ընդունելութեան զօրութիւն ունէր անշուշտ նախալեզուին մէջ՝ թէեւ դուստր լեզուներն նոյն նախնական նշանակութիւնն անվթար չեն պահած ։ Հնդիկք նոյն մասնիկով իրենց բայերուն կրաւորական ձեւը կը կազմեն , որ նշանակութեամբ նախնականին հետ գրեթէ նոյն է , վասնզի կրել՝ հոգին տակ մնալ է ։ Նոյն ya մասնիկը մեզի ալ աւանդուած է (և ստու-գիւ սկզբնական նշանակութեամբ) ի և հոլովելու ատեն եա ձե-ւերով , ինչպէս լեզուիս օրէնք կը պահանջեն ։ Սիրելի , փարե-լի , գործելի , առնելի , ընդունելի բառերուն ծայրն երեւցող ի , որ հոլովելով կ'ըլլայ եա , ինչպէս սիրելեաց եւայլն , ապահովա-պէս ya մասնիկին է ։ Նոյնպէս բայերուն կրաւորականներուն մէջ երեւան եկող ի — սիրիմ , սիրիս , սիրի եւայլն — ուրիշ ծա-գում չունի ։ Նախալեզուական է ya div-ya երկնային , nâv-ya նաւային , madh-ya միջին , մէջ եւայլն բառերուն ծայրն ։ — Ya զուտ արմատին վրայ գալով ածանցական բայի բուներ ալ կը կազ-մէ , զոր քույրերն այլեւայլ ձեւերով պահած են , իսկ մենք ի տառով , ինչպէս գործել , գործեմ , գործեի (= գործէի) , գոր-ծեցի , գործեա , եւայլն ։

Ra բաւական յաճախ է , ինչպէս aç-ra սուր , ծայր ; ag-ra ագարակ , us-ra ուլ , vad-ra ջուր , migh-ra մէգ , ambh-ra ամպրոպ , Յուն. ὄμβρος , Լատ. imber ։ Այդ մասնիկին հին սլաւո-նական լեզուին մէջ անցեալ ընդունելութիւն կը շինէ , ինչպէս դալը տուեալ , պեկլը՝ եփեալ ։ Լատիներէն gna-ru-s տեղեակ , ծա-նօթ բառին մէջ ra մեր ողին զօրութիւնն ունի , որ ստուգիւ այն մասնիկին հետ համեմատուելու է եթէ tara մասնիկէն մնացորդ-ուած չէ . սակայն տարակոյս չկայ որ ta-ra ra-էն բաղադր-ուած է ։ Վերջինս լծորդ են ստուգիւ մեր անցեալ ընդունե-լութիւն և աներեւոյթ շինող լ տառն , որուն բոլորական ք ձեւն երեւան կուգայ հոլովելու ատեն ․ համեմատէ գործել՝ գործե-լոյ , գործեալ՝ գործելոյ ։ Նոյն մասնիկը բովանդակուած կը գըտ-նենք նաեւ տուրք , տուրց (Հայր. դաշտք) , հուր , հեղ , լուր , գոյր բառերուն վերջն , որոնց արմատն է տու , լու , հաւ ։

Va թէ բայական և թէ դերանուանական արմատներուն վրայ

 

*կու գայ, և թերեւս* u *մակդրին* aով *առած ձեւն է ։ Համեմատէ* sar-va *ողջ, ամբողջ,* çar-va *եղջիւր,* aç-va *ձի,* a-va *այն,* ai-va *մի եւայլն ։ Մեր -ու մակդիրին* vaին *ծագումն է, տես* սին *ներքեւ ։*

Vant *կատարեալի ընդունելութեան ներգործական ձեւն է, որ կրկնուած արմատին վրայ կու գայ ·* vi-vid-vant *գիտող,* vid *գիտել ։ Կը գործածուի նաեւ մեր -եր մակդրին նշանակութեամբ, ինչպէս* arkta-vant *արժանէր ։ Այս վերջին գործածութիւնը միայն գիտէ հայ լեզուն ծագկաւէր, խոստաւէր եւայլն բառերուն ծայրն ։*

*Բնականն մակդիրներէն այդչափը միայն յիշատակելն հերիք համարելով՝ հոս կը դնենք ածականներու բաղդատական ու գերադրական աստիճաններուն կազմութիւնը, որոնք դարձեալ բընականութեան հետ անձուկ յարաբերութիւն ունին ։*

Բաղդատական ու գերադրական :

*Բաղդատականի մակդիրն է* yans, *ինչպէս* nav-yans *նորագոյն,* nava *նոր,* svadyans *քաղցրագոյն,* svâdu *քաղցր ։ Ամէն քոյր լեզուները քիչ շատ այլայլութեամբ պահած են մեզմէ զատ, որ խոպառ կորուսած կ'երեւինք ։ Կայ նաեւ նոյն աստիճանի կազմող* ta-ra, *որ կրկին մարդիկներու բաղադրութիւն կ'երեւայ և վերջինին առանձինն ալ սա նպատակաւ գործածուած է, ինչպէս յայտնի է Հնդ. ավա-րա՝ խոնարհագոյն, Լատ.* sup-eru-s *վերագոյն և այլ կատարեալ բաղդատական ձեւերէն ։ Հնդիկ, Զանդիկ և Յոյն լեզուաց սովորական է* tara, *իսկ միւսներուն մէջ վայրավատին կ'երեւայ ։ Այդ մակդիրը մեր լեզուէն աներեւոյթ եղած է կամ բնաւ մուտք չէ գտած մեր մէջ · իսկ մեր այսր, այդր, անդր մակբայներուն ծայրն եղող ր թերեւս վերագոյն յիշուած* ra *մասնկին մնացորդն ըլլայ ։*

*Գերադրական կը շինէ* ta *(որ ուրիշ շատ պաշտօններ ալ կը վարէ) և* ma *և ասոնց բարդութիւնը* ta-ma *և* ta-ta, *որ յունարէնի սովորական է, ինչպէս* σοφώτατος *իմաստնագոյն ։ Բաղդատականին* yans *մասնկին վրայ կու գայ* ta, *ինչպէս* magh-yans-ta

ամենամեծ, Յուն. μέγιστος. Ինչպէս ta նոյնպէս ma գերադրական զօրութեամբ դասականաց ծայրն յաճախ կ'երեւայ, զոր օրինակ Հնդ. սապտամա, Յուն. ἕβδομο, Լատ septimo եօթներորդ։ Ta-ma կը գտնուի Հնդիկ, Զանդիկ, Լատին ու Գոթական լեզուաց մէջ, որմէ զուրկ է Յունարէնն ալ մեզի պէս։ Հռովմայեցին նոյն մակդիրը հասարակօրէն is (= yans) բաղդատական ձեւին վրայ կը բերէ si-mo (= ta-ma) ձեւով, ինչպէս doct-is-simu-s, doctus ուսեալ ածականէն։

Մենք աս գերադրական մակդիրներուն հետքն իսկ չունինք. քան մասնիկն որ բաղդատականի ու գերադրականի պաշտօն միանգամայն կը վարէ, տարբեր չէ ծանօթ քան բառէն, զոր աս պաշտօնին մէջ սովորական երանգ նշանակութեամբ առնելու չէ, այլ իբրեւ Զանդիկ քանա՝ անուն, որ միակ կը պատշաճի, վասնզի երկու աստիճաններն ալ իմաստի զօրութեան աճումն են արդարեւ։

Ընակերտութեան մաս կը կազմեն նաեւ

Թուականք:

1. Մէկ թիւը բոլոր Հնդեւրոպացիք նոյն բառով չեն նշանակեր, թէեւ շատերուն գործածածին հիմն է i այն դերանուանական արմատն, որուն վրայ կու գան զանազան մակդիրներ։ Այսպէս Հնդ. է-կա (= այ-կա), Զնդ. այ-վա, Լատ. û-nu-s, Հին. oi-no, և Գոթ. ai-na և Հայ. Ե-ղ (Ե = Է = այ), ղ մակդրով, որուն ինչպէս նաեւ Յունարէն μία և ἕν ձեւերուն վրայօք տես Երկրագունդ Ա. տարի, էջ 17, ուր կարծիք յայտնեցինք թէ այն երկու բառերն իրարմէ զատուիլ չեն կրնար։

2. Մայր ձեւն է dva, որ կ'երեւայ թէ նուազ ձեւ մըն ալ ունէր dvi, երկուքն ալ գրեթէ ոչինչ այլայլութեամբ պահուած քոյր լեզուաց մէջ, զորոնք մենք տառական յեղափոխութեամբ մը երկու, երկ կերպարանաց տակ տարօրինակ կերպով յեղաշրջած ենք. տես Երկրագունդ, նոյն տարի, էջ 19։

3. Մայրն է tri, որ իգական ձեւ մըն ալ ունի tisar, ինչ-

պէս Պոփ կը կարծէ, թերեւս արմատին կրկնութեամբ։ Մեր մէջ նախատառ ատամնականն իյնալով և ե յենարանով ե-րե-ք — Յուն. τρεῖς, Լատ. três — ձեւն երեւան ելած է։

4. Աս թուականին katvar ձեւն ուրիշ քոյրերն ալ բաւական աղաւաղած են և մերինէն ստուգիւ աւելի գոնէ Յունարէնն, որ կ'ըսէ τέτταρ, τέσσαρ և եոլական-հոմերական գաւառականին մէջ πίσυρ. Շատ լաւ պահած է Հռովմայեցին quatuor, Գոթական ձեւն է fidvôr, իսկ մենք ունինք չորք և քառ ձեւերով, վերջինէն է նաեւ քառասուն։

5. Մայրն է pankan, Հնդ. և Զնդ. պանճան, Նպ. پنج Յուն. πέντε, Եւոլերէն πέμπε, Լատ. quinque (= pinque), Հոլ. պենփը, Գոթ. fimf և Հայ. հինգ, որ աւելի այլայլած է չխունի մէջ։

6. Մայր ձեւն է թերեւս svaks, որուն վրայէն դիւրաւ մեկնութիւն կը գտնէ թէ մեր վեց և թէ sex, ἕξ եւայլն ձեւերը. միայն Զնդ. խշվաշ նախաձայն խ մը ունի, որ նոյն լեզուին յատուկ յաւելուած մը կ'երեւայ։

7. Saptan մայր ձեւը բաւական անարատ պահուած է ամէն դուստրներուն մէջ. Հնդ. սապտան, Զնդ. հապտան, Յուն. ἑπτά եւայլն, Հայ. եօթն, եօթան (= հեօթան)։

8. Aktan և akta, ὀκτώ, octo, Գոթ. ahtau, իսկ Զնդ. աշտան և Հայ. ութ, որուն միջնատառ ու-ին նկատմամբ տես էջ 76։

9. Navan զոր ճիշդ նոյն ձեւով պահած են Հնդիկք և Զանդիկք, ոչինչ աննման նաեւ Հռովմայեցիք novem, և Գոթացիք սակաւիկ մի ամփոփմամբ niun, որուն հետ նոյն կ'ելլէ մեր ինունք (ուղ. ինն) ձեւն, եթէ տարրական նուն մասն հանենք մէջէն, որուն նախաձայն ի ձայնն նոյնպէս անպէտ է, ինչպէս Յունական ἐννέα ձեւին նախատառն ἐ ձայնը։

10. Daçan որ թերեւս ամփոփումն է dva-çan և այս dva-pankan (2×5=10) նախնական ամբողջ ձեւին։ Հնդիկն ու Զանդիկն ունին դասան, որուն կը կցի Հայերէն տասն (ուղղ. տասն), նախաձայն ատամնականը խստացած ինչպէս Գոթական taihun.

Մետասանէն մինչեւ իննեւտասան այնպէս ճշդիւ կը յօրինէր մայր լեզուն ինչպէս մեր մայր լեզուն կ'ընծայեցնէ, այսինքն միաւորը

նախ և յետոյ տասնաւորը դնելով, երբ dva-daçan երկո-տասան, trayas-daçan երեք-տասան ևայլն :

Քսանէն մինչև իննսուն դարձեալ նոյն կերպով յօրինուած էին մայր լեզուին մէջ՝ թերևս վերջը ta կամ ti մասնիկի մը յաւելուածով, որոնց և ոչ հետքը կը ցուցնեն մեր հայ ձևերը քսան, երեսուն ևայլն : Ըստ այսմ ասոնց ալ մայր ձևերն եղած պիտի ըլլային dva-daçan-ta կամ dvi-daça-ti քսան, traya-daçan-ta երեսուն ևայլն. Համեմատէ εἴχοσι viginti քսան, τριάχοντα triginta երեսուն ևայլն : Մետասանէն մինչև իննեւտասան, և քսանէն մինչև իննսուն թէև նոյն են շինուածքով, բայց անոնք գումարում, իսկ ասոնք բազմապատկութիւն են կամ այնպէս ըմբռնուելու են :

Հարիւրի մայր ձևն էր անշուշտ çanta = daçan-daçanta, այսինքն 10 × 10 = 100. Համեմատէ Յուն. ἑχατόν (մի հարիւր), Լատ. centum, Գոթ. hunda, Հնդ. և Զնդ. սատա ևայլն : Մենք այդ բառը չունինք, իսկ հարիւր զուտ հայերէն ստեղծուած մըն է :

Երկու հարիւրէն մինչև իննհարիւր հարկաւ այնպէս պիտի գործածուէր նախալեզուին մէջ ինչպէս էր մետասանէն մինչև տասնիննէն, ուստի և անշուշտ dva-çanta, traya-çanta, համեմատէ διαχόσια ducentum երկերիւր, τριαχόσια trecentum երեք հարիւր ևայլն :

Հազար թուականին համար դուստրներն հասարակաց բառ մը չունին : Հնդիկներն ու Զանդիկներն որ ուրիշ մերձաւոր ազգականութիւն ունին իրարու՝ սահասրա բառն ունէին, որ Իրանեանց քով յետոյ հազանհրա, Նպ. هزار ձևն առած է, ուստի նաև Հայերէն հազար : Յոյնք χίλιον և Լատինք mille եզրներն ունին : Հիւսիսային Եւրոպիոյ Հնդեւրոպացիք, որչափ կ'երևայ, նախալեզուին բուն բառը պահած են : Հին Սլաւոնք տիսանշտա, իսկ Գոթացիք thusundi կ'ըսեն, որոնք իրարմէ այլատարր չեն և թերևս իրենց մէջ կը բովանդակեն daça-çanti = 10×100 ձևին կրճատ մասերը :

Դասականաց հնագոյն մայրենի ձևերը գտնել անհնարին է, դուստրներն իրենց դասականները նոյն մասնիկներով չեն կազ-

մեր ։ Հոս ալ գերադրականի մասնիկներն անշուշտ կը գործածուէին ta, ma կամ երկուքը միատեղ tama, նոյնպէս va և ya գործածուած են ։

Առաջինն ստուգիւ pra-ma էր, զոր կը գործածեն քոյրերէն շատերն, ինչպէս Հնդ. պրա-թամա, Զնդ. ֆրա-թեմա, Լատ. pri-mu-s, Գոթ. fru-ma-n, միայն Յունարէն πρότος, ta մակդիրով ։ Նաև Հայերէն առաջին՝ քոյրերուն նման նոյն նախդիրով կազմըւած է, առ = pra, զոր տես գերանունական արմատներուն կարգին մէջ ։

Երկրորդին մայր բառն անյայտ է և դուստր ձևերէն գուշակել անկարելի ։ Հնդ. դվիթի՛յա, Զնդ. բիթե, Յուն. δεύ-τερος, Լատ. secundus, Գոթ. an-thara, որոնց վրայէն մայր ձև մը հանել անհնարին է, թէև հաւանական է որ արիական ձևին նման էր ։ Մենք մեր դասականներուն որդ մակդիրն յունական ու գոթական ձևերուն վրայ երևցող tara մասնկէն մեկնեցինք տեղափոխութեամբ. տես Երկրագունդ Ա. տարի, էջ 168-172.

Երրորդն tri-tya ձևով կ՚ըսէր անշուշտ մայրն, որուն կը միտին դուստր լեզուներէն շատերը ։ Հնդ. տրիթի՛յա, Զնդ. թրիթիա, Լատ. ter-tius, Գոթ. thri-dja-n, Հսլ. տրեթիյը, Յուն. միայն τρίτος.

Չորրորդին մայրն է katvar-ta, Հնդ. ճատուրթա, Յուն. τέταρτος, Լատ. quar-tus և այլն ։

Հինգերորդ, մայր pankan-ta կամ թերևս pank-ta նուազած ձևով ։ Համեմատէ Հնդ. (վեդայից մէջ) պանճաթա, Յուն. πέμπτος, Լատ. quin-tus և այլն ։

Վեցերորդ, մայր svaks-ta, Հնդ. շաշթա, Յուն. ἕκ-τος, Լատ. sextus և այլն ։

Եօթներորդ, մայր sapta-ma կամ sapta-ta, Հնդ. սապտամա, Յուն. ἕβδο-μος, Լատ. septi-mus և այլն ։

Ութներորդ, մայր թերևս akta-ma կամ akta-va, Հնդ. աշթամա, Լատ. octa-vus և այլն ։

Իններորդ, մայր nava-ma կամ navan-ta, Հնդ. նավամա, Յուն. ἔνατος և այլն ։

Տասներորդ, մայր daça-ma կամ daçan-ta Հնդ. դասամա, Լատ. deci-mus, Յուն. δέκα-τος եւայլն ։

Տասնէն անդին մինչեւ հազար մայրենի ձեւերն որոշել աւելի դժուար է, վասն զի դ՚ասերը մակդիրներու միօրինակութիւն չեն ցուցներ ։ Արիականները կամ լոկ բաղադրեալ ձեւը կը գործածեն կամ tama մակդիրը կը յաւելուն ։ Համեմատէ Հնդ. էկա՛դասա, մետասաներորդ, Զնդ. դվադասա երկոտասաներորդ ։ Եւրոպականք ta կամ ma մակդիրները կը գործածեն ․ Յուն. ἑνδέκα-τος, իսկ Լատ. undeci-mus մետասաներորդ ։ Կան նաեւ որ իւրաքանչիւր թիւն ալ դասական ձեւով աւանդած են, ինչպէս Գոթ. fimfta-taihunda հինգերորդ տասներորդ = հնգետասաներորդ ։ Համեմատէ դարձեալ Հնդ. վինսատի-տամա, Յուն. εἰκοστός, Լատ. vigesimus քսաներորդ ։ Ինչպէս քոյր լեզուաց ձեւերէն կը տեսնուի, սովորական ta, ma կամ ատոնցմէ բարդուած tama ձեւերով անշուշտ նաեւ նախալեզուն իր դասականները կը յերիւրէր տասնէն վեր թուականներուն մէջ ալ ։ Թուականներուն վրայ աւելի ընդարձակ գրած ենք Ներածութեան մէջ, Ա. Տարի, Յունուար, Փետրուար, եւ Յունիս ։



# ԳԼՈՒԽ ԺԴ·

## Բառ։ — Բառակազմութիւն։

Չէ թէ միայն արմատը, այլ և ոչ բունը տակաւին բառ չէ, խօսքի մաս չի կազմեր ընդհանրապէս, այլ միայն բարդութեանց մէջ կը գործածուէին։ Հնդեւրոպական լեզուին մէջ ամէն իրական բառ, խօսքի ամէն մասը բայ է կամ անուն, որ բունին վերայ եկող իրենց յատուկ բառակերպ տարրներով կը կազմուին հաստատակօրէն. — բուն միջարկութիւնները որ այսպիսի կազմիչ տարրերը չունէին՝ բառ չեն, այլ ձայնաձեւք, ձայնական նշաններ՝ զանազան կրից բացատրիչ։ Ըսածնիս օրինակով մը մեկնենք. bhar բերել արմատէն ելած բունը՝ bhar-a բերող, անուն կ'ըլլայ s հոլովակերտն առնելով bhar-a-s բերօղ, որ եզ. ուղղական հոլովն է. իսկ բայ կ'ըլլայ նոյն բունը՝ mi մակդրով bhar-a-mi բերեմ, սհմ. ներկ. եզ. առաջին դէմք։ Քիչ բայ և անուն կայ, որոնք անմիջապէս արմատին վրայ բերեն բառ չինող մասնիկը, ինչպէս dam-s տուն, râg-s արքայ, ad-mi ուտեմ եւայլն։ Ուրեմն իրաւամբ կրնանք ըսել, որ հոլովակերտ ու դիմորոշ նշաններն Հնդեւրոպական նախալեզուին բառակազմիչ տարրերն են։

Հաւանական է թէ բառ կազմող մասնիկներն արդեամբք դերանուանական արմատներ են և նախալեզուին ծննդեան առաջին ժամանակներն արմատէն կամ բունէն զատուած թերեւս առանձին գոյութիւն ունէին։ Այսպէս bhar-a-s բերօղ ձուլուած է bhar արմատէն, a որոշիչ դերանուանական մասնկէ և s (sa) դերանունէ, որ կենդանւոյն սեռը կը ցուցնէ ուղղական հոլովով։ Նոյնպէս bhar-a-ti բերէ, առաջին երկու կազմիչ մասն-

րէն զատ ունի նաեւ ti, հնդկոյն ta դու, որ երրորդ դէմքի դերանուան մըն է ։

Բայն ու անուն իրարու հետ սերտիւ կապուած են և կը ծառայեն լեզուին տարբերաց նշանակութեան անորոշութիւնն որոշելու, և երկուքին ալ սկզբնաւորութիւնը միանգամայն է, այսինքն մէկը միւսէն առաջնութեան պատիւ չունի․ բայց մենք նախ անուան և յետոյ բային վրայ կը ճառենք ։

Ման. — Հոս պատշաճ կը դատենք քանի մը խօսք կցել նախալեզուին ձեւին վրայ, որուն տառական հանգամանքը միայն պիտի քննենք հոս հարկաւ ։ Հնդեւրոպական նախաւոր լեզուն երեք սեռ միայն կը զանազանէր և այն անուններու վրայ, որ են արական, իգական և չէզոք, մինչդեռ կան լեզուք որ սեռական զանազանութիւն բնաւ չեն ճանչնար և կը գտնուին նաեւ այնպիսիք, որ մեր սեռին նման բազմաթիւ տարբերութիւններ ունին ։ Սեռը նշանակելու համար ձայնական տարր մը չունէր նախալեզուն և, որչափ կ'երեւայ, հնդկոյն սկզբնական վիճակին մէջ՝ սեռի բնաւ զանազանութիւն չէր ըներ և յետոյ տակաւ լոկ չէական ու պատահական միջոցներ գործածած է սեռերը զանազանելու ։ Հաւանական է որ նախալեզուն սկսած է սեռերը տարբերել այս ինչ հոլովակերտ նշանը միայն այն ինչ հոլովին յատկացնելով կամ այս ինչ հոլովը այն ինչ սեռին համար ամենեւին չգործածելով ։ Այսպէս դերանուններուն եզակի ուղղականի մէջ չէզոք սեռի սեփհականած են t ձայնը, իսկ s տառը արական ու իգական սեռերուն ։ Նոյնպէս չէզոք եզ. ուղղականի տեղ՝ հայցականը կամ մերկ բունն սկսաւ գործածուիլ․ այսպէս nava-m նոր՝ որ հայցական է լոկ, չէզոք եզ. ուղղականի ալ յատկացուեցաւ․ դարձեալ madhu մեղր, որ չէզոք է, ուղղականի և հայցականի յատուկ հոլովակերտ նշան չունի ։ Լեզուաց բաժանումէն վերջ նոյն սովորութիւնը շարունակուեցաւ և այսպէս, օրինակի աղագաւ, Հնդիկ լեզուն t եզակի բացառականի տառը առ. ու չէզ. սեռին միայն պահած է ։ Նոյն լեզուն օտար տարր մըն ալ՝ ն կը մուծանէ նոյն նպատակաւ, դանա—ն—աս որ

փանոս (անօսր) բունին չէզ· սեռականն է, իսկ ար. և իգ. ձեւերուն նոյն հոլովը զուրկ է այն ռնգականէն, այսպէս՝ փանօս, ար. և փանչօս, իգ.: Այլեւայլ դուստր լեզուներ զանազան մասնիկներ ալ ստեղծած են սեռը սեռէն զանազանելու համար, զոր օրինակ Լատիներէն victor և victrix յաղթող. Յունարէն αὐλη-τής և αὐλη-τρίς (=αὐλητρίδς) սրնգահար: Իսկ Հայ լեզուն Հնդեւրոպական հին լեզուաց մէջէն միակ լեզուն է որ սեռ ամենեւին չիզանազաներ, միայն —ուհի կամ —րուհի վերջաւորութիւնն ունի իգական սեռի յատուկ, որ եթէ բնիկ է, բաւական նշան մըն ալ է նաեւ՝ թէ Հայ լեզուն սեռի տարբերութիւնն իրօք ունէր երբեմն, որ յետոյ տակաւ ջնջուած է: —

## Ա. Հոլովում :

Երկու գլխաւոր յարաբերութիւն կրնայ անունն ունենալ հոլով և թիւ, որոնց երկուքն ալ յետադաս մասնիկներով կը նշանակուին՝ հոլովակերտ մակդիրն անմիջապէս բունին վրայ գալով և յետոյ յոգնականակերտ տառն: Այսպէս, օրինակի համար, varka գայլ (հայերէն գայլ) բունին վրայ bhi գործիական շինող և յետոյ յոգնակի կազմող s տառը գալով՝ կը յօրինուի յոգնակի գործիականը varka-bhi-s գայլո-վ-ք:

Հնդեւրոպական մայր լեզուն երեք թիւ կը զանազանէր եզակի, յոգնակի և երկակի, բայց այս վերջինն երկրորդէն սերած է յետոյ, որ քանի մը դուստր լեզուաց մէջ հետքն իսկ չէ թողած, որպիսի է մեր հայ լեզուն:

Կան Հնդեւրոպականէն դուրս լեզուներ որ թիւ ամենեւին չեն նշանակեր, կան ալ որ այլ աւելի թուական զանազանութիւններ ունին: Ոչ-Հնդեւրոպական լեզուաց մէջ ոմանք հոլով ամենեւին չունին, բայց կը գտնուին այնպիսիներ ալ, որոնց հոլովներուն թիւը շատ մեծ է. ասոնց մէջ միջին տեղին ունի Հնդեւրոպականն, որուն հոլովներն եօթն էին նախապէս, այսինքն՝ ուղղական, հայցական, ներգոյական, տրական, բացառական, սեռական, գործիական: Ասոնցմէ դուրս է կոչականն որ հոլով չէ և հոլովակերտ

նշան ալ չունի և է լոկ միջարկութիւն, այսինքն՝ բառին բունն առանց առնչութեան գործածուած՝ լոկ ազդացում կամ կամք յայտնելով։

Եօթն հոլովներն ու կոչականն ամենահին դուստր լեզուաց մէջ ալ միայն եզականի մէջ իրարմէ կը տարբերին։ Ներքոյական ու տրական, բացառական ու սեռական մօտ են մէկմէկու, ինչպէս նաև մեր մէջ երբեմն՝ իջանէ և քանէ, յանուոյ և անուոյ, որոնց նախդիրներն հարկաւ յետոյ կցուած են՝ իրարու չփոթած հոլովներն իրարմէ զանազանելու համար։

Յոգնականի հոլովակերտ նշաններն եզականին նշաններէն ըստ մասին տարբեր են։ Հոն ուղղ. և հայց. ամենուին չեն տարբերիր. նոյնպէս տրական ու բացառական (մեր մէջ նաև սեռական) իրարու հետ կը նոյնանան և ասոնց շատ կը նմանի գործիականն ալ (բայց մեր մէջ այսպէս չէ)։

Երկակին միայն երեք հոլովաձեւ ունի. ուղղական և հայցական. տրական, բացառական և գործիական. սեռական և ներքոյական։

Շատ հին ժամանակէն սկսած են նախապէս այլաձեւ հոլովներ յետոյ տակաւ իրարու հետ ձուլուիլ, միաձեւ կազմուիլ։ Այսպէս Յունարէնի բացառականը սեռականէն կլլուած է, գործիականն ալ նաև հնագոյն լեզուին մէջ կորսուելու վրայ է, իսկ տրական ու ներքոյական նոյնացած են, ինչպէս մեր մէջ ալ ընդհանրապէս։

Բառին բունին և հոլովակերտ նշաններուն մէջ դուստր լեզուներէն ոմանք օտար տարրներ մուծած են, որոնց միօրինակութիւն չունենալէն այլ և այլ դուստր լեզուաց մէջ՝ կը հետեւի թէ իրենց ծագումը մայր լեզուէն չեն առած, այլ դատերք իրարմէ զատուելէն ետեւ իւրաքանչիւր այս կամ այն օտար տարրը մտցուցած է։ Այսպիսի եկամուտ տառ մըն է սանսկրիտ լեզուի յոգն. սեռականներուն մէջ երբեմն երեւցող ն, ինչպէս մա՛տր-ն-ա՛մ, զոր Յուն. μητέρ-ων մորց չունի։

Հոլովակերտ նշանք հարկաւ միակերպ էին նախապէս ամէն անուան ծայրն, վասն զի ամէն բառի հոլովական աղերսը մէկ

միայն կրնայ ըլլալ. անոր համար անձանօթ տարբերութիւններն և առանցմէ ծնած այլ և այլ հոլովմունք՝ փոփոխութիւնք են, զոր տակաւ դուստր լեզուներն յառաջ բերած են։

Բուներուն վերջաւորութիւնները կրնան բաղաձայն ու ձայնաւոր ըլլալ։ Բաղաձայնով վերջաւորածը դիւրաւ տեղի տուած է ձայնաւորով վերջ ունեցողներուն հոլովելու եղանակին։ Դարձեալ ինչ ինչ բաղաձայն վերջաւորութիւնք այս ինչ կամ այն հոլովակներէն առջեւ սկսած են յետոյ այլայլիլ։ Բուներուն մէջէն i և u վերջաւորածներն բաղաձայններու հոլովման աւելի նմանութիւն ունին, իսկ a բուներն՝ որ շատ յաճախ կը հանդիպին, մեծ հաստատութիւն կը ցուցնեն ուրիշ բուներու ամենեւին տեղի չտալով։ Իսկ մեր մէջ շատ բուներ՝ տակաւ իրենց վերջին եղող ձայնաւորը կորսնցնելով կարծես բաղաձայնավերջ բուներուն կարգն անցած են, և այս կերպով չենք կրցած մենք ա կամ ա վերջով բառեր պահել. իսկ ի և ու վերջով բառերը՝ կ'երեւայ թէ հնագոյն յա և վա ձեւերէն յառաջ եկած են սըմամբ և յ, և վ կէս ձայնաւորներն իրենց մերձաւոր ի և ու ձայներուն փոխուելով. ուստի և կրնանք ըսել թէ չունինք բառ, որուն վերջին բաց վանկին ձայնաւորը մեր մէջ անկորուստ պահուած ըլլայ երբեք։

Այսչափս իբրեւ ընդհանուր տեղեկութիւն տալէն ետեւ քննենք իւրաքանչիւր հոլովի յատուկ նշանները մասնաւորապէս։

Եզակի ուղղականին մէջ արական և իգական բունք s տառը կ'առնուն, որ միացորդն է անշուշտ sa ցուցական դերանուան։ Իսկ չէզոքներն ուղղականի տեղ հայցականը կը գործածեն, ինչպէս վերագոյն յիշատակեցինք։ Օրինակ vâk-s ձայն, bharant-s բերող, patar-s հայր, nâu-s նաւ, sunu-s որդի, pati-s պետ, akva-s ձի և այլն։ — Դուստր լեզուներուն մեծագոյն մասն եզակի ուղղականի կազմիչ s տառը պահած են գոնէ շատ տեղ, միայն Պարսիկները, Սլաւներն ու մենք մանաւանդ իսպառ անհետ ըրած ենք։

Յոգնակի ուղղականն եզակի ուղղականի s (sa) հոլովակներուն վրայ կը բերէ sa մըն ալ, որով կ'ըլլայ sa-sa և ասկէ կրնանք

հետեւցնել թէ մեր նախահարք յոգնակի թիւը նշանակել ուզած են երկակի ուղղականին նշանը կրկնելով (ուրեմն թիւը բազմացընելու բնական միջոցով մը)։ Բայց այս sasa իր երկրորդ ձայնաւորը շատ կանուխ կորսնցուցած և միացած էր միայն sas, զոր նաեւ արիական լեզուաց մէջ լոկ պահուած կը գտնենք. միւս դատերը սոսկ as մակդիր կը ճանչնան ուղղականի յոգնականակերտ, և նոյն իսկ կան այնպիսիք որ բոլորովին անհետ ըրած են, այսպէս Սլաւոնն, որուն քով օրէնք կան ամէն վերջատառ s ջնջելու։ Համեմատէ vâk-as ձայնք, bharant-as բերողք, patar-as հարք, sunavas որդիք, patay-as պետք, akvâsas ձիերք եւայլն։ Հայ լեզուն, ինչպէս գիտենք, յոգ. ուղղ. հոլովը կը շինէ բառին վերջը ք մը կցելով, որ իբրեւ յոգնակիի նշան գործիականի ծայրն ալ սկսած է յետոյ երեւալ. այսպէս ձայլ-ք, ձայլ-ով-ք։ Արդ մեր կարծիքը սա է որ նոյն յոգնականակերտ տառը ք՝ ծագումն առած է հնագոյն sas մակդրէն՝ երկրորդ շըչողն իյնալու առեն նոյն մասնիկը sau ձեւն առնելէն և յետոյ տակաւ ամփոփուելով su ըլլալէն ետեւ։ Այս վերջին ձեւն է միշտ մեր ք ձայնին մայրն, զոր կը ցուցնեն քոյր, քաղցր, քիրտն, քուն, եւայլն, որոնք su=sv բաղադրութեան ծնունդ են, ինչպէս իրենց լծորդներովը մէկտեղ դրած ենք պատշաճ տեղը։

Նախալեզուն երկակի թուոյն ուղղականը sâs վերջով կ'երեւայ թէ կը կազմէր, որ յոգ. ուղղականի վերջաւորութեան երկարումն է. այս sâs յետոյ նուազելով âs եղած է, ինչպէս դուստր լեզուներուն մէջ պահուած երկակի ուղղականի ձեւերէն կրնայ հաւանականութեամբ հետեւցուիլ։ Դուստր լեզուներէն Հնդիկն ու Զնդիկն, Յոյնն ու Սլաւն այս թիւն յաճախ կը գործածեն. Գոթականն անոնց անձնական դերանուանց մէջ միայն պահած է. իսկ Լատինականն մեզի նման թերեւս, լոկ duô և ambô երկ-ու, երկ-ոքեան, բառերուն վերջը միայն կարող եղած է նոյն թիւը հասցնել։ Ասոնց մէջ երկար ô հնագոյն as-ի նուազումն է. իսկ այս վերջինը Սանսկրիտ լեզուին մէջ երբեմն âu, իսկ հին Սլաւոնականին մէջ երկար û ձեւն առած է և ասոր պէս նոյնաձեւ աւանդուած կ'երեւայ մեզի երկու՝ եր-

կակի ձեւով, զոր մենք ալ Լատիններուն նման նոյն յարմարագոյն Թուականին վրայ միայն կրցեր ենք կորստենէ պահել:

Եզակի հայցականը կը նշանակուէր բաղաձայնավերջ բունին կըցելով am մասնիկը, որուն միայն m ձայնը կ'առնուին ձայնաւորով վերջաւորածները: Սոյն հոլովակերտ մակդիրն ալ (ցուցական) դերանունական արմատի մը մնացորդ է, որչափ կ'երեւայ: Ինչպէս արդէն յիշատակած ենք a վերջով չէզոքներն իրենց հայցական հոլովն ուղղականի տեղ ալ կը գործածեն. իսկ ուրիշ կերպ վերջաւորածներն հայցականի հոլովակերտ նշան բնաւ չունին: Այսպէս man-as միտք և զմիտս, gnâ-man անուն և զանուն, madhu մեղր և զմեղր, բայց yuga-m լուծ և զլուծ: Համեմատէ դարձեալ vâk-am զձայն, bharant-am զբերող, patar-am զհայր, nâv-am զնաւ, sunu-m զորդի, pati-m ըզպետ, akva-m զձի, akâ-m զմայր եւայլն: — Դուստր լեզուներէն կան որ սոյն հոլովակերտ նշանին մայր ձեւն անարատ պահած են ինչպէս Հնդիկն ու Զանդիկն, գրեթէ նաեւ Լատինըն: Յոյն լեզուին մէջ m ni փոխուած և մերթ am վերջաւորութեան միայն a ձայնաւորը պահուած է: Հին Սլաւոնը գրեթէ անհետ ըրած է երբեմն ռնգական ձայնաւորի մէջ հնչեցնելով: Գոթականը պահած է միայն դերանուններուն վրայ՝ սակայն me ni դարձնելով: Այսպէս ահա բոլոր քոյրերն առաւել նուազ յայտնի մնացորդներ աւանդած են այն հոլովակերտ նըշանին, մինչդեռ մենք բնաջինջ ըրած ենք զայն Նոր Պարսիկ լեզուին նման, որ յետոյ را մակդիրը և դուն ուրեք նաեւ ر նախդիրն սկսած է գործածել նոյն նպատակաւ, ինչպէս մենք զ, որ սակայն հայցականի միայն յատուկ չէ:

Յոգնակի հայցական հոլովը նշանակելու էր նախալեզուն բնապէս՝ am վերջաւորութեան վրայ յոգնականակերտ s տառն աւելցնելով, ինչպէս որ ցարդ Հնդիկ ու Գոթական լեզուաց մէջ անվթար պահուած կը գտնենք: Ուրեմն իրաւամբ իբր մայր լեզուին օրինակ կրնանք յառաջ բերել vâk-am-s զորդիս, pati-m-s զպետս եւայլն: Չէզոքներուն նոյն հոլովն a մակդրով կը յօրինուէր, այսպէս manas-a զմիտս, gnâman-a զանուանս և

այլն ։ Աստ ծագումն անյայտ է ։ — Դուստր լեզուներէն ոմանք միայն ունդականը պահած են, ոմանք ալ միայն չչականը, երկուքը միանգամայն աւանդողը լոկ Հնդիկ ու Գոթական լեզուներըն են, թէեւ ասոնք ալ ամէն տեղ չէ ։ Մեր լեզուն միայն շըչողը պահողներէն է, ինչպէս քիւղ», քաղաք», լերին» և այլն յոքնակի հայցականներէն գիտենք, և հաւանական է որ « կըրցած է պահուիլ մեր մէջ՝ Տ կամ Ն ձայնի մը վաղեմի գոյութեան շնորհիւ, ինչպէս որ այլուր նշանակեցինք, էջ 72 ։

Եզակի բացառականի մասնիկն է at և t, առաջինը բաղաձայնով, իսկ երկրորդը ձայնաւորով վերջաւորածներուն յատուկ, և հաւանական է որ աս ալ ta դը դերանուանական արմատէն մնացած ըլլայ ։ Համեմատէ vâk-at ի ձայնէ, bharant-at ի բերողէ, patar–at ի հօրէ, nâv-at ի նաւէ, sunau-t կամ sunv-at յորդւոյ, patai-t կամ paty-at ի պետէ, açvâ-t ի ձիոյ և այլն ։ — Դուստր լեզուներէն միայն Զանդիկն անվթար և ընդհանուր պահած է սոյն հոլովակերտը, Զանդիկը միայն « վերջաւորողներուն վրայ կը գործածէ ; Նոյնպէս Լատինականին սոսկ հին գրութիւններէն աւանդուած է, ինչպէս senatû-d=senatû ի ծերակուտէ, sententiâ-d = sententiâ ի կարծեաց, և այլն ։ Յունականը նոյն մակդիրը կը ցուցնէ միայն ως վերջով մակբայներով, ինչպէս παντῶς ամենայնէ», որ ât ձեւին ծնունդ է՝ Յոյն լեզուի տառափոխական օրինաց համեմատ ։ Վերջապէս Սլաւոնականն ու Գոթականը մեզի նման սոյն առաջնականը տուժած են բացառական հոլովէն, որ մէտ է ընդհանրապէս սեռականին անցնելու ։ Եթէ մեր մէջ մնացորդ մը թողած է, զայն փնտռելու է թերեւս մեր բացառականներուն ծայրն երբեմն երեւցող յ տառին վրայ, ինչպէս ի Հայկայ, ի գետոյ և այլն, դուցէ թէ նաեւ Ե = ոյ՝ (= ոհ = ոյ) կրնայ հնագոյն atի ծագումըն ըլլալ ։

Եզակի սեռականի նշանն է as և s, որ նախընթաց հոլովակերտին ղրից մէջ կը գործածուի, միայն a վերջով բուները նոյն մակդրին վերջը ya դերանուանական արմատն ալ կը յաւելուն և երկուքն ալ ամփոփուելով sya ձեւն երեւան կու գայ ։ Այսպէս

vâk-as *ձայնի*, bharant-as *բերողի*, patar-as *հօր*, nâv-as *նաւու*, sunav-as *և աւելի* sunau-s *որդւոյ*, patay-as *և աւելի* patai-s *պետի*, akva-sya *ձիոյ*, akâ-s *մօր*, *և այլն*: — *Շատ դուստր լեզուներ բաւական որոշ պահած են թէ* as *և թէ* sya *ձեւերը. իսկ մենք իրենց ծայրն յ ունեցող սեռականներուն համար միայն կրնանք ըսել որ նոյն տառը նախնական* y *կամ* s *ձայնի միացորդն է, ինչպէս Հայկայ, գետոյ և այլն: Իսկ մեր ի և ու, նոյնպէս բաղաձայնով վերջաւորած սեռականները հոլովակերս նշան բնաւ կ'երեւայ թէ չունին այլ բառին լոկ բունը կը ներկայացնեն, և սոր ճշմարտութիւնը երեւան կու գայ քոյր լեզուներու հետ համեմատելով: Այսպէս մեր սրունի, (ուղ. սրուն-ք) խրատու (ուղ. խրատ), անուան (ուղ. անուն), աստեղ (ուղ. աստղ) սեռականներուն կը պատասխանեն Զնդ. սրօնի, Լատ.* clûni, *Զնդ. խրատու, Հնդ. նա՛ման, Լատ.* nomin, *Յուն.* ἀστερ *բուները, որոնք յայտնապէս կը ցուցնեն թէ Հայ բառերն իրենց սեռականի հոլովակերս նշաններէն մերկացած են բոլորովին:*

*Յոգնակի սեռականի նշանն էր անշուշտ* sams, *որուն շչողներն ինկնալով և ձայնաւորն ալ երկարելով* âm *մնացած է, զոր դուստր լեզուներէն շատերն ունին, որոնք* sâm *ձեւ մըն ալ ունին դերանուններուն սեպհականուած: Նախնական* sam-s *ձեւն երեք մասերէ կը բաղկանայ,* s *եզ. սեռականէ,* am *յոգնականի ուրիշ հոլովներու մէջ ալ երեւցող նշանէ մը և* s *յոգնականակերտ տառէն, զոր այս թուին ուղղականն ալ, ինչպէս տեսանք, ունէր: Ըստ այսմ նախալեզուն կը յօրինէր* vâk-sâms *սկզբնապէս և յետոյ* vâk-âm *ձայնից,* akvâm *ձիոց, և այլն:* — *Դուստր լեզուներէն ոմանք յիշեալ* sâm *ու* âm *մասնիկներն առանձնած են՝ իւրաքանչիւրին յատուկ տառադարձական օրինաց համեմատ: Սոյն հոլովը կազմող մեր ց տառը կ'երեւայ թէ հնագոյն* s *շչողին միացորդն է, զոր քոյր լեզուները դերանուններուն յոգ. սեռականին մէջ պահած են. համեմատէ Հնդ. ար. տէ-շա՛մ, իգ. տա՛-սա՛մ:*

*Եզակի ներգոյականի հոլովակերտն է* i, *իսկ դերանուններուն մէջ* in, *այնպէս նաեւ մեր մէջ ի նաւի, ի նմին: Ան բառերն որ* i

կամ մ՛ կը վերջաւորին իրենց առ ձայնաւորներն ai և au ձե-ւերու կ՚առնեցնեն ։ Համեմատէ vâk-i ի ձայնի, manas-i ի մը-տի, pâtar-i ի հօր, nâv-i ի նաւի, sanav-i յորդւոյ, patay-i ի պետի, akva-i ի ձի, և այլն ։ — Ներքոյականն իբրեւ ա-ռանձինն հոլով պահուած է հնդիկ, զանդիկ ու սլաւ լեզուներուն մէջ, ինկ միւսներն հատապակօրէն տրականի հետ որ շատ նման ալ է, խառնած են մեզի այէս ։ Առնենք նոյն հոլովին մը-նացորդներն իբրեւ մակբայ կը գործածեն, ինչպէս լատ. hum-i ի գետնի, dom-i ի տան, bell-i ի մարտի. յուն. οἴκο-ι ի տան, χαμα-ί ի գետնի և այլն (*)։

Սլաւիկ օրինակը միայն հնդիկ ու զանդիկ լեզուներուն մէջ ողջամբ պահուած է եզ. ներքոյականէն ai վերջաւորութեամբ, որ կ՚երեւայ թէ abhi մակբային անդունադոյն է կամ i ներքոյա-կանին ամենումը ։ Համեմատէ vâk-ai ձայնի, manas-ai մտի, sûnav-ai որդւոյ, patay-ai պետի, akvâi (=akva-ai) ձիոյ ։ Մեր մէջ առ հոլովը թէ եզակի և թէ յոգնակի թուին մէջ ներ-քոյականի հետ շփոթած ըլլալուն ծագումը դիւրին չէ յայտնա-պէս որոշել ։ Այսպիսիս յայտնի է սանկայն, որ այս հոլովին յ (Հայկայ, գետոյ), թերևս նաև է (բանէ, աղբէ) նշաններին հնագոյն ai մասնիկին մնացորդն են ։ Մեր յ տանն այդ հոլովին

(*) Մեր մէջ, ինչպէս գիտենք, ներքոյականն ի կամ յ նախդիրին ուժի, որով մեծաւ մասամբ տրականէն կը տարբերի ։ Լոկ մակբայաբար գործածուած են անդախդիր բուն ներքոյական հնագոյն հոլովներն՝ հերու, գիշերի, ձմերանի, ամարանի ։ Տրական ոյ ունեցող բառերուն է ներքոյականները, զորս որչափ պահուած են, կը ցուցնեն որ նոյն հոլովը տրականի հետ դեռ բոլորովին չէ փոխուած չէր, և ասկէ զատելու համար յետոյ ծանօթ նախդիրները դրել պարտաւոր եղան ։ Այսպէս ի մէջ, առ. մէջոյ, ի գիշերի, առ. գիշերոյ, առաւօտ, առ. առաւօտոյ ։ Դարձեալ չքնաղ մնացորդ են ամարանի, ձմերանի մակբայական գործածութիւնները, որոնց համեմատութեամբ նորագոյն ամբողջական ներքոյականներն յամարան, ի ձմերան բնաւ չեն տարբերիր իբրև տրական գործածուած անուան, յետոյ բառերէն, որ հոլովակերտ նշանէ զուրկ են բոլորովին ։

ծայրն անձայն մնացած է, ինչպէս յունական ἵππῳ=ἵππωι ձիոյ, ἀνθρώπῳ=ἀνθρώπωι մարդոյ, եւայլն տրականներուն վերջն յոտ նշանախեցն, որ սկսուած է ստորագիր նշանակուիլ, այսպէս նաեւ χώρᾳ գետնոյ, τιμῇ պատուոյ: Իսկ ռոմ եւ բաղաձայնով վերջաւորուած բուներուն տրականն ալ սեռականին նման հոլովակերտէն զուրկ մնացած է բոլորովին, այսպէս ցփնաքու, ֆոֆու, անատան, տարեղ, ռոկեր, հաբ. եւայլն:

Ցոփեանք Նեբեայեանք ամենահին ձեւն՝ որ եզակիին հետ ամեններին նմանութիւն չունի, է sva. արիկայ յոգնականակերտ s տառը տուժած է թերեւս և նախնական ձեւն էր բուն svas, վասն զի հոս կը հայի վեդական Սանսկրիտի susa ներքոյականի մասնիկը: Իսկ sva գուցէ թէ ծագի յարաբերական ու փոխադարձ նշանակութեամբ գործածուող sva ինքն, իւր դերանուանական արմատէն: Աւստի և նախալեզուեան սոյն հոլովին կընան օրինակ ըլլալ vak-sva-s կամ vak-sva ի ձայնս, patar-sva ի հարս, եւայլն: — Լատինք և Գերմանացիք յոգ. ներքոյականը կորսնցուցած են, Ցոյնք տրականի նշանակութեամբ կը գործածեն, բաւական որոշ պահուած է հնդիկ, զանդիկ ու սլաւ լեզուներուն մէջ՝ իւրաքանչիւրին տառական յատուկ օրինաց համեմատ փոքր ինչ այլայլելով: Մենք մայր լեզուին sva ձեւին գիմաց + մը կ՚սպասէինք, սակայն « կը գտնենք, որ եթէ յոգնակի հայցականի ծանօթ « տառը չէ (որմէ, ինչպէս յայտնի է, ի նախդրիւ կը զանազանի՝ զբանս և ի բանս), երեւոյթ մըն է, զոր հոս լոկ իբրեւ բացառութիւն մը կրնանք նշանակել, յարմարագոյն առթի թողլով ապահովագոյն մեկնութիւնը:

Եբեանք Սեռանեանք ու Նեբեայեանք հնագոյն նշանը կ՚երեւի թէ aus էր, որչափ որ հնդիկ, զանդիկ ու սլաւ լեզուներուն համեմատութենէն կրնայ հանուիլ: Այս մակդրին ծագումը մութ է, թերեւս յոգնակի ներքոյականի sva-s մասնկին աղաւաղութիւնն ըլլայ:

Եղանք Քոբճեանք կրկին նշան ունի á և bhi, որոնց առջինը, կրնանք ըսել, միայն արիականաց, իսկ վերջինը լոկ եւրոպականաց յատուկ է: Ապահովութեամբ չի կրնար հաստատուիլ թէ

առաջինը Հնդեւրոպական ժամանակը կը գտնուէր, իսկ վերջինին վրայ ամենեւին տարակոյս չի մնար, վասն զի յոգնակի գործիականը թէ արիական և թէ եւրոպական լեզուաց մէջ առհասարակ նոյն bhi+s մասնիկով կը յօրինուի : Սակայն այդ bhi մասնիկն եւրոպականներն ալ անարատ պահել չեն կրցած, ոմանք մինչեւ կորսնցուցած են : Սլաւականներն mi ձեւը առած են տառափոխութեամբ, իսկ Յոյներն որ φι ձեւով գիտեն, գործիականի իբրեւ ընդհանուր մակդիր չեն գործածեր, միայն Հոմերական լեզուին մէջ ցիրուցան կ'երեւայ, ինչպէս ναῦ-φι-ν նաւաւ և նաւաւք : Դարձեալ այս վերջին լեզուն սոյն մասնկին աւելի ներգոյականի քան թէ գործիականի նշանակութիւն կու տայ : Մենք միայն կրնանք իրաւամբ պարծիլ որ բոլոր հնդեւրոպածին դստերաց մէջ սոյն հոլովին հնագոյն գործածութեամբ մինչեւ նորագոյն ժամանակներս հասուցած ենք զայն : Մեր մէջ բ, վ, ւ տառերով մնացած է հետեւորդ ձայնաւորը կորսնցնելով : Առաջինը սեպհական է բաղաձայնով վերջաւորած բառերուն՝ հար-բ, աստեղ-բ, անուամ-բ (= անուան-բ). իսկ միւս երկուքէն ւ՝ ա և ի բառերուն յատուկ է, ինչպէս՝ ազգա-ւ, բանի-ւ, և վ՝ ո վերջով բառերուն ծայրը կու գայ, գետո-վ, և այլն, վերջապէս ու վերջաւորածները՝ ինչպէս գործիական ծովու, զգեստու, իրենց ւ հոլովակերտը կլլած են : Հետագայ օրինակները կրնանք նախալեզուեան համարիլ, ինչպէս patar-bhi հարբ և patar-bhi-s հարբ-ք, nâu-bhi նաւաւ, և nâu-bhi-s նաւաւ-ք, sunu-bhi որդւով և sunu-bhi-s որդւով-ք և այլն :

Յոգնակի տրական ու բացառական միեւնոյն մակդիրն ունէին bhi-am-s, ինչպէս vâk-bhi-ams ձայնից և ի ձայնից : Դուստր լեզուաց մէջ պահուած ասոր ամենահին ձեւն Հնդկականն է՝ bhyas. Լատինականին սովորականն է bus, Լիթուանականին mus յոգնական ուղղականին փոխելով, հին Սլաւոնականին մը՝ չչողն ալ առնելով : Մենք այս երկու հոլովները նոյն ց գրով կը նշանակենք՝ միայն բացառականն ի կամ յ նախդրիւ տարբերելով տըրականէն՝ բանից և ի բանից, ազգաց և յազգաց և այլն : Եթէ այս ց բնիկ ազգային ծնունդ մը չէ ; քոյր լեզուաց սոյն հոլովին

ծայրն երեւցող տին փոխանորդը լոկ կրնայ ըլլալ։

Երկակի տրական, բացառական ու գործիական հոլովներն bhi-âms մասնիկով կը նշանակուէին անշուշտ, ուստի և նախընթացէն լոկ â իրն երկարութեամբ կը զանազանուէր։ Դուստր լեզուներէն Հնդկականը bhyâm ձեւով գիտէ, որ քոյրերուն մէջ ամենահինն է • Յունականը շրթնականն ալ տուժած և ռնգականն ալ այլայլած ըլլալով միայն ιν վերջաւորութեամբ կը ճանչնայ նոյն հոլովն ինչպէս ἵπποιν, χώραιν եւայլն։

Կոչականն հոլով չէ, այլ լոկ բառին բունն է՝ կոչելով, միջարկութեան պէս գործածուած, ուստի և հոլովակերտ կամ բառակերտ նշաններէն զուրկ էր անշուշտ նախալեզուին մէջ, թէեւ յետոյ դուստր լեզուներն երբեմն յատուկ ձեւ մըն ալ տուած ըլլան անոր գոնէ եզակիի մէջ՝ բունին ձայնաւորն աճեցնելով, երկարելով կամ սղելով։ Յոգնակին կոչականի յատուկ ձեւ չունի, այլ անոր տեղ ուղղականը կը գործածուի, միայն շեշտն առաջին վանկին ընկրկելով՝ գէթ Հնդիկ լեզուին մէջ։ Մենք թէ եզակի և թէ յոգնակի ուղղականներն իբրեւ կոչական ալ կը գործածենք, ինչպէս Ո՛վ Տէր, Ո՛վ Տեարք, Հնդկականին նման շեշտն առաջին վանկին բերելով։ Իսկ է վերջաւորութիւնն, ինչպէս Պետրէ = ո՛վ Պետրոս, ոչ Հայ այլ Յոյն ձեւ է, զոր օրինակ Յունարէն ἄνθρωπε ո՛վ մարդ, եւայլն։

Ծանօթ. — Դերանունական հոլովումն ունի ինչ ինչ յատուկ վերջաւորութիւններ, որոնք հոս համառօտիւ նշանակուելու արժանի են։ Գիտնալու է նախ որ դերանուններն երկու կը բաժնուին սեռական (սեռ զանազանող) և անսեռ (սեռ չզանազանող)• վերջիններուն կը վերաբերին, Ես, Դու, Ինքն, Իւր անձնականները։ Իսկ հոլովներուն վրայ պէտք ենք դիտել, որ չէզոք ուղ. և հայց. հոլովներուն նշանն է t, ինչպէս ta-t դա, զդա, ka-t որ, զոր, եւայլն։ Իսկ արական յոգ. ուղղականը կը յօրինուի i-ով, ինչպէս ta-i դոքա, այդոքիկ, ya-i որք, եւայլն։ Ար. ու չէզ. եզ. սեռ. բաց. ու ներգ. հոլովներն յօդուածոյ sma կամ sm (= sa-ma) տարրն ունին, որ անոնց բունը կը կազմէ, ինչ-

պէս ta-sma-t ի դմանէ ; ta-smai դմա ; ta-sm-in ի դմա , ի դմին ։ Ինչպէս Հայերէն օրինակներէն կ'երեւայ ՝ մենք նոյն մասերը պահած ենք դ և ն ձեւերով ; որոնց նախնական անմի-ջական շշոյին անհետ եղած է ։ — Եզ. սեռականը նոյն է ար. և չէզ. սեռին մէջ ; ինչպէս ka-sya որոյ , ta-sya դորա ; միայն ի-գականը կ'ըլլայ ka-syas, ta-syas. Իսկ յոգ. սեռականն հօն ամ-բողջական ձեւով կ'երեւայ sâm, ինչպէս ta-sâm ար. և չէզ. tâ-sâm իգ. դոցա ։ — Վերջապէս ար. և չէզ. եզ. ներգոյականի նշանն է in, ինչպէս ta-sm-in ի դմա ; ի դմին ։ Նոյն թուէն իգ. ներգոյականին յատուկ ձեւն է syam, ինչպէս kâ-syam յորում ։ Մնացած ամէն հոլովներն անուններէն բնաւ չեն տարբերիր . իսկ այս կամ այն դուստր լեզուի մէջ երեւցած տարբերութիւն-ները չեն կրնար սկզբնական համարուիլ ։

## Բ. Խոնարհում :

Ինչպէս անուան բունն իրական անուն, բառ կ'ըլլայ հոլո-վակերտ նշաններով, այնպէս բայարմատը դիմանիշ մասնիկնե-րով ։ Որչափ կ'երեւայ, սոյն բայակերտ նշաններն հնդեւրոպա-մայր նախալեզուին մէջ երբեք չեն պակսած, ուստի և ոչ-հնդ-եւրոպական լեզուաց նման ձեւեր, ինչպէս Արաբերէն قتل [illegible], կամ Թուրքերէն [illegible], որոնք դէմք ցուցնող նշան բնաւ չունին, մեր մայր լեզուին մէջ թերեւս ամենեւին տեղի չեն ունեցեր ։ Այս դիմանշաններն որ երեք դէմքի ալ զատ զատ են, դերանուանական արմատք են, որ մերթ ամբողջ և մերթ կրճատ ձեւերով երեւան կու գան ։ Ինչպէս երեք դէմք, նոյն-պէս երեք թիւ կը զանազանէ բայն, որ են եզակի, յոգնակի և եր-կակի՝ ճշդիւ անուանց պէս ։ Դիմանշաններուն ամբողջական ձե-ւերը կու գան սահմանական և ստորադասական կատարեալ ներ-կայ և ապառնի ժամանակներուն վրայ . բայց կատարեալիններն կրկնութեան պատճառաւ՝ բաւական խանգարած են ։ Կրճատ

ձեւերն յատուկ են անցեալ ժամանակի և ըղձական եղանակի ընդհանրապէս։ Հրամայականն յատուկ դիմանիշ ունի։

Չորս եղանակ ալ ունի բայն, որ են սահմանական, հրամայական, և ստորադասական ու ըղձական։ Ասոնց մէջէն առջինն իրեն յատուկ նշան չունի, նոյնպէս երկրորդն, որ փոքր ինչ տարբեր դիմանշաններ ունի։ Հրամայականն՝ որ թերեւս երկրորդ դէմք միայն ունէր նախապէս, բայական միջարկութիւն մը կրնայ նըկատուիլ, և աս եղանակին դիմանշանն իբրեւ կոչական ըմբռնուելու է՝ հակադրութեամբ միւս եղանակներու դիմանշաններուն, որոնք ուղղական զօրութիւն ունին իբրեւ բայատէր ( տէր բայի ) կամ գործող։ Հրամայականի հետ չփոթելու չէ ստորադասականի և ըղձականի ձեւերն, որ երբեմն անոր պաշտօնը կը վարեն։ Այս վերջին երկուքին յատկանիշներն են՝ առաջինոյն a, իսկ երկրորդին yâ կամ i, որ արմատին և դիմանշաններուն մէջ կը մտնեն վայելչապէս, ինչպէս իրենց պաշտօնն ալ կը պահանջէ։

Ժամանակի բունն — որ զանազան կերպով կը կազմուի, ինչպէս յետոյ պիտի նշանակենք — ան համեմատութիւնն ունի խոնարհող բային հետ, զոր ունի անուան բունը հոլովող բառին հետ։ Հնդեւրոպական մայր լեզուն կը ճանչնայ կատարեալ մը, որ պարզական արմատին կրկնութեամբ կը կազմուի հասարակօրէն առանց ուրիշ յաւելատարր ունենալու։ Դարձեալ անորոշ անցեալ մը (aoriste), որ կրճատ դիմանշան կ'առնու։ Վերջապէս զանազան կազմութիւն ունեցող ներկայ մը և ապէ (անցեալը նշանակող) նախդրով շինուած անկատար մը։ — Ասոնք են պարզ ժամանակներն. բաղադրեալ են ապառնին և ուրիշ անորոշ անցեալ մըն ալ, որ as եմ օժանդակով կը կազմուին։

Ընդհանրէն մասնաւորին իջնելով կը ճառենք նախ դիմանըշաններուն վրայ, որ ամէն ժամանակի ու եղանակի հասարակ և հարկաւոր են. երկրորդ՝ եղանակներուն յատկանիշները կը քննենք, որ զանազան ժամանակի մէջ կրնան հանդիպիլ. և երրորդ՝ վերջապէս ժամանակի բուներուն վրայ կը կնքենք մեր խօսքը։

## Ա. Դիմանշանք — Ներգործականի։

Եզակի առաջին դէմքի նշանն էր հարկաւ ma, թէև դուստր լեզուները սոյն նախնական ձևով չեն աւանդած, այլ կամ նը-ւազեալ ու նոյն իսկ կորուսեալ ձայնաւորով՝ mi, m, և կամ լոկ a ձայնաւորը պահելով։ Այսպէս bharâ-mi բերեմ, a-bhara-m բերէի, բերի, ba-bhâr-a, բերի, բերեալ է իմ։ Դուստր լե-զուներէն քիչերը պահած են նոյն իսկ mi դիմանշանը, շատերը կորսնցուցած են՝ ինչպէս յոյնք և լատինք հասարակօրէն, մենք միայն մ կրճատ դիմանիշն ունինք։ — Ցոյց. առաջին դէմքին հնագոյն ամբողջական ձևն է masi, իսկ կրճատը mas, ուստի և as-masi եմք, as-yâ-mas էինք։ Դուստր լեզուներէն ամ-բողջական ձևը պահող միայն Հնդիկն ու Զանդիկն են. միւ-սներն առաւել նուազ խանգարած են նոյն դիմանիշը, զոր մենք մք ձևով ունինք։ Առիկայ սկզբնագոյն մա-փա ձևի մը կրնայ սերունդ ըլլալ. մա (ես) և փա (դու) = մք։ — Երկակի առա-ջին դէմքին հնագոյն դիմանիշ vasi մնացած է, որ թերևս masi սկզբնականին աղաւաղումն է։ Օրեմն bharâ-vasi մք երկոքեան բերեմք։ Դուստր լեզուք առաւել նուազ այլայլած են, Զանդիկն ամենահին ձևն աւանդած է ուա-հի՝ մք երկոքին կամիմք։

Եզակի երկրորդ դէմքի նշան միայն tva դու կրնար ըլլալ, բայց յետոյ փոխուելով և նուազելով իբրև սովորական ձև հաստատուած է si, որուն կրճատն է լոկ s. կատարեալի դիմա-նիշն է ta, որ միայն tva հնագոյնէն կրնայ ծագում առած ըմ-բռնուիլ։ Կայ dhi դիմանիշն ալ հրամայականի յատուկ, որուն ծագումը մութ է։ Նախալեզուեան օրինակ թող ըլլան as-si ես, bhara-si բերես, a-bhara-s բերեր, bharai-s բերիցես։ Համեմատէ նաև յուն. հրամայականի օրինակ κλῦ-θι լուր, δίδω-θι տուր, ἴσ-θι եր, լեր, γνῶ-θι ծանիր։ Մենք եզ. երկրորդ դէմքի կրկին յատկանիշ ունինք ս և ր, ինչպէս ես, իցես, եղեր, լի-նէիր, լեր և այլն։ Առնցմէ ս si-է և ր dhi-է սերած կ'երևայ։ — Ցոյն. երկր. դէմքի նշանն էր tasi և կրճատ tas, որոնք

ta-ta (=tva-tva) նախնականին համառօտութիւնն են անշուշտ և այսպէս կրկնուելով՝ tasi յոգնակի նշանակութիւնն առած է, վասն զի դու և դու = դուք։ Համեմատէ as-tasi էք, bhara-tasi բերէք։ Մենք յոգ. երկ. դէմքի նշան միշտ ք ունինք, որուն մայր եղած պիտի ըլլայ tu կամ su ձեւ մը, զոր դիւրաւ կրնանք գտնել վերագոյն յիշատակեալ ձեւերուն մէջ։ Ինչպէս գիտենք, ք=, քան եայլն բառերուն մէջ ալ ք նոյն կամ նման ծագումն ունի։ — Երկակի յոգն. երկրորդ դէմքն ալ անշուշտ tasi ձեւն ունէր, դուստր ձեւերն են tas, ta, բայց նաև tam։

Եզակի երրորդ դէմքի նշանն էր դերանուանական ta (դա) արմատն. որ նուազելով ti ձեւն առած է իբրեւ ամբողջական, որ նաև լոկ t-ի ալ իջած է. այսպէս aṣ-ti է, vagha-ti կոչէ, vaghai-t կոչէր։ Այս դէմքին նշանը մենք միայն յ տառով պահած ենք թերեւս, ինչպէս խաղայ, երթայ, որ գուցէ թէ է վերջաւորութեան մէջ ալ բովանդակուած է, ուստի և գործէ կրնայ հնագոյն գործէայ ձեւի մը ծագում ըլլալ. իսկ յ ti յանգէն կ'երեւայ թէ մնացորդն է։ Ունինք ե տառն ալ այս դէմքի դիմանիշ՝ էր, նէրէր. որ դարձեալ սկզբնական պատմականէ մը կրնայ մեկնուիլ։ — Յոգ. երրորդ դէմքի նշանն է nti եթէ ձայնաւորով վերջաւորի արմատն, և կ'ըլլայ anti եթէ բաղաձայնով յանգի, ինչպէս դուստրները կը վկայեն, այսպէս as-anti են, bhara-nti բերեն, և կրճատ ձեւով bharai-nt բերէին, եւ այլն։ Հոս կը գտնենք երկու ցուցական դերանուանական արմատներու միաւորումն an և ta, որոնք այս կերպով յոգ. երրորդ դէմքը կազմած են, իբր նա և նա = նոքա։ Մենք այս վերջինին միայն ռնգականը պահած ենք՝ բերեն, բերէին, բերցեն եայլն։ — Երկակի երկրորդ ու երրորդ դէմքն դուստր լեզուաց մէջ իրարու հետ շփոթած են և եթէ իրօք մէկ չէին նախապէս, մեծ տարբերութիւն մըն ալ չունէին անշուշտ յոգ. երրորդ դէմքէն։

## Բ. Դիմանշանք — Միջակք

Գաղղիացւոց և ուրիշ քանի մը Նոր լատին ժողովրդոց կամ դերանուանական բառերուն նման նաև Նախնի Հնդեւրոպացիք, որչափ կ'երեւայ, իրենց միջոց (medium) բայերուն ձեւերը կը յօրինէին՝ անձնական դերանունը կրկնելով, որոնց մէկն ուղղական էր, իսկ միւսը տրական կամ հայցական խնդիր, ինչպէս մենք սովոր ենք կոչել: Ըստ այսմ եզակի առաջին դէմքի ամբողջական ձեւն էր ma-mi և կրճատը ma-m (ես զիս, ես ինձ), որոնք իրենց ունգակիցները կորսնցնելով՝ նախալեզուին ժամանակն իսկ mai և ma ձեւերն յառաջ եկած էին: Այսպէս bharâ-ma(m)i բերիմ, a-bhara-(m)am բերէի, եայլն: Եզակի առաջին դէմքի վերջաւորութիւնը մեր մէջ է ույ զոնէ կատարեալ ժամանակին մէջ, վասն զի ներգործականին հետ նոյնացած են մեր ուրիշ ժամանակներուն կրաւորական ձեւերն որ միանգամայն միջոց են, ինչպէս Բոպ կ'ըսէ, քաժանեցեալ ընդունելով կրաւորակերպ խոնարհմունք, որոնց նշանակութիւնը կրաւորական չէ: Արդ մեր կարծիքը սա է որ սկզբնական mami ձեւին մեր մէջ միայն երկու ձայնաւորները մնացած են՝ ույ:

Եզակի երկրորդ դէմքի սկզբնական ամբողջ ձեւն էր sasi որ առաջնոյն պէս միջանկեալ շչողն անհետացնելով՝ միայն sai մնացած է և կրճատ ձեւն ալ sa. ուստի և bhara-sa(s)i բերես, a-bhara-sa(s) բերէիր, եայլն: Հնդիկ լեզուն միջակ հրամայականին այս դէմքը sva մասնկով կը շինէ, ինչպէս bhara-sva բերջիր: — Մեր մէջ սոյն դէմքի դիմանիշ «ս»էն զատ որ ներգործականին հետ նոյն է (բերես և բերիս), ունինք նաև ր որ մանաւանդ կրաւորական կատարեալի և հրամայականի յատուկ է՝ անկայ, անկիր. արդ հոս ալ ր հնագոյն sի սերունդ կ'երեւայ:

Եզակի երրորդ դէմքին ալ նախնական ամբողջ ձեւն էր tati, որ նմանապէս միջաձայն տառաձնականը թօթելով մնացած է tai և կրճատ ta. այսպէս bhara-ta(t)i բերի, abhara-ta(t) բերէր: — Մենք այս դէմքին դիմաց իբրեւ կրաւորականի

յատուկ ս — կրնանք հանել, ինչպէս բերս, որուն ս տառն (t կամ s) բաղաձայնի անկում մը կրնայ գուշակել։

Յոգնակի առաջին դէմքին ամենահին ձեւն է madhai ամբողջական և կրճատ madha, այնպէս bharâ-madhai բերիմք, a-bhara-madha բերէաք։ — Յոգնակի երկրորդ դէմքին մայր ձեւն էր թերեւս sdhvai, որուն կը պատասխանէ հնդկերէն dhvè և յունարէն σθε։ — Յոգն. երրորդ դէմքին պահուած ամենահին նշանն է antai և ntai, և կրճատ ձեւն ալ anta, nta։ Աս երեքին ալ մէկանց ծագումը կրնայ մեկնուիլ՝ զանոնք հնագոյն ամբողջական կրկնութեանց համառօտութիւնը կամ թեթեւացումն համարելով։ Մենք նշանակութեամբ ասոնց պատկանող յիշուելու արժանի ձեւն ունինք՝ արուտ կամ նրուտ (եղարուտ, ագերուտ), որոնց մեկնութեան չենք կրնար այժմ ձեռնարկել։

Երկակի առաջին (պահուած ամենահին ձեւն է հնդ. vahê=vadhai և vahi=vadhi) ինչպէս նաև երկրորդ և երրորդ դէմքն, որոնց մայրը գտնելն անկարելի է դուստրներուն անմիաբանութեան պատճառաւ, անշուշտ դարձեալ ներգործականին յատուկ դիմանիշները կրկնելով շինուած էին։

Սլաւք և Լատինք sva ինքն դերանունական արմատով իրենց յատուկ միջակ կամ փոխադարձ բայի ձեւ մը ստեղծած են յետոյ, սկզբնականէն սա տարբերութեամբ որ ներգործականի ամէն դէմքին ծայրը միեւնոյն s = se կը կցեն։ Այսպէս օրինակի համար Լատիներէն amare (= ama-se սիրեա զանձն) սիրուէ, amor (= amo-se սիրեմ զանձն) կը սիրուիմ եայլն։ Ասոնց նշանակութիւնն ալ նախապէս փոխադարձ էր, որ յետոյ կրաւորականին անցած է։

## Գ. Եղանակի նշանք :

Եղանակի տարրերն, այսինքն ստորադասականի և ըղձականի յարաբերութեանց տառական բացատրութիւնները բայաբունին և դիմանիշներուն մէջ կը մտնէ, ինչպէս արդէն նշանակեցինք։ Դարձեալ յիշատակեցինք որ սահմանականն յատուկ նշանէ

ալ եկնալով, որուն ձայնաւորն երկայն առաջինէն մէջ կ՚երկարի. Այսպէս svid-yâ-mi քրտնիմ, բայց svid-ya-si քրտնիս, եւայլն: Իններորդ՝ արմատին վրայ ska կը յաւելու և առաջ ձայնաւորը նախընթացին պէս կ՚երկարի ga-skâ-mi գնամ, ga-ska-si գը-նաս, եւայլն: — Աս ամէն ներկայարմատները թէ միւս քոյր լեզու-ներուն և թէ մերինին մէջ բաւական բացայայտ կը գտնուին:

Ներկայարմատէն a նախդրով և կցմամբ դիմորոշականներուն կը կազմուի Անկատարը, զոր հնդիկ, զանդիկ և յոյն լեզուները պահած են: Այսպէս a-vagh-a-m վազէի, a-vagh-a-s վա-զէիր, և այլն: Անկատարը մեր մէջ ալ պահուած է՝ խաղայի, խաղայիր և այլն, բայց առանց նախդրի, որ արդէն այնչափ էական ալ չէր նախապէս և զոր զանդիկ լեզուն յաճախ զանց կ՚ընէ, ինչպէս՝ Բոփփ բերէ:

Ապառնի: — Էական as [illegible] բայէն ya. մասնիկով աճած ձեւն as-ya, ապառնի ժամանակը չինելու կը գործածուէր՝ բայց նախաձայն a լինալով: Այսպէս dâ-syâ-mi տաց, dâ-sya-si տացես, եւայլն: Մէկալ քոյր լեզուներուն նման, որոնցմէ ո-մանք կատարեալ, իսկ ոմանք անկատար կերպով պահած են այն ժամանակին յատկանիշն, նաև հայերէնն աւանդած է մեզի sya տարրն, որչափ կ՚երեւայ, ցի փոխելով, ինչպէս տաց, եղից, եղէց, անկայց եւայլն:

Անորոշ Անցեալ: — Երկու բուն ունի պարզ ու բաղադրեալ: Պարզն a մակդիրն ունի բնակերտ, իսկ բաղադրեալն էական as արմատին վրայ կը բերէ նոյն a ձայնը: Պարզը և թէ բաղա-դրեալն a նախդիր մըն ալ ունին, իբրեւ անցեալ ժամանակի նը-շան, որ անշուշտ դերանունական արմատ է: Այսպէս ունինք a-dhâ-m եդի, a-dhâ-s եդիր, a-dhik-sa-m ցուցի, a-dhik-sa-s ցուցեր եւայլն: Բաղադրեալին օրինակէն կը տեսնուի որ as եմ արմատն իր ձայնաւորը կորուսած է: Աս պարզ ու բաղա-դրեալ անորոշ անցեալներու ձեւերը մեր մէջ ալ կ՚երեւայ թէ պահուած են. մենք ալ ունինք կրկին ձեւ, է և ցի մասնիկներ-ով՝ հաց-է և բա-ցի: — Կան ուրիշ ժամանակայնութիւններ ալ, զոր դուստր լեզուներն յետոյ ստեղծած են, ուստի և առանք նա-

խալէզուին չեն պատկանիր, որով հարկաւ զանոնք լռութեամբ կ՚անցնինք ։

Նախամայր լեզուին արմատական գլխաւոր տարրները գըտնելէն և յետոյ բնակերտութեան և բառակազմութեան հանգամանքը գծագրելէն ետեւ, ժամանակն է այն գաղափարական մթերքն հաւաքելու, որոնք հնդեւրոպազարմ ժողովրդեան զարգացման նախաւոր վիճակը կը բովանդակեն ։



# ԳԼՈՒԽ ԺԴ.



## Հնդեւրոպական նախավիճակ ։

Մեր հնդեւրոպացւոց նախազարմին կարեւոր բառերուն հաւաքածոյքէն սա ստուերագիր պատկերը կ՚ընծայանայ մեր աչաց ։

Բովանդակ կրթութեան հիմն ու խարիսխը նաեւ հնդեւրոպատոհմ նախացեղին մէջ՝ գերդաստանի կազմութիւնը կամ ամուսնութիւնն էր ։ Այրը vira (ցանկացող, vi ցանկալ) տուն կը տանէր զկին gana և gani (ծնող, ծնանող) ։ Հարսը տուն բերուելէն ետեւ փեսան ազնուագոյն յորջորջանք մը կ՚առնուր․ կինն իր այրը կը սկսէր pati պետ, տէր կոչել, և էրիկն ալ կընիկը patnia տիրուհի, տիկին անուանել ։ Այս կոչմամբ էրկան

ու կնկան հաւասար դիրքն ու պատիւը կը հաստատուէր • — բազմակնութիւնն ու կնոջ ստրկութիւնը կ'երեւայ թէ օտար էր Հնդեւրոպական նախատոհմէն • այն հնագոյն ժամանակներն իսկ կինն իբրեւ տանտիկին և այրն իբրեւ տանուտէր իրարու հանգիտապատիւ կը նկատուէին ։ Այս նկատումն ու ըմբռնումն այնչափ խորունկ թափանցած էր զգացմանց մէջ, որ քանի մը դուստր լեզուաց մէջ պետ բառին տէր նշանակութիւնը մոռցուած է և լոկ ամուսին կը նշանակէ ։ Այսպէս Յունարէն πόσις, Լիթուերէն patis ևայլն ։ Անհաւանական չէ որ նաեւ Հայերէն փեսայ ծանօթ պետ բառին հետ նոյն ըլլայ, թէեւ անստոյգ է «.հնագոյն փ է սերած, բայց հաւանական է միշտ, վասնզի սոյն տարափոխութիւնն ընդհանրապէս շատ հին է որ մինչեւ նախամայր լեզուին մէջ սկսած էր արդէն երեւալ ։ Թէեւ առն և կնոջ նկարագրուած վսեմ յարաբերութիւնն այլակերպ ըլլալ չէր կըրնար նախապէս, սակայն առով հաստատել չենք ուզեր՝ որ միշտ այն այնպէս մնացած ըլլայ ։

Նոյնչափ բարձր բարոյականութիւն կը շնչէ նաեւ հայր pa-tar (pa պահել) ու մայր mâ-tar (mâ ձեւել, ածել) անուններէն ։ Հայրը պահապանն ու պաշտպանն էր տղուն, իսկ մայրն խնամակալ, ածիչ ։ Հօր պաշտպանութենէն ու մօր խնամակալութենէն կախուած է իրաւ մանկան աճումն ու զարգացումը ։ Մեր առաջին նախահարք իրենց որդին su-nu, իսկ դուստրը dhugh-tar կը յորջորջէին . առաջինը կը նշանակէ ծնող, իսկ երկրորդը կթող, կթոյեալ ։ Առաջին տեսութեամբ այնպէս կ'երեւայ իբր թէ աս անունները տղոց սեռը միայն ցուցնեն, մանչ ու աղջիկ զաւակ նշանակեն • բայց, կարծենք, այդ անուններն աւելի բան մըն ալ կը բովանդակեն ։ Հայրն ու մայրն իրենց ուստեր և դստեր վրայ ապագայ հայրն ու տանուտէրը, մայրն ու տանտիկինը կը տեսնեն և նոյն բառերն այն մեծարանքն ու ականածութիւնը կը ցուցնեն, որով ծնողք իրենց զաւկըներուն հետ կը վարուէին ։ Մանաւանդ թէ նոյն անուանակոչութեան մէջ բարի գուշակութիւն մըն ալ կրնայ ծածկուիլ, որ ուստր ու դուստր՝ հօր ու մօր աստիճանին պիտի հասնին երբեմն և տա-

ուզէր հաւատեցնել՝ թէ Յոյնք երբեմն դուստր իբրեւ կաղարճ կը գործածէին, փոխանակ բնական կերպով մեկնելու, թէ երկուքն ալ միեւնոյն արմատէն ելլելով՝ նոյն մակդրով հաւասար յարմարութիւն ունէին՝ փանելու, կթելու կաթով, անօթ մը ցուցընելու, ինչպէս արդեամբ և իրաւամբ են դուստր ու կաղարճը։ Այսպէս Սանսկրիտերէն bhar-tar և Նախալեզուեան bhrâ-tar երկուքն ալ խնամակալ, մատուցիչ կը նշանակեն ընդհանրապէս և մասնաւորապէս Հնդիկ բառն՝ խնամակալ կնոջ = այր, իսկ Նախալեզուին բառն՝ խնամակալ քրոջ = եղբայր։ Մարդկութեան օրօրոցին վրայ ամէն հնարաւոր աղանդութիւն կուտելու համար՝ այսպիսի փորձերով սուտգիւ Տարուինականքն կապկաց և մարդկան՝ չի դադրիր միշտ ցնորք մը երազելու, որով կենդանաբանն հաճի թերեւս զբօսնուլ, բայց այն բանդագուշանքն անմիջապէս կը ցնդի կը չքանայ, երբ սկսինք քննել հնդեւրոպական մարդկութեան հնութիւնն, ուր ողջ միտք և առողջ բարք կը տիրեն։ Դարձեալ ուրիշ եղանակաւ ալ կրնայ ցուցուիլ որ եղբօր ու քրոջ ամուսնութիւնն հիմակուան պէս խորշելի էր մեր նախատոհմէն։ Ինչպէս ծանօթ է, բնութիւնն իսկ թօթափած է իւր անիծից շանթերն ազգապղծութեան դէմ. փորձէն գիտենք որ՝ չորս զգայարանք միայն ունեցող տղոց կէսէն աւելին՝ մերձաւոր ազգականաց մէջ կատարուած ամուսնութենէն սերած է։ Եթէ քուրական քարուականք սովորական վիճակն ըլլար մեր առաջին նախահարց, այդ բազմախուռն ազգապղծութիւններէն շատոնց անձեռ եղած տկարամիտ խեղ ու հաշմ սերունդ մը միայն կըրնար յառաջ գալ և ոչ թէ հանճարեղ, ողջ և առողջ ժողովրդոց պնդակազմ շարք մը, որոնք երկայնաձիգ ժամանակաւ մարդկային ազգին ուղղիչն ու վարիչն եղան։ Սակայն շատ դեգերեցինք այս ընդունայն և անմաքուր երեւակայութեանց ցնորքին վրայ, դառնանք մեր հարց գեղաբարոյ յարդարեալ գերդաստանին մաքուր իրականութեան։

Եղբայր bhrâtar ստուգաբանօրէն պայծառ էր, բայց համընթաց svasar քոյր մթին է մեկնութեամբ։ Սաչափին ապահով է սակայն որ նոյն բառին նախաձեւն svasar էր և չէ թէ svas-

tar, որ միայն գերմանական ու սլաւոնական ձեւ է։ Անտարակուսելի է դարձեալ՝ թէ բառին առաջին վանկը sva՝ իւր, յատուկ դերանունը կը բովանդակէ, որ արդէն առանձինն ալ կը գործածուէր ազգականութեան այլեւայլ յարաբերութիւնները նշանակելու. այսպէս հին Սլաւերէն «սվո-յը» ազգական, Զանդկերէն «խվա-էթու» խնամի, Հնդկերէն «սվա-ջանա» ազգական եւայլն։ Բայց յայտնի չէ թէ բարդութեան երկրորդ մասը sar արդեօք մակդիր մըն է թէ ուրիշ բառ մը։ Ո՛րն որ ըլլայ՝ sva-sar անձուկ կապ մը՝, մեծ մտերմութիւն մը կը ցուցնէ եղբօր ու քրոջ մէջ, զոր նա իբր իր յատուկ անձը կարծես կը նկատէր։

Որդւոյն ամուսնութեամբ ազգականութեան նոր յարաբերութիւնք կը ծագէին, զորոնք նախատոհմն իսկ առանձինն անուններով բացատրած էր։ Որդւոյն կինը snusâ Նու կը կոչուէր, զոր անշուշտ sunu-sâ իբր «որդւոյն» պէտք է մեկնել։ Արդ սոյն անունը կը ցուցնէ որ ծնողք որդւոյն ամուսինն իբրեւ իրենց զաւակը կը մեծարէին ու կը սիրէին, բայց նաեւ իրմէ որդիական հպատակութիւն կը պահանջէին։ Թէ Հնդեւրոպական նախացեղին տիրող բարքն ի՛նչ այսպիսի էր, կը հետեւի այն յորջորջանքէն զոր հարսը փեսային հօրն ու մօրը կու տար՝ svaçura «սկեսրեայ» («սկեսրայր») եւ svaçrû «սկեսուր»։ Ասոնց նախավանկն sva-sar «քոյր» բառին նոյն վանկին հետ sva իւր դերանունն է, իսկ միւս մասն է çura «տէր», Յունարէն χύριος. ուրեմն նախկին Հնդեւրոպացուհին իւր էրկան հօր՝ «տէր», իսկ մօր՝ «տիրուհի» անուն կու տար, որ անտարակոյս հայրական ու մայրական քաղցր տէրութիւն մը միայն կը յայտնեն, բայց միանգամայն կը ցուցնեն այն յարգանքն ու հլուութիւնն՝ զոր ունէր հարսը փեսային ծնողաց։ — Էրկան եղբայրը daivar «տայգր», «տագր» կը կոչուէր, որ հօրօրդ, քեռօրդ կը նշանակէ հաւանականապէս, Յունարէն δαί-ομαι «մասնակցել» բային արմատէն։ Երկու եղբարց կանայք մէկզմէկ կ'անուանէին yantar «Նէր» (*), որ կ'երեւայ թէ կապել կը նշանա-

(*) Հայերէն բառն որ ընդօրդ է անշուշտ, շատ այլայլութիւն կրած է։ Մեր լեզուն յունականին պէս նախաձայն յ, ձայնի ընդդիմութիւն կը դնայ,

կէ՝ yam (կապել, յօդել) արմատէն, որմէ նաեւ yama երկուորեակ։

Որդւոյն մանչ տղան napat կամ napât յորջորջանքն առած էր, իսկ աղջիկ զաւակը nâpti, որոնց համանիշ են նաեւ napan ու naptar՝ զանազան մասնիկներով նոյն արմատէն ածանցած։ Աս բառերը թոռն կը նշանակեն, բայց կ'երեւայ թէ որդի ու դուստր ալ կրնային նշանակել. Սլաւք եւ Գերմանք նաեւ եղբօր զաւկի նշանակութեամբ կը գործածեն, վասնզի անոնք հօրեղբայրն հօր ու հաւու հաւասար կը դնեն։ Վերոյիշեալ բառերուն հին իմաստն ըլլալու էր բուն սերունդ, որ յետոյ համալեզուին ժամանակն իսկ սկսած էր մասնաւորուիլ թոռն նշանակել։ Առանց կարեւորութեան չէ որ թոռն նախապէս որդի կը նշանակէր թերեւս, այլ կը ցուցնէ որ հաւն ու հանին իրենց որդւոյն պէս թոռն ալ կը սիրէին, որ մանկացեալ զաւակնին էր։ Դըժուարին է գտնել napat ու napti բառերուն արմատն, որ հարկաւ nap էր և հոսել (և անկէ սերել) և կամ կցել, կապել կը նշանակէր (*)։

Առաջին ակնարկութեամբ կրնայ օտարոտի երեւալ որ նախալեզուն բառ չէ յարմարեր դստեր այրը նշանակելու և ասոր յարաբերութիւններն որ ծնողաց ունի։ Բայց եթէ մտածենք որ աղջիկն օտարի տուն կ'երթար, ուրիշ ցեղի մէջ կը մտնէր, բնական կը գտնենք որ էրկան ուրիշ ազգականներն յատուկ բա-

---

զոր հօր կից ձայնաւորակը մեկնակ կրնայ առժամ ըլլալ և ան ատենն ձեւէ մը (համեմատէ Յունարէն εἰνάτερες նկար) այնպէս կրնայ մեկնուիլ ներ, ինչպէս դուստր, ծնողաց ձեւերէն հայր, հայր՝ սա տարբերութեամբ միայն որ հոն ալ կրկին ու կրկին ամփոփուելով և և վերջապէս և եղած է. ուրեմն ներ = ներ = նոյր = նոստր = նոստր = յանստր։ — Այդ ներէն հետ կրնա՞յ ընդարձակութիւն ունենալ նաեւ անէր։

(*) Վերագոյն յիշուած բառերէն և ոչ մէկուն համեմատ կու գայ Հայերէն թոռն, որ առուգիւ Թուրքերէն نورو նոյնաձայն համանիշ բառէն զատուելիք չի կրնար։ փոխառութիւն է անշուշտ, սակայն ո՛վ՝ որմէ առած է փոխ. անոնք մէկը նաեւ Նոյրանդ։

ռոմ նշանակելու կարեւորութիւն չէ զգացուած, այլ զանոնք ընդհանուր ազգական անուամբ բացատրեր են, որպիսի են svaya, svâta եւայլն : Փեսայութիւնն հնդեւրոպախումբ ընտանեաց կայութեան սերտ յարաբերութիւն չունէր, ընդհակառակն բարոյական աղերս մը կը գտնուէր տղոց ու հօր ու մօր եղբօր մէջ. Հօրեղբայրը կը կոչուէր patarva իսկ մօրեղբայրը mâtarva որ մեր հօրու ու մօրու բառերն են՝ թէեւ նշանակութիւննին փոքր ինչ այլայլած :

Էրկան վախճանելով ամուսնութիւնը լուծուելէն ետեւ առանձին մնացած կինը vidhavâ այրի (*) (կին) կը կոչուէր, որ բուն անջատել, զատել կը նշանակէ, vidh անջատել, զատուցանել արմատէն որ վեդական մատենագրութեան մէջ գտնուած է, որմէ առնուած է թերեւս նաեւ Լատիներէն di-vid-ere · իսկ այրիացեալ էրկան համար նախայեղութեան բառ մը կ'երեւայ թէ չկար, թերեւս վասնզի կնոջ կորուստը կենդանի մնացած էրկան ընտանեկան գոյութեան վրայ այնչափ ազդեցութիւն մը չէր ունենար :

Ան վայրն ուր հնդեւրոպականաց բարեկարգ ընտանիքը կը բնակէր, ճանապարհորդող սատանդիկանաց վրանը չէր, այլ բնակարան տուարածին օթեւանը : Նախատոհմին հաստատուն բնակողութեան կը վկայեն նախալեզուեան հետագայ բայարմատք՝ vas բնակիլ, և ասկէ vastu բնակարան · ski կալ, շինել, որմէ skaima կայանք, շէն : Պարսկերէն vaiça գեղ, շէն (բուն […] viç մտանել արմատէն), որ նաեւ կը նշանակէ մեզի բնակող ընտա-

---

(*) Բայց լեզուներէն շատերն ունին այս բառը՝ բաղկադեղուած, եթէ չենք սխալիր, նաեւ մեր այրի ձեւին մէջ, թէեւ նման գիր մըն ալ չէ պահուած : Սակայն մայր ձեւին հետ նմանութիւնն երեւան կու գայ եթէ նախ մեկընական virah գիտնաց Հայերէն այր (էրիկ մարդ) բառը գնենք և յետոյ ր ձայնն, ինչպէս ուրիշ տեղ նոյնպէս հաս, հնագոյն dhէն յառաջ եկած համարինք : Կ'երեւայ թէ այրի հնագոյն […] ձեւէ մը ծնունդ առած է, նախաձայն […] քերբեւ ներջուկ նախատառ […] , զոր Յունաց նման մենք ալ այնչափ չենք սխորժիր :

նիք կամ գերդաստան մը ։ Վերջապէս dama տուն, dam նուաճել, տիրել արմատէն և կը ցուցնէր թերևս տանուտեառն հայրենի իշխանութեան շրջանակն, ինչպէս Լատիններէն domus տուն և dominus տէր, որ մէկանց domare նուաճել, ընկճել բային արմատէն կ'ելլեն ։ Dhvar ու dhvara դուռն բառերն ալ Հնդեւրոպական նախատան արտաքին ձեւին վրայ լոյս կուտան ։ Նախալեզուին մէջ իսկ նոյն բառերը տան դուռն ու դրան մէջ գտնուած տեղը, գաւիթը կը ցուցնէին ։ Ուրեմն նախատոհմեան տունն իբրեւ կազմիչ մաս դուռ մըն ալ ունէր և վրան չէր, որուն վարագոյրը մտնելու ատեն ետ մղուէր, մէկ դի առնուէր ։ Ընտանեաց բնակավայրին քով կենդանեաց կայանքն էր ։ Դարձեալ տունը պատող ցանկ մը կար, որմէ նմանապէս ուրիշ դուռ մըն ալ դուրս կը հանէր ։ Փաստակերտութեան մէջ մեր նախահարց ունեցած յաջողութիւնն ու ճարտարութիւնն, զոր ստորեւ լեզուաքննօրէն ալ հաստատելու պիտի ջանանք, կարծել կուտայ որ անոնց տունն պատշաճապէս կը կանգնուէր ցցակերտ և արդ իսկ տեղ տեղ երեւցած շինականաց խրճիթներէն շատ ստորին չէր ։

Այդ նստողական բնակութիւնը նաեւ ստացուածքի կերպաւորում մը կ'ենթադրէ, և ասոր նախալեզուեան ինչ ինչ բառեր ալ կը վկայեն, ինչպէս ska ունենալ, ստանալ, որ անձուկ մերձաւորութիւն ունի և սկզբնապէս մայր արմատն ալ է ski կալ, բռնել նուաղաձեւ արմատին ։ Դարձեալ iç ստանալ, տիրանալ, ap-nas ստացուածք, bhagha բաժ, նոյնպէս rai ճոխ, ստակ ։ Թէ ո՛րն էր անձնական և ո՛րն հասարակաց ստացուածք՝ այն չի կրնար բառերէն որոշուիլ հարկաւ ։ Անհատին կամ լաւ եւս տանուտեառն ընտանեօք հանդերձ կը պատկանէր ստուգիւ տունն ու գաւիթը, կա՛հ կարասին և պաճարն ու պախրէն ։ Անտառն ու արօտն հասարակաց ստացուածք էին գերդաստանին, ցեղին՝ քանի մը ընտանիքէ բաղկացած հասարակութեան մը, որուն գլուխը ցեղապետ կը կոչուէր՝ viç և viç-pati. Թէ գիւղապետին հետ ինչ յարաբերութիւն ունէր râgan արքայ՝ յայտնի չէ ։ Նոյնպէս չի կրնար սահմանուիլ թէ արդեօք արքայ և գիւղապետ

միեւնոյն աստիճանին այլեւայլ յորջորջումներն էին, թէ զանազան գիւղեր արքայի մը իշխանութեան տակ էին և գիւղապետք արքայի գահերիցութեան ներքեւ խորհրդարան մը, ծերակոյտ մը կը կազմէին։ Սակայն թագաւոր և արքայ բառերուն գոյութիւնը բաւական է ընդունել տալու որ Հնդեւրոպական նոյն իսկ նախացեղին մէջ կառավարութիւնն սկսած էր կազմուիլ և թէ մեր նախահարց վարչութեան կերպը նահապետական-միապետական էր։ Երեւակայութեան օգնականութեամբ նախատոհմին այսպիսի կառավարութիւն մը կրնայ թերեւս տրուիլ։ Նոյն գիւղին Տանուտէրք կամ Հարք կամ Պետք, իրենց գիւղապետին գահերիցութեամբ կը խորհրդակցէին և վճիռ կուտային, իսկ գիւղապետք Արքային քով իրենց գիւղին Հարց ու Պետաց երեսփոխանութիւն կ'ընէին և անոր գլխաւորութեամբ իրենց հասարակութեան կամ գիւղին իրողութեանց վրայ կը խորհրդակցէին. Արքային իշխանութեան տարածութիւնն արքայութիւն râgia էր։ Իսկ արքունական զբաղմանց վրայ սա գաղափարը կրնանք յօրինել։ Արքային կ'իյնար հասարակութեան գործոց խնամքն ու վարչութիւնն, իսկ ընտանեաց մէջ տանուտէրը բացարձակ իշխանութիւն ունէր տակաւին։ Վասնզի râg կամ râgan արքայ բուն ուղղիչ, վարիչ ըսել է, rag ուղղել, վարել արմատէն (Լատիներէն regere և աստի rex=reg-s) և արքային կարգադրածն rag-ta, Լատ. rectum ուղիղ, իրաւունք, օրէնք էր։ Յիշուած rag-ta բառէն զատ ուրիշ քանի մը իրաւաբանական բառեր ալ կը գտնուին նախալեզուին մէջ. ինչպէս aiva որ կը նշանակէր բուն ընթացք, գնացք և յետոյ ուղիղ գնացք և այսպէս վարք ու բարք։ Դարձեալ gnâ-tar բուն ճանաչող ըսել է, բայց նաեւ երաշխաւոր, իբրեւ այնպիսի մէկն որ ուրիշը կը ճանչնայ և անոր անձին տեղը կը բռնէ։ Նախապէս փնտռել կը նշանակէր ki, որմէ նաեւ Լատիներէն quaerere, բայց յետոյ սկսուած է դատաստանական քննութեան ու դատի նշանակութեամբ գործածուիլ և աս առումէն բխած են հետագայ բառերն kainâ (քէն) վրէժ, apa-kiti փոխարէնք, տոյժ։ Իրաւագիտական ծանօթութեանց կարգէն են նոյնպէս mit-ra (mit դաշնակցիլ, կենակցիլ) և

dhar-ma (dhar բռնել, պնդել, փարձել) օրէնք և dhâ-man (dhâ դնել) դրութիւն, սահմանադրութիւն : — Ստրկութեան բացատրիչ Նախալեզուեան բառ չկայ · բայց ճորտուոր, վարձքի համար ծառայող, աշխատող հարկաւ ունէր Նախատոհմիս, ինչպէս կրնայ գուշակուիլ misdha վարձք, arghâ արժէք, ևն բառերէն :

Մեր նախահարց կրթութեան ու զարգացման երկրորդ հաւատոյն հիմն ալ, որ ոչինչ նուազ կարեւոր էր ամուսնական և ընտանեկան կենաց բարոյական կապութենէն, կրօնն էր, որ պարզ ու վսեմ գաղափար մը տալով աշխարհիս վրայ՝ Նախացեղին մանկական միտքը կը գոհացնէր՝ առանց հոգեկան ազատութիւնն ընկճելու և ամփոփելու և հնոց մըն էր պարզ բարոյական գաղափարներ արծարծելու և պահելու : Եթէ հարցուի թէ մեր հնդեւրոպական նախահայրերը մէկ թէ շատ աստուած կը պաշտէին, պատասխանն հաստատական ու ժխտական միանգամայն կրնայ տրուիլ : Աշխարհիս յօրինուածութիւնն իրենց մարդկային ընտանութեան պատկեր նկատուած էր ճշդիւ · տիեզերաց ինչպէս նաեւ ընտանեաց կազմութեան մէջ եղած միութիւնըն այնպիսի էր, որ ամբողջին հետ բարոյական կապերով կապուած անձանց ազատ շարժումն ու բազմութիւնը չէր խափանէր : Ինչպէս որ ընտանութեան ու հօր քով տանտիկին ու մայր, ուստերը և դստերը ազատութեամբ կը շարժէին՝ միայն ընտանութեան հանրական շահուց վրայ հսկող հօր իշխանութեան ներքեւ, և ինչպէս որ ցեղի կամ ծնոց (ganti) այլեւայլ ազատ վարչութիւնք բարձրագոյն միութեան մը հետ յօդուած էին, նոյնպէս Նախատոհմին կարծիքն էր թէ աշխարհի և աշխարհավարութեան միութիւնը չի վնասուիր դիւցական անձնաւորութեանց և աշխարհավարաց բազմութեամբ, վասնզի սոյն բազմութիւնը միայն աշխատակցութեամբ վսեմագոյն միութեան մը կ'երթայ կը յանգի :

Նախալեզուին բառերէն որչափ որ կրնայ հանուիլ՝ Նախացեղին կրօնական տեսութիւններն այսպիսի ինչ էին : Մշտնջենական բնութեան (բնակարգին) վարիչներն անմահ an-marta էին և նամին իսկ հակապատկերը կը կազմէին մահկանացու mar-ta մարդ-

չոն ։ Նաեւ իշխանութեանը ու զօրութեանը անոնք տառնալէ գերագոյն էին և այն բարձրագոյն կարողութեան հետը զանոնք և իրենց գործողութիւնները մեծապէս կը զանազանէր մարդկանէ և ասոնց տկար գործողութիւններէն ։ Այս հզօրագոյն կարողութեան գաղափարէն կը ծագէր սրբութեան ծանօթութիւնը· çvan-ta բառն հզօր կը նշանակէ և յետոյ սուրբ, և այսպէս çvan-tra ամենազօրութիւն, լաւութիւն, սրբական վայր ։

Աստուած աշխարհս կը վարէր ինչպէս տանուտէրն իր ընտանիքն· ուստի և կը կոչուէր pa-ti տէր և pa-tar հայր՝ diaus-patar (լուսահայր) հայր-տունջեան, երկնահայր բարդին մէջ ։ Նման իմաստ կը բովանդակեն նաեւ bhagha և ansu որ աստուածութեան վերադիրք են ։ Bhagha որ կը բխէ bhagh բաժնել, բաշխել արմատէն, կը նշանակէ բաժանող, բաշխիչ, հացտուէր, որ իւրաքանչիւրին իր բաժինը, բաժն ու բաշխը կու տայ ։ Ansu աշխարհի մղումը, կեանքն էր (as=is մղել, գրգռել) և հետեւ անձն նկատուած մղիչ, կենդանացուցիչ ։ Ինչպէս որ հայրն մարդկային ընտանեաց միջակէտը՝ միութիւնն է, այսպէս ալ աշխարհի վարչութեան միջավայրը կը կենար իբրեւ հայր ու վարիչ Diu Տէր կամ Երկին՝ անձնաւոր ընդունուած՝ յատկապէս Diaus-patar Տունջեան-հայր անուամբ ։ Հօր երկնից կամ տունջեան լուսապայծառ ու բեղմնաւոր գաղափարէն կը բխէր Հնդեւրոպականն նախատոհմին կրօնական յայտ ստեղծագործութիւնը ։ Երկինք կամ Տիւն նկատուած էր իբրեւ հայր աշխարհի, դից և մարդկան ։ Անոր քով կը կենար անտարակոյս իբրեւ Տանտիկին, Տիրուհի՝ Խաւարն (Գիշերն) կամ Երկիրն իբրեւ մայր աշխարհի ։ Սակայն այս Երկրամայրն Երկնահօր պէս որոշ կերպարանօք չ'երեւար. բայց ամէն հնդեւրոպացւոց ազգաց դիցաբանութիւններն անդընդոց ու մթան մէջ շրջող Մայր-էակ մը կը ցուցնեն, որով կը համարինք ընդունիլ նախատոհմին կրօնին մէջ Հայր-Երկնից քով Մայր-Երկիր մը իբրեւ վարիչ աշխարհի ։ Դիւցական էակաց սովորական յորջորջանքն էր daiva՝ diu բառէն ածանցուած · ուրեմն անոնք դիւցազունք միայն էին, դիցահօր ճետը կը կոչուէին, իրենք իրենց կարեւորութիւն չունէին նախապէս, այլ ասկապէս

dhar-ma (dhar բռնել, պնդել, վարձել) գործ և dhâ-man (dhâ դնել) դրութիւն, սահմանադրութիւն : — Արիական բացատրիչ նախալեզուեան բառ չկայ . բայց վարձուոր, վարձքի համար ծառայող, աշխատող հարկաւ ունէր նախատոհմիկս, ինչպէս կրնան գուշակուիլ misdha վարձք, arghâ արժէք, գին բառերէն :

Մեր նախահարց կրթութեան ու զարգացման երկրորդ հաստատուն հիմն ալ, որ ոչինչ նուազ կարեւոր էր ամուսնական և ընտանեկան կենաց բարոյական կապակցութենէն, կրօնն էր, որ պարզ ու վսեմ գաղափար մը տալով աշխարհիս վրայ՝ նախահայրին մանկական միտքը կը գոհացնէր՝ առանց հոգեկան ազատութիւնն արգելելու և ամփոփելու և հնոց մըն էր պարզ բարոյական գաղափարներ արծարծելու և պահելու : Եթէ հարցուի թէ մեր հնդեւրոպականց նախահայրք մէկ թէ շատ աստուած կը պաշտէին, պատասխանն հաստատական ու ժխտական միանգամայն կրնայ տրուիլ : Աշխարհիս յօրինուածութիւնն իբրեւ միացկային անհատութեան պատկեր նկատուած էր ճշդիւ . տիեզերաց ինչպէս նաեւ ընտանեաց կազմութեան մէջ եղած միութիւնըն այնպիսի էր, որ ամբողջին հետ բարոյական կապերով կապուած ընձանց ազատ շարժումն ու բազմութիւնը չէր խափանէր : Ինչպէս որ տանուտէրն ու հօր քով տանտիկին ու մայր, ուստերք և դստերք ազատութեամբ կը շարժէին՝ միայն տանուսութեան հանրական շահուց վրայ հսկող հօր իշխանութեան ներքեւ, և ինչպէս որ ցեղի կամ ցեղի (ganti) այլեւայլ ազատ վարչութիւնք բարձրագոյն միութեան մը հետ յօդուած էին, նոյնպէս նախատոհմին կարծիքն էր թէ աշխարհի և աշխարհավարութեան միութիւնը չի մերժեր դիւցական անձնաւորութեանց և աշխարհավարաց բազմութեամբ, վասնզի այն բազմութիւնը միայն աշխատակցութեամբ մեծագոյն միութեան մը կ'երթայ կը յանգի :

Նախալեզուին բառերէն որչափ որ կրնայ հանուիլ՝ նախահայրին կրօնական տեսութիւններն այսպիսի ինչ էին : Մշտնջենական բնութեան (բնակարգին) վարիչներն անմահ an-marta էին և նոքին իսկ հակապատկերը կը կազմէին մահկանացու mar-ta մարդ-

արբանեակք և սպասաւորք Երկնահօր կը համարուէին։ Հետե-ւապէս թէեւ սովորութիւնք մեր նախահարց կրօնն ալ բազմաստ-ուածեան ընել, սակայն անոնց դիւցական դրութիւնն աւելի միաստուածեան նկարագիր ունէր, դիք մէկ երկնաւորից կերպա-րանաց այլեւայլ երեւոյթներն էին, որմէ անուններին ալ առած էին։

Իբրեւ անձնաւոր դից անուանք կը ճանչնանք Parkana Անձ-րեւադիք, Հողմադիք, որ ամպի ու մառախուղի (nabhas) մէջ կ'իշխէր և տարբեր էր լուսաւոր Երկինքէն՝ Diuէն, և Trita, որ թէ անուամբ և թէ էութեամբ միթին է տակաւին։ Նոյնպէս Արշալոյսն Usas, Արեգակն Savar (շարժիչ, խլրտիչ), Լուսինն Mans (փոփոխական) և Աստեղք Staras (ցրուեալք) անշուշտ մեր նախահայրներէն կը պաշտուէին, հարկաւ չէ թէ իբրեւ ինքնա-կաց էակներ այլ իբրեւ արբանեակներ, ուստերք և դստերք Երկնից կամ Տունջեան։ Նաեւ մարդկութիւնն իսկ, իբրեւ միա-յուն զօրութիւն աշխարհի՝ անկախ անհատից փոփոխութենէն, Երկնահօր ծառայող աստուածային էակ մը կը համարուէր։ Մարդն երկու գլխաւոր կարողութիւններովն իբրեւ Խորհող ma-nu և Յանկացող bhraghu՝ կը պաշտուէր իբրեւ աստուածային մշտնջենաւոր նախամարդ մարդկային ազգին, որուն մէջ յարա-տեւ կ'ապրէր։

Երկնահօր և այլ դիւցական էակաց մատուցուած պաշտօնն որոշել դժուարին է։ Yag յաշտել, յաշտ առնել, ընդհանրապէս կը նշանակէ պաշտել զդիս օրհնաբանութեամբ և պատարագօք և անկէ կ'ա-ծանցի yagas պաշտօն, մեծարանք։ Դարձեալ կրօնական բառեր են varta և apas որ երկրպագութիւն, պաշտօն կը նշանակեն։ Վե-դաներն ու Զենդաւեստան Հոմերոսին հետ համեմատելով ինչ ինչ արարողական կամ աղօթական բանաձեւեր կրնան հանուիլ։ Այսպէս կ'օրհնէին աստուածներն իբրեւ պարգեւատու dàtaras vasuâm, կ'աղաչէին շնորհս առնել varam bhar, Յուն. ἦρα φέρειν. անոնցմէ կը խնդրէին ողջմտութիւն vasu manas և արիութիւն, քաջասրտութիւն, Յուն. μένος ἠΰ, Զնդ. վոհու մանանհ, և անկորստական փառք՝ Յուն. κλέος ἄφθιτον և Վեդայից մէջ սրավաս ակշիտամ։

Աս լուսակրօնիկ հաւատքին քով մթապաշտական հետք ալ կը նշմարուին ։ Կը հաւատային դեւերու, սպառող հոգիներու և կարծէին թէ չարակամք կարող են իրենց չար կամաց զօրութեամբ ուրիշները նախուրգել ։ Վերջապէս հաւանական է որ որ չարի, Թշնամւոյ պատկեր մը կը նկատէին իժը կամ օձը anghi, aghi ։ Սակայն ընդհանրապէս խօսելով կրնանք պնդել որ մեր առաջին նախահարց հաւատքը լուսապաշտութիւն մըն էր, ուր բարեկենդանութիւն ու բարոյականութիւն կրնային աճիլ ու զարգանալ ։

Նախատոհմին նիւթական սնունդն ու ապրուստը նախապէս պաճարաբուծութեամբ էր և ոչ այնչափ հողագործութեամբ ։ Պաճարը կամ ոչխարն paçu, որ կապել թերեւս կը նշանակէ, մեր նախահարց գլխաւոր ստացուածքն էր ։ Ոչխարի կ'երեւայ, որդէն ընտանեցուցած, նուաճած էին բոլոր տնական կենդանիները, որոնք յարդ տնտեսական մեծ կարեւորութիւն ունին ։ Արջառ, ոչխար, այծ արօտի վրայ կը ճարակէին, ագարակ (agra) մէջ կը յածէին, գոմ ու փարախ կամ մակաղատեղ ունէին խաշինք ։ Ձին այսինքն ասպ (açva), որ արշաւասոյր ընթացքէն յորջորջումն առած էր, կը ծառայէր մեր նախահարց կառքին (ratu) լծուելով իբրեւ կառաձիգ երիվար, այլ ոչ իբրեւ հեծանելի . ասոր համար հնդեւրոպեան յատուկ բառ չունի ։ Կովը գլխաւոր արօտական անասունն էր և անունն առած էր հանած գոչիւնէն, ուստի և gau կով կը նշանակէ Եզն, Բառացի՝ gu գոչել, ճչել արմատէն ։ Ցուլը կը կոչուէր ukṣan և ըմբռնուած էր իբրեւ արգասաւորիչ հօտին uks=vaks Թրջել, Բեղմնաւորել արմատէն ։ Կ'անուանէր նաեւ staura ցուլ այսինքն ստուար՝ այծի, ոչխարի համեմատութեամբ որ փոքր են, stu արմատէն որ ցցուել, կանգնել կալ կը նշանակէ ։ Կաթ տուող կովը dhainâ կ'ըսուէր dhâ ծծել բայէն, իսկ ամուլը՝ staria ստերջ στεῖρα կը կոչէին՝ sta կալ արմատէն ։ Որթ vatasa բուն տարեւոր ըսել էր, vatas տարի բառէն, վերջապէս vakâ կով որ gauին հետ նոյնանշան է, ասոր պէս բառացի կը նշանակէ vak ձայնել արմատէն ։ Արջառին չափ չէին բուծաներ խոզը sû, որ թէ արուն և թէ մատակը կը ցուցնէ և անունն առած կ'երեւայ su ծնանել արմատէն, թերեւս

արգասաւոր ծննդականութեան պատճառաւ ՝ Եւրոպական քոյ-թերը միայն անոնք հասարակաց բառ մը խոզի նշանակութեամբ , Յուն. πόρκος , Լատ. porcus , որմէ կրնանք թերեւս հետեւցընել որ խոզարածութիւնն Եւրոպիոյ Հնդեւրոպայեցւոց մէջ յետոյ ատեն զարգացած էր ։ Ոչխարն avi (համեմատէ Հայ. ա–ւդիք) հաւանականութեամբ av պաշտպանել արմատէն է , ինչպէս նաեւ varana գառն var ծածկել արմատէն , որմէ դարձեալ varnâ բուրդ ։ Այծը կը կոչուէր aga, ag յածիլ բայէն , և կոչուած էր այսպէս կայտառութեան կողմանէ ։ Խոզը skaga կը կոչուէր , skag խայտալ , խաղալ բայէն , իսկ bhuga բուծ (*) , bhug բո-թանել արմատէն ։ Հովուին օգնական էր շունը çvan , որ հզօր կամ զօրաւոր կը նշանակէ , çu զօրաւոր , զօրանալ աճել արմատէն ։

Կովն , անշուշտ նաեւ ոչխարն ու այծը կը կթուէին , և կովու կաթը մեր նախնեաց սովորական խմելիքն էր ։ Բայց մեր նախահայրք նաեւ հօտին մսէն կ'ուտէին , զոր մինչդեռ հում էր kravas իսկ եփածը mamsa մս կը կոչուէին , և ճարպն ու պարարտութիւնն ալ pîvas կ'անուանէին ։ Մսին չրէն արգանակ մըն ալ կ'եփեւայ թէ գիտէին պատրաստել ։ Ոչխարն իր բուրդն (vara) [illegible] (varna) կու տար , մեղուն քաղցր մեղր , որմէ սորված էին արբեցուցիչ ըմպելի մըն ալ կազմել , որուն գլխաւոր տարրն անշուշտ մեղր էր madhu անուամբ , որ թերեւս մեր մեղուոյ (=մեղր-ու-ի) բառին մէջ ալ բովանդակուած է ։ Անասնոց մորթը գիտէին հանել և անկէ տիկ և ասոր նման ուրիշ բաներ շինել ։

Որսը agra նախատոհմին կենաց համար այնչափ կարեւորութիւն չունէր և կը նշանակէր միայն հօտին թշնամիներն՝ արջը (arksa) և գայլը (varka = գիշատիչ) հալածել որ ոչխարաց հօտին չմերձենան ։ Բուն կարեւոր որսական երէ կրնանք յիշատակել parkat եղջերու և kasa նապաստակ ։

(*) Հայերէն բուծ (գառն) իմաստը փոխած է . Նպ. ; , Զնդ. բու-զ , բուզ , բոզ կը նշանակեն ։

Նախապատմին ծանօթ միւս անասուններէն կրնանք յառաջ բերել՝ udra ջրօձ, bhabhru կուղբ, aghi կամ anghi օձ, իժ, karma որդն, mûs մուկն, որ բուն գող կը նշանակէ և mauri մրջիւն, որ կ'երեւայ թէ իբրեւ աշխատասէր, ջանասէր ըմբռնուած էր։ Նաեւ թեւաւորաց բաւական ուշադրութիւն նուիրուած էր, որ կրնայ հետեւցուիլ հետեւեալներէն՝ pat թռչիլ, pat-ra փետուր, nisda բոյն, եայլն։ Կը ճանչնային սագը ghansa և թռչնոց (vi) մէջէն նշանաւոր ըմբռնուած էին բարձրաթռիչ արագաթեւ գիշատիչներն։ Ասոնք գիտուն և հմուտ ապագային կը համարուէին, պայծառ ու լուսաւոր երկնից մէջ սաւառնելով՝ կը կարծուէր թէ երկնաւոր աներեւութական իրողութեանց հայեցող ըլլան։ Այլապէս տեսանող թռչնոց անուններէն գիտենք çyaina ցին և bhansa բազէ։ Դարձեալ ծանօթ թռչնոց անուններ էին uruka բու, թերեւս Հայերէն ուրուր, tatara տատրակ եայլն։

Անասնաբուծութեան բառերուն ճոխութեան համեմատութեամբ երկրագործականներն ոչինչ են։ Ցորենեղինաց այս կամ այն տեսակը թէեւ ճանչցուած կ'երեւայ, սակայն ասոնց մշակութեան նպատակն էր լոկ թացան մը պատրաստել իրենց կաթին ու մսին և մեր նախահարք երկրագործութեամբ ստուգիւ չէին սնանիր, որ կը հետեւի նախալեզուին հողագործական բառերու նուազութենէն։ Ասոնց կարգէն են yava յաւար, որ կ'երեւայ թէ, նախապէս դալարիք միայն կը նշանակէր։

Բաւական բարձր կրթութեան մը ապացուցութիւնը դարձեալ կ'ունենանք, եթէ նախապատմին զգեստեղինաց բառանկար պատկերն ալ դիտենք։ Մեր նախահարք մերկ nagna չէին շրջեր, այլ բրդէ հիւսուած ու կարուած զգեստ կը հագնէին։ Թէ անասնոց մորթն ալ կը գործածէին արդեօք թէ ոչ, այն յայտնապէս չի կրնար որոշուիլ թէեւ հաւանական է։ Հանդերձեղինաց ձեւը նմանապէս ստուգել կարելի չէ, այնչափ միայն գիտենք, որ իրենց մէջքը գօտի կը կապէին։ Թերեւս գլուխնին բաց կը մնար, գոնէ նախալեզուեան բառ չենք գտներ գլխարկի նշանակութեամբ։ Թէ ոտուընին կը ծածկէին՝ մեծ հաւանա-

կանութեամբ կրնանք հետեւցնել Հայ, Զանդիկ ու Լիթուական լեզուին մէջ գործածուած բառերէն։

Զարմանալի է որ նախալեզուն քարակոփութեան բառեր չունի։ Պատճառն աս երեւոյթին սա կրնայ ըլլալ, որ այս կամ այն քարեղէն անօթը թէեւ ժառանգութեամբ կը պահուէր ու կը գործածուէր, սակայն քարադարն որ քարեղէն գործիներով քարը կը կոփէր, նախալեզուեան ազգամիութեան ժամանակէն շատ առաջ էր։ Նախատոհմն երեք մետաղ կը ճանչնար ու թերեւս կը գործէր՝ ոսկի, արծաթ ու պղինձ։ Մետաղի ընդհանուր անունն էր aias որ թերեւս փայլուն կը նշանակէ։ Այս երեքն ալ իրենց գոյնէն առած էին անուննին gharta ոսկի=դեղին, argata արծաթ=ճերմակ, raudha պղինձ=կարմիր։ Մետաղն հալեցնելն ու կռանելն çip բայով կը բացատրուէր։ Հիւսան գործիները պղնձի էին, մանաւանդ կացինը paraçu։ Ատաղձագործք տնէն զատ կառք ու նաւ ալ կը շինէին։

Կառքն ունէր անիւներ որ առանցքով մը կապուած էին։ Առանցքին երկու ծայրերը կ'անցնէին անուին միջավայրէն, որ նմանութեան պատճառաւ պորտ nabha կը կոչուէր։ Անուակառքը կը քաշէին ձի կամ մանաւանդ եզ, որոնք լծով իրարու հետ զուգուած կառքին կը կապուէին։ Նաւը թիակներով կը մղուէր, կայմ, առագաստ ու ղեկ կ'երեւայ թէ նախատոհմը տակաւին չէր ճանչնար։ Նաւարկութիւննին գետի ու լճակի ամփոփուած էր, նախատոհմին բնագաւառն հաւանականօրէն ծովեզերեայ չըլլալուն՝ բնական էր թիակամուղ նաւակով ամեհի ծովը մխելու չդիմագրաւէին։

Հիւսան կամ ատաղձագործին բրուտն ալ ժամանակակից կ'երեւայ. լմելու գործողութիւնը dhigh (դիզել) բայով կը բացատրէին։ Խեցեղէն կամ կաւեղէն անօթոց անուններն էին kumbha պոյտն, karu սան (ճառայ), paravya կոնք, Լատ. pelvis։ Բռնելու համար ունկեր ansa կը կազմէին և ընդհանրապէս գըլխաձեւ կ'երեւայ թէ կը յօրինէին, թերեւս ակնարկելով սպանուած թշնամւոյն գանգն իբրեւ բաժակ գործածելու շատ հին սովորութեան մը, զոր հին Գերմանացիները գիտենք թէ ունէին։

Մեր նախահարց նահապետական ամենահին ժամանակներն իսկ պատերազմունք պակաս չէին․ համեմատէ yudh մարտնչել, arti մարտ, kara զօրք, բանակ, պատերազմ։ Պաշտպանողական զինուց անուն ամենևին չենք կրնար նախալեզուէն յառաջ բերել․ իբրև յարձակողական զէնք գիտենք միայն սուսեր և աղեղ։ Աղեղին լարն, ինչպէս sinava նեարդ կը ցուցնէ, արջառի ջղերէն կը շինուէր ոլորելով և աղեղին երկու ծայրերը կը հաստատուէր։ Մարտագինուց կարգէն էր թերևս նաև նիզակ, որ ընդհանուր անուամբ փայտ daru կը կոչուէր։

Ոչ միայն պատերազմի այլ նաև խաղաղութեան ատեն դիւղից ու գաւառաց բնակիչք իրարու կը հանդիպէին․ Ճամբաներ panti շինուած էին, որ վաճառաց փոխանակութիւնք կը դիւրացնէին (par և kar սակ արկանել, mi փոխանակել, vasna գին)։

Բժշկական արհեստին ալ ծագումը կը նշանակուի mad (բըժըշկել) արմատով, որ կրօնական արարողութեանց հետ կապուած էր անձկապէս և աւելի վիրաբուժութիւն էր (arus վէրք)․ սակայն երկու հիւանդութեանց անուն ալ աւանդուած է մեզի dardru բոր և skiti թալուկ։

Եթէ մինչև հիմակ ըսածներնուս վրայ աւելցնենք տասնաւորէն մինչև հարիւրաւորին կազմութիւնը, տարւոյն (vatas, yâra) բաժանումը՝ գարուն vasra, ամառն sama, ձմեռն ghima, ghaiman եղանակներու և ամիսներու, որ վերջինները լուսնոյ մի անգամ փոփոխումը կը ցուցնէին (mans լուսին, ամիս), և դարձեալ նախնական միապաշտութիւն մը, որուն գլխաւոր նիւթն էր անտարակոյս կրօնք և պատերազմական քաղագործութիւնք, կը ստանանք մեր հնդեւրոպարուն նախացեղին բաւագիծ ըստուերագիրն երբ դեռ բարոյապէս մէկ ազգ միայն կը կազմէին։



կերպով մը կը շարունակէ տիեզերական բառարանի մը գաղափարը, զոր Լայպնից առաջարկած և Կաթարինէ կայսրուհին նախ գործադրել տուած էր, այսինքն՝ լեզուներն համեմատելով ազգաց փոփոխ յարաբերութիւններն հաստատել։ Սակայն մեր մատենագիրն՝ իր նախորդներուն նման՝ չի շատանար զանազան բառեր լոկ հաւաքելով՝ որոնց նոյնութեան վրայ ինքնին կասկածն յայտներ էր արդէն, այլ գրեթէ հինգ հարիւր լեզուաւ ու գաւառալեզուաւ Հայր Մեր (*) բառափորձ մը կու տայ։ Ինք այնպէս կը կարծէր որ լեզուի մը արտաքին ու ներքին շինուածքը բառական հիւսուածքի մը վրայ միայն կրնայ ճանչցուիլ։

Սոյն հեղինակին գործին մէջ՝ որ ցարդ օգտիւ կրնայ կարդացուիլ, կրնանք իբրեւ յաղթուած համարուիլ նախորդ դարերուն գլխաւոր մէկ մոլորութիւնն՝ որուն դէմ նախ Լայպնից հաստատութեամբ կռուած էր, իբր թէ եբրայական բարբառը մարդկային ազգին նախալեզուն եղած ըլլայ։ Ադելունկ կը կարծէ որ նոյն լեզուն թէեւ ամենահին է բայց սկզբնալեզու չէ։ Ասկէ զատ չ՚աշխատիր նա բոլոր լեզուները մէկ լեզուէ յառաջ բերելու, թէեւ հաստատապէս համոզուած է որ ամենայն ազգք Ասիայէն եկած են և իբրեւ ընդհանուր կարծիք կը դնէ՝ թէ Ասիա մէջը մարդկութեան օրօրան նկատուած է և հոն իրենց առաջին կրթութիւնն առած և յետոյ հանկէ ամէն կողմ տարածուած են մարդիկ։

Իսկ եթէ ուզենք տեղեկանալ թէ յիշեալ գիտնականին ատենին ո՛ր աստիճան ճանչցուած էր Հնդեւրոպական լեզուաց յարաբերութիւնն, կրնանք մանաւանդ Եղ. Պաւլինոս Ս. Բարթողոմեոսի գրութիւններէն տեսնել՝ թէ նոյն լեզուաց իրարու հետ ունեցած կարեւոր առնչութիւններն անծանօթ չէին։ Նոյն իսկ Ադելունկ ցանկ մը կու տայ ազգակից բառերու իր Միհր-

(*) Առաջին մարդն որ Հայր մերն իբրեւ լեզուի փորձ մատուցեր էր տալ, եղաւ Յ. Շիլդպերկեր (1427)։

դարին (*) մէջ՝ այսպէս ըսելով. Սոյն (Հնդիկ) լեզուի բարձր հընութիւնը կը հետեւի նաեւ Սանսկրիտ բառերու հին լեզուաց հետ միաբանութենէն, որուն հիմն սա միայն կրնայ ըլլալ որ այդ ամէն ազգերը մէկ սկիզբ ունէին և իրենց բաժանումէն առաջ մէկ ցեղ կը կազմէին ։ Սակայն Ադելունկ որ Սանսկրիտի հետ Եբրայեցերէն, Ասորերէն ու Թուրքերէն եւայլն կը համեմատէ, կը ցուցնէ թէ Հնդեւրոպական նախացեղի գաղափարը տակաւին չունէր ։ Նոյն միջոցներն ընդհանրապէս կը պաշտպանուէր նախ Յոյն և Լատին, և յետոյ Գերմանական ու Պարսկական լեզուաց ազգակցութիւնն, և այդ վերջին կարծիքն նոյն իսկ Լայպնից կը տածէր՝ մինչեւ կրցեր էր ըսել թէ՝ Ամբողջ տողաչափութիւնք կրնան Պարսկերէն գրուիլ որ Գերմանացին հասկնայ ։

Սակայն այդ յիշուած նմանութեան երեւոյթներն ոչ ճշմարիտ ազգակցութիւն այլ պատահական խառնուրդ մը կ'ըմբռնուէր և կը կարծուէր թէ յառաջ եկած է նախապատմական կամ պատմական ժամանակին՝ նոյն ազգերն իրարու հետ շփուելով ։ Օրինակի աղագաւ՝ Լատիներէնը Կեղտական ու Յունական տարերաց խառնուածք մը կը համարէին, իսկ Պարսկական լեզուին մէջ երեւցող Գերմանական մասերը կը մեկնուէին՝ վայրենամիտ պատերազմասէր Գոթացիներու՝ Սեւ ծովու եզերքը Պարսկաստանի մօտ՝ արշաւանօք և առժամանակեայ բնակութեամբ ։ Թէեւ աս էր ընդհանուր կարծիքը, բայց նոյն իսկ Ադելունկ տակաւ սկսած էր իրականութեան մօտենալ՝ համոզուելով որ երեւցած նմանութիւններն արմատական միութեան արդիւնք են և լոկ փոխառութեամբ մեկնուիլ չեն կրնար, ուստի և ճանչցած էր թէ Եւրոպիոյ արեւմտեան և հիւսիսային ազգերուն լեզուներն համօրէն միահամուռ մէկ աղբիւրէ բխած և յետոյ ժամանակի, օդոյ և բարոյից ազդեցութեամբ դարձեալ օտարացած են իրարմէ ։

---

(*) Միհրդատ կամ Համընդհանուր լեզուաբանութեան ուսուցանող մատեանն (1806—1816, Բերլին) այդ հեղինակին գլխաւոր աշխատասիրութիւնն է ։

Այն լեզուաքննին Գերմանացւոյն հետ առանց հաղորդակցու-
թիւն ունենալու՝ անձնական քննութիւններովն նոյն արդեանց
հասած էր 1786ին՝ Վ. Ճոնս անուանի Անգղիացին՝ յենլով Սան-
սկրիտ լեզուի կատարելագոյն հմտութեան վրայ ։ Ինք դիտած
էր արդէն որ Լատին ու Յոյն, ինչպէս նաեւ Գերմանական ու
Կելտական լեզուաց համաձայնութիւնը մեկնուիլ չի կրնար՝ բայց
եթէ ընդունելով զանոնք հասարակաց թէեւ թերեւս ցամքած
աղբիւրէ մը բխած ։

ԺԹ-ՐԴ դարուն պահուած էր գիտնօրէն ցուցնել Հնդեւրո-
պաքուն լեզուաց վաղեմի միութիւնը ։ Յր. Պոփի անմահ երկա-
սիրութիւններովն Հնդեւրոպական լեզուաց շրջանակն որոշակի
գծուեցաւ, այնպէս որ այլ եւս ոչ ոք կրնայ տարակուսիլ թէ
այն լեզուներն՝ որոնց վրայ նոյն Գերմանացի լեզուագէտն իր
Համեմատական Քերականութեան մէջ ճառած է, նախամայր լեզուի
մը համամայր սերունդները ըլլան, որպիսի են Սանսկրիտ, Զան-
դիկ, Յոյն, Լատին, Լիթուական, հին Սլաւոնական, Գերմա-
նական, Ալպանիական լեզուներն, որոնց վրայ աւելցուց վեր-
ջապէս նաեւ մեր հայկական բարբառը՝ թէեւ շատ թեթեւակի ։
Թէպէտեւ Պոփ այս լեզուներն համեմատելով իրենց նախամօր
գոյութիւնն հաստեցնելու չ'աշխատիր յատկապէս, սակայն իր
համեմատելու նորագիւտ եղանակէն նոյն գաղափարը բնապէս
կը ծագէր տակաւ, այսինքն թէ անոնք ստուգիւ մէկ մօր հա-
րազատ զաւակունք են ։

Հնդեւրոպական լեզուաց ազգականութեան մեկնութեան հետ
կապուած էր սերտիւ նոյն ազգաց բնադաւառին խնդիրը ։ Օրի-
նակի համար, Հայերէն հայր, Գոթերէն fadar, Լատիներէն pa-
tar, Յունարէն πατήρ, Հնդկերէն պիտա՛, Զանդկերէն պիտա եւայլն
համանիշ բառաշարքն աչքի առջեւ բերած ատեն մարդ, ասոնց
յարաբերութիւնն երկու կերպով կրնար մեկնել ։ Կա՛մ ասոնցմէ
մէկն հարկ էր միւսներուն մայր նկատել, կա՛մ ամէնն ալ մէկ-
տեղ ոչ եւս պահուած այլ միայն համեմատութեամբ հանուած
նախաձեւէ մը յառաջ բերել ։ Աս երկու հնարաւոր մեկնութեանց
մէկուն կամ միւսին ընդունելութեան հետ կապուած էր Հըն-

դեւրոպացւոց բնագաւառի խնդրոյն լուծումը ։ Թէեւ Ճոնս ուղիղը գուշակած էր արդէն , սակայն չէին պակսեր տակաւին այնպիսիներ որ ցարդ մնացած մայր լեզու մը գտնելու կը միտէին ։ Աս մայրական պատիւը կը տրուէր կամ Սանսկրիտ լեզուին՝ որուն արդէն հնդեւրոպամայր լեզուաստեղծին գիւտը պարտական էին , կամ Զանդիկ բարբառոյն՝ որ բարձրագոյն սրբութեան ու սկզբնականութեան համբաւն ունէր ա՛յնչափ աւելի որչափ նուազ ծանօթ էր դարուս սկիզբները քննչաց ։

Հնդեւրոպաղարմ ստեղծին Հնդկաստանէն սերունդը կը պաշտպանէր Ֆ. Շլեկել Լեզու և Իմաստութիւն Հնդկաց դարագլուխ կազմող գործոյն մէջ (1808) ։ Նա կը կարծէր որ Հնդեւրոպացւոց լեզուին , դիցաբանութեան ու կրօնին համաձայնութիւնը կրնայ պատմաբանօրէն մեկնուիլ գաղթականութեամբք , որոնք շատ հին ժամանակներն ազգախուռն Հնդկաստանէն Ասիա և Եւրոպա խուժելով՝ այդրէնածին բնակչաց հետ խառնուեցան ձուլուեցան և անոնց լեզուին ու սովորութեանց վրայ բռնացան տիրեցին ։ Իսկ Հ. Ֆ. Լինք աւելի նախնականութիւն կու տար Զանդկաց լեզուին՝ Նախաշխարհ և Հնութիւն (1821, Պերլին) մատենին մէջ , որ այն ժամանակին համար արդիւնալից գործ մըն էր ։ Աս մատենագրին կարծեաց համեմատ — որովհետեւ Զանդիկ լեզուն՝ մայր Սանսկրիտի , որմէ Յոյն , Լատին ու Սլաւ լեզուները սերած են (Գերմաներէնը տակաւին դուստր կը համարուէր Պարսկերէնի) Մարաստանի ու սահմանակից գաւառաց մէջ կը խօսուէր — Մարաց , Հայոց ու Վրաց բարձրագաւառին վրայ փնտռելու է բնապէս Հնդեւրոպացւոց նախաստեղծին հայրենի գաւառը ։ Դարուս սկիզբներն այսպէս կը կարծէին ընդհանրապէս անուանի քննիչք , որպիսի են Անքըթիլ-Տիւփերոն , Հերտեր , Հէրեն եւայլք ։

Բայց այդ կարծիքն սկսաւ հաւանականութենէն տուժել ու խախտիլ , ցորչափ տակաւ հաստատութիւն առաւ սա համոզումը թէ Հնդեւրոպական բոլոր լեզուներն համօրէն՝ ուստի և Հնդիկն ու Զանդիկն ալ՝ լոկ քոյր են իրարու ։ Միայն Հնդկերէնն ոմանք տակաւին իբրեւ մայր պաշտպանեցին , և անոնց վերջինն եղաւ Ա. Քըրզըն Անգղիացին (1856) ։

Յ. Կ. Ռոտէ (1820) առաջինն եղաւ որ Հնդեւրոպացի ազգերէն մէկը միւսներուն մայր դնելու սխալ կարծիքը չունենալով՝ անոնց բնագաւառը որոնելու սկսաւ Նախնական գրոց Զենդէն ազգէն գործոյն մէջ : Աս գիտնականը կը փորձէ նախ Զանդկաց (որ անուանով Պարսիկ, Մար ու Բակտրիացի ազգերը միանգամայն կ'ըմբռնէ) աշխարհագրական չուկէտն որոշել և աս նպատակաւ Վենդիդադի (Աւեստայի մէկ մասին) առաջին պրակին վրայ կը յենու, ուր տասնուվեց գաւառ իբրեւ Արամազդայ ստեղծած երկիրները նշանակուած են : Արդ ինք կը կարծէր որ նոյն պրակին հեղինակն այն գաւառներն այսպէս համրելով մեզի կը ցուցնէ Զանդիկ ազգին տակաւ տարածուելուն հետքը, ուստի և նոյն գաւառներուն առաջինն՝ Աիրեանա-վայջանհ (Երան-վէջ) այդ ժողովրդեան հայրենի աշխարհն է : Անմիջապէս ասոր քով նշանակուած է նոյն տեղ Սուգդա, որ Յունաց ծանօթ Σογδιανή (Սողտիանա, հիմայ Սամարքանտ) է : Արդ ասկէ ալ կը հետեւցընէր թէ նոյն երկու գաւառներն իրարու կից ըլլալու են, ուստի և Զանդկաց բնագաւառն ալ այն մշտաձիւն լերանց դաշտաթունքն էին, ուստի կը բխեն Ովքսոս և Յաքսարտէս գետերն, վասնզի, որչափ պատմութիւնն ալ արդէն կը վկայէ, նոյն բարձրագաւառ սահմանային կողմերէն ազգաց արշաւանքն սկսած է յառաջ խաղալ : Ռոտէ նաեւ Հնդիկները Միջին Ասիոյ դարաւանդերէն կ'իջեցնէ Գանգէս և Ինդոս գետերուն եզերքն, վասնզի Հնդիկն ու Զանդիկն՝ ինչպէս իրարու շատ նման լեզուներն կը վկայէ՝ երկու համամայր քոյրեր են :

Նախընթաց գիտնականին կարծեկից է նաեւ ժամանակակից Ա. Վ. Շլեգել, որ Նոր Սոփոփաքանարան կամ Հանդիսարան լեզուաց կոչուած գործոյն (զոր դիտած բայց չէ կրցած հրատարակել) յառաջաբանին մէջ՝ Յոյն և Գերման լեզուաց հնդկականէն ծագման վրայ խօսելով կ'ըսէ . Կարծեմ չի կրնար ըսուիլ որ ասոնցմէ մէկը միւսէն յառաջ եկած է, այլ ամէնն ալ այլեւայլ առուակք են նոյն աղբիւրէ հոսած : Նոյնպէս չի հաւատար Տակիտոսին որ Գերմանացիներն այդրբնածին կը դնէր, այլ կը կարծէ որ երբեմըն ներքնագոյն Ասիոյ մէջ՝ ուրկէ Պեղասգացիք (Յոյնք) եկած

են, առոնց մերձաւոր կողմերը կը բնակէին։

Հնդեւրոպացւոց գաղթականութեանց վրայ կը գրէ նաեւ Ֆ. Ա. Փոթ, որուն կարծեաց համեմատ չի կրնար տարակուսուիլ բնաւ թէ Ասիա նոյն ազգաց օրրոցն եղած է։ Վասնզի լոյս յարեւելից (ex oriente lux) և քաղաքակրթութեան ընթացքն ալ ընդհանրապէս արեւմտեան ընթացքին կը հետեւի։ Եւրոպիոյ ազգերն երբեմն Ասիոյ լանջքին վրայ հանգչած են և Ասիա զանոնք իբրեւ մայր գգուած է։ Ասոր համոզուելու համար պէտք չունինք միայն աղօտ յիշատակարաններով շատանալ, վասնզի եւրոպական և ասիական լեզուաց մէջ բովանդակուած պատմական հանդէսն ունինք։ Անդ կամ ոչ ուրեք է մարդկեղէն ազգին խաղարանն և հոգեւոր ու մարմնաւոր զօրութեանց կրթարանն։ Ինք ալ Հնդեւրոպացւոց հայրենիքը կը դնէ Ովքսոս ու Յաքսարտէս գետերուն կողմերը Հիմալայայի հիւսիսային էջքին վրայ դէպ ի Կասպից ծով։ Վասնզի այն դիրքն յարմար զատակէտ կը դնէ, ուրկէ Հնդեւրոպացւոց երկու գլխաւոր հեղեղներն հակառակ ուղղութեամբ յառաջ խաղացած են։

Ոչ այնչափ Փոթի որչափ Ատելունկի կարծիքը կը տածէր նաեւ Ք. Լասսէն Հնախօսութիւն Հնդկաց (1847) մատենին մէջ և գիտնականաց ընդհանուր կարծիքն զԱսիա սերմնարան կը դնէր Հնդեւրոպացւոց մինչեւ Յ. Կրիմ՝ իւր Գերմանական լեզուի պատմութեան (1848) մէջ կրցաւ վճռել թէ նոյն կարծեաց քիչ հակառակորդ կը գտնուի։ Ինք կ՚ըսէր թէ արեւելքէն արեւմուտք մղուած են ազգերն անդիմադրելի զօրութենէ մը և որչափ յառաջ գացած այնչափ կանուխ շարժած են իրենց նախկին գաւառէն և ճամբան աւելի խորունկ հետք թողած։

Մինչդեռ յիշեալ հայրենասէր Գերմանացին ուշադրութիւնն աւելի ազգին նուիրած էր, ժամանակակից Ա. Քուն (1845) նախատոհմին սկզբնական վիճակն սկսած էր հետազօտել լեզուներն համեմատելով և հետեւելով սա սկզբան թէ — այն բառն որ ձեւով ու նշանակութեամբ նոյն է ամէն կամ շատ Հնդեւրոպական լեզուաց մէջ՝ նախատոհմին ստացուածքն է։ Օրինակի համար շուն որ նոյն ձեւով ու իմաստով Հնդեւրոպացւոց բոլոր լե-

զուներուն մէջ կը գտնուի՝ հարկաւ նախացեղին տնասուն կենդանին էր ։ Սակայն ինք սոյն ձեռնարկութեան դժուարութեանց ալ անտեղեակ չէր ։ Ըմբռնած էր որ նախացեղն այլեւայլ ճիւղերու բաժնուելէն ետեւ, իւրաքանչիւր իւր հաստուած գնացած երկրին ու օդին հանգամանաց և հաղորդակցութիւն ունեցած անկիրթ կամ կրթեալ ազգերուն սովորութեանց ազդեցութեան տակ՝ կրնար այլեւայլ փոփոխութիւն կրել, նոր մթերք կուտել և հին համբարքէն զրկուիլ ։ Ուստի և նախաժամանակին մէջ գաղափարի մը գոյութիւնը չա ։ անգամ լոկ հաւանականութեամբ միայն կրնայ հետեւցուիլ և երբեմն՝ նմանաձայն համացեղ բառերու նշանակութեան տարբերութիւնը պատմական եզրակացութիւններն անապահով կ'ընէ ։ Այսպէս, օրինակի աղագաւ, Յունարէն φηγός կաղնի է, իսկ Լատիներէն fagus և Նեմ. Buche որ ստուգիւ նոյն բառն են, աճի կը նշանակեն. արդ յայտնի չէ թէ նախապէս նոյն բառը կաղնի թէ աճի կը նշանակէր ։ Հոս ըստուգաբանութիւնը սա միայն կրնայ եզրակացնել թէ նախատոհմն ուտելի պտղով ծառ մը կը ճանչնար, վասնզի Յունարէն φαγεῖν, ուտել բայարմատէն է ։ Նոյնպէս Հնդկերէն դրուփայտ, ճիւղ, ծառ, Գոթ. triu ծառ, իսկ Յուն. δρῦς կաղնի է, որմէ սաչափ կրնանք գուշակել հաստատութեամբ՝ թէ նախկին Հնդեւրոպացիք անծառ երկիր մը չէին բնակեր ։ Այսպէս կը խորհէր իրաւամբ Քուն ։

Այդ յատկագիծն ընդարձակելով՝ բառագիր հանրանկար մըն ալ տալ յօժարեցաւ հնդեւրոպաբուն նախամիճակին Ատոլֆ Փիքթէ՝ Կենֆցի գիտնականն, որ նախ անուն հանել սկսաւ Հնդեւրոպացւոց հին բժշկական արհեստին և հիւանդութեանց անուններուն վրայ փոքրիկ յօդուածներով ։ Սոյն հեղինակին գլխաւոր երկն է յաղթ կրկնահատոր մատեանն (1859-63), որ երկրորդ տպագրութիւն (1877, Փարիզ) մըն ալ ունեցաւ ։ Սոյն երկասիրութեան մէջ կը ջանայ հեղինակը Հնդեւրոպական լեզուաց բովանդակ բառական մթերքէն նախատոհմին վիճակն ըստուերագրել · և մատեանն հին գիրք զատելով կը զբաղի նախ՝ աշխարհագրական ու ազգաբանական հետազօտութիւններով,

երկրորդ՝ նախացեղին բնապատմութեամբ (հանք, բոյս, կենդանի), երրորդ՝ հին Արեաց նիւթական քաղաքակրթութեամբ. չորրորդ՝ ընկերական յարաբերութեամբ. վերջապէս հինգերորդ մասը նախաժամանակին հոգեկան, բարոյական ու կրօնական կեանքը կը բովանդակէ։ Սոյն գործոյն ընդարձակ ծաւալին համեմատ չէ օգուտը։ Մատենագիրն ունի թէեւ լեզուաքննական յաջողակութիւն, սակայն լեզուադատ չէ։ Սանսկրիտ լեզուին՝ որուն շատ կարեւորութիւն կու տայ, պէտք եղած մատենագրական հմտութիւնը չունի։ Չի քններ թէ բառ մը հին է թէ նոր, կամ թէ նոյն իսկ իրական գոյութիւն ունի՛ թէ ոչ, դարձեալ թէ այս ինչ բառին նշանակութիւնը նախնակա՞ն է թէ յետոյ (երեք հազար դարուց ընթացքին մէջ զոր Հնդիկ մատենագրութիւնն ամփոփած է) տալու յառաջ եկած նկարագրական, խորհրդական և նոյն իսկ դիցաբանական, և վերջապէս նաեւ մեկնչի մը գրչին տակ յետոյ հնարուած իմաստ մըն է։ Այս էական կէտերու ուշադրութիւն չընծայելով՝ հանած շատ եզրակացութիւններն առանց կարեւորութեան մնացած են, թող որ բաւական հոգ ալ չի տանիր՝ բառերն համեմատելու ատեն՝ տառադարձական օրինաց, որոնց համեմատ եթէ քննուին՝ բաղդատած բառերուն շատը մեծ դժուարութեանց կը հանդիպի, կէս մըն ալ իբրեւ անկարելի կը մերժուի։ Սոյն քրտնաջան հեղինակութեան վերնագիրն է՝ Les origines indo-européennes ou les Aryas primitifs, essai de paléontologie linguistique.

Սոյն Հնդեւրոպական հնախօսութեան մատենագրին որ բաւական խորաքննին չէր՝ սաստկութեամբ դէմ ելան Գերմանիոյ ծանրգլուխ լեզուախոյզք։ Բայց Գաղղիոյ մէջ մանաւանդ մարդախօսք և ազգաբանք իրենց քննութիւնները կը հիմնէին մեր հնախօսին լեզուաքննական արգասեաց իբրեւ հաստատուն խարսխի վրայ։ Յիշենք առնցմէ երկու հռչակաւորներն որ են Ֆ. Լընորման և Ֆ. տը Ռուժըմոն։ Ասոնք իրենց լեզուաքննին առաջնորդին շաւղաց հետեւելով չդանդաղեցան հաստատել թէ Հնդեւրոպացւոց նախացեղը գիտէր ամէն մետաղ գործել ու գործածել, որ տարակուսական կ՚երեւայ։

Բայց նաեւ Գերմանիոյ մէջ երեւեցան նախամիճակին քննիչք

Պենֆէյի հիմնականին հետեւողութեամբ ։ Այսպէս Ֆ. Եուսթի նկարագրեղ լեզուաւ կը պատմէ մեզի թէ ինչպէս մեր հուժկու նախահայրք պարզական բայց երանական կեանք մը կը վարէին հովուութեամբ ու հողագործութեամբ և թէ սկսեր էին տակաւ քաղաքական վարչութեան տակ ալ մտնել ։ Դրախտիկ մը մեր աչքին առջեւ կը պարզի երբ հեղինակին մատեանը բանանք և նախանձու զգածում մըն ալ կը սահի կը սպրդի՝ բազմավիշտ չարալլուկ յետնածնացս սիրտը կը գրաւէ , երբ հոն կարդանք թէ մեր նախահայրք պատերազմի մէջ ընդունուած վէրքէ և ծերութեան տկարութենէ զատ հիւանդութիւն չէին ճանչնար ։

Նախորդ հնախօսին հակապատկերը կրնայ համարուիլ ազգակիցն Շլայխէր , որ Գերմանական լեզու (1860) գործոյն մէջ՝ Հընդեւրոպարուն նախածառէն Սլաւական-Լիթուական-Գերմանական ոստը կտրուած զատուած կը դնէ և յետոյ մնացած նախալեզուն երկու գլխաւոր ճիւղ — Երական-Հնդկական և Յունական-Իտալական-Կելտական — բաժնելով՝ Հնդեւրոպամօր նախավիճակն յօրինելու ատեն՝ միայն այն բառերուն կարեւորութիւն կու տայ իրաւամբ , որոնք կամ այն երեք և կամ գոնէ առաջին երկու լեզուախմբոց մէջ կը գտնուին ։ Միայն երրորդ խմբին մէջ գտնուածներուն վրայ նախնականութեան դրոշմ չէր նշմարեր , համարելով թէ Յոյնք , Լատինք ու Կելտք կրնային իրարմէ դիւրաւ փոխ առնուլ , թէեւ կը խոստովանէր որ նախաբառ մը բոլոր քոյր լեզուներուն մէջէն ալ կորսուելով կրնայ մէկուն մէջ միայն պահուած ըլլալ ։ Աս ճամբան սա առաւելութիւնը միայն ունէր որ նախատոհմին չունեցած մէկ բառն իրեն չէր տրուեր , թէեւ միւս կողմանէ վտանգ կար նաեւ ինչ ինչ ըստացուածքէն զանիկայ զրկելու ։ Այսպէս սկզբունք դրած ըլլալուն՝ Շլայխեր չէր վստահիր , զոր օրինակ , արօրն ու աղօրին , արծաթն ու ոսկին եւայլն նախատոհմին տալու , ինչպէս ըրած էր Փիքթէ ։

Հնդեւրոպական նախաժամանակն խուզարկելու մասին մեծ թեր կատարեցին դարուս վաթսներորդ տարիէն ետեւ Մաքս Միւլլեր (Համեմատական դիցաբանութիւն , 1869) , Վ. Տ. Ուիթնէյ

(Լեզու և Ուսումն լեզուի, 1867) և վերջապէս Թ. Պէնֆայ (Պատմութիւն լեզուագիտութեան, 1869) և ասոնց ընդհանրապէս հետեւող Ա. Ֆիք (Վաղեմի միութիւն Հնդեւրոպական ազգաց Եւրոպիոյ, 1873 և Համեմատական բառարան Հնդեւրոպական լեզուաց, Գ. Տպ. 1874-6), որ ողջամիտ, ուղղադատ և անկողմնակալ քննութիւններովը թէ՛ իւր լեզուաքննական հանճարին և թէ՛ հնդեւրոպացեղ նախատոհմին մեծ պատիւ բերած է։ Դարձեալ յիշատակուելու արժանի է Ռ. Վեսթֆալ, որ Համեմատական քերականութեան Հնդեւրոպացւոց գործոյն մէջ, առաջին անգամ Յոյն, Լատին, Զանդին ու Հնդիկ ազգաց տաղաչափական արհեստը բաղդատելով կը գտնէ որ նախատոհմին բանաստեղծելու կերպը լոկ ժողովրդական էր և այս նախնական ձեւումն անվթար պահուած է Աւեստայի մէջ և Հնդկական ու Յունական քերթողութեան մէջ ալ հետքը թողուցած է։ Ընդհանրապէս ամէն լեզուաքննիք միաբան կ'ընդունէին թէ Հնդեւրոպացիք գիտէին տաղաչափել և այս գիտութեան փաստ կը բերուէր որ, որ Հնդիկ, Զանդիկ ու Յոյն լեզուաց մէջ նաեւ ժողովրդական ոտք կը նշանակէ։ Նոյնպէս կը կարծուէր որ քերթուածներուն նիւթն էր նախ առակ, առեղծուած, ստեղծումն աշխարհի և երկրորդ մաղթանք և աղօթք հիւանդութիւններն ու կախարդութիւններն հալածելու։

Այս միջոցիս մեծ համբաւ ստացաւ նաեւ Ֆ. Հէն Պտղաբերական-ընտանեկան ուսումնասիրութիւններով (1870–77, երեք տպ.), որոնց մէջ կը ցուցնէ թէ ընտանի բոյսերն ու անասուններն Ասիայէն՝ Յունաստան, Իտալիա, ինչպէս նաեւ Եւրոպիոյ միւս մասերն անցած են։ Աս հեղինակս նախ մատղիր ըրաւ որ նախալեզուեան այս կամ այն բառին գոյութենէն չենք կրնար հետեւցնել ապահովութեամբ թէ նախատոհմը նոյն բառով բացատրուած առարկային ծանօթութիւնը միայն թէ գործածութիւնը միանգամայն ունէր։ Այսպէս, օրինակի աղագաւ açva ձի, agi այծ բառերուն դուստր լեզուաց մէջ գտնուելէն բոլորովին ստուգութեամբ կարելի չէ յառաջ բերել թէ ձին ու այծը հիմակուան պէս ընտանի էին նախացեղին, վասնզի առջինը վայրենի ձին և երկրորդն յածող խայտացող երէ մըն ալ կրնար նշանակել։ Այդ

կարծական հնարաւորութեանց վրայ յենլով՝ նոյն լեզուախոյզը կը գլանայ նախատոհմին շատ բան որ նախորդ լեզուաքնինք հաստատութեամբ կու տային և ընդհանրապէս ընդարձակ ծաւալ կը շնորհէ փոխառութեան և վերջապէս իր երկրայող սկիզբէն կը հանէ նախաժամանակեան պատկեր մը որ բաւական տխուր է ։

Հէնի կարծեաց համեմատ նախկին Հնդեւրոպացիք հովիւ ժողովուրդ մըն էին գաղթող, որոնց Եւրոպա արշաւելը պատերազմներով՝ Հրէից Պաղեստին մտնելուն հետ կրնայ համեմատուիլ ։ Անոնց հօտը կարելի է արջառէ, ոչխարէ ու խոզէ բաղկանար, սակայն չունէին ձի, էշ, ջորի, այծ, չէին ճանչնար կատուն, և հաւուց բոլոր երամն անծանօթ էր իրենց ։ Ոչխարին գեղմը կը ճողէին և անկէ թաղիք կը շինէին՝ բայց չէին մաներ · սակայն կանայք գիտէին ծառերու մանաւանդ կակղիներու ըսպիտակուցէն (aubière) և քանի մը (առանձինն եղինձակերպ) բոյսերու ներդերէն պարիկ, ուռկան ու ցանց և ասոնց նման խոշոր նիւթ մը հիւսել, ինչպէս նաեւ որսական կամ արօտական անասնոց անկազմ կաշին քարեղէն կամ փայտեղէն հերիւններով կարել ։ Երկրագործական արուեստք՝ որ գաղթականութեանց դադրելովն սկսան՝ չէին ճանչցուած բնաւ ։ Յետնագոյն դարերու կը պատկանի պտղատու ծառերու հոգն ու խնամքը ։ Պերակուրնին էր միս ու կաթ, բայց աս վերջինէն պանիր ու կարագ պատրաստել դեռ չէին գիտեր ։ Մեղրաջուրն (hidromèle), զոր ահագին անտառաց մէջ մեղուներէն կ'առնուին, արբեցուցիչ ամենահին ըմպելին էր Եւրոպա գաղթող նախացեղին · աս գարեջուր ու գինի չէր խմեր տակաւին ։ Կերածնին աղով չէին համեմեր ասիական բնագաւառին մէջ, բայց Եւրոպա ոտք կոխելէն ետեւ ամէն ցեղերն համօրէն սկսան աղը գործածել ։ Ձմրան եղանակին Հնդեւրոպացւոյն բնակարանն ստորերկրեայ փորուած խոռոչ մըն էր՝ վերէն խոտայարկ կամ աղբով ծածկուած · ամառը վաշկատուն էին կամ անտառաշատ տեղեր փայտաշէն կամ հիւսուածոյ վրանակերպ խրճիթներու մէջ կը բնակէին ։ Հարաւային կողմերը միայն կրնային պախրէն պահել ձըմեռը, իսկ հիւսիսային դիերը սառնամանեաց ու ձեան տակ

հագիւ թէ ուտելիք կը գտնէին խաշինք և երբեմն երամովին կը սատկէին, վասնզի հօտին համար փարախ ու խոտ ձմեռն հայթայթելն անդրագոյն ժամանակաց արհեստն էր, որ երկրագործութեան զարգանալէն վերջն հնարուեցաւ: Մետաղներէն միայն պղինձը կը ճանչնային, թէեւ անկէ գործիք շինել դեռ չէին սորված: Հնդեւրոպացի նախացեղը վիմադարուն մարդն էր: Աղեղներն յատկապէս դեղձի (if) փայտէ էր, նիզակին տիգարունը ցախէ (frène), վահաններն ուռենւոյ ճիւղերու հիւսուածք մըն էր: Խոխոմներուն հսկայաձեւ ծառերէն այրելով ու քարեղէն կացնով յաղթ կուրեր կը փորէին: Բոլորովին փայտակերտ անուաւոր կառք մը՝ որուն վրայ գամի տեղը փայտեայ սեպեր կը բռնէին, պանդուխտ հնդեւրոպացւոյն վաչէն կամ տունն էր, որով կաթ կթելու ամանները, մորթերը եւայլն կը կրէր:

Հէն մեր նախահարց ընտանեկան կեանքն ալ մխրագոյն կը նկարագրէ: Պատերազմի անկարող ծերեր անձնապան կ'ըլլային կամ թոպամահ կը մեռցուէին, այսպէս նաեւ անբուժելի ախտաժէտներն: Իրենց առաջնորդին ետեւէն կ'երթային գերեզման՝ սորուկները, կիները, ձիերն, որ կէս վայրենի վիճակի մէջ երամովին կը պահուէին: Կինը կը հափափուէր կամ կը գընուէր, հայրը նորածին մանուկն անհետ կամ ընկեցիկ կ'ընէր: Բռնութիւնն էր իրաւունք և ընչից սեպհականութիւն չկար:

Հնդեւրոպական նախկին ժամանակին վիճակը քննելու ատեն՝ զոր դուստր լեզուաց համեմատութենէն առաւել նուազ հաւանականութեամբ կարելի եղած էր որոշել, բնական էր որ խորհուրդ մըն ալ յղանար քննիչներուն միտքն՝ ուշադրութիւն նուիրելու այն բաժանումներուն, զոր հարկաւ յառաջ պիտի բերէր նախատոհմին գոնէ տակաւ բազմանալը, թող ուրիշ բնական կամ բռնական պատճառներն, որոնք նոյնպէս կրնային հնդեւրոպացեղ առաջին ժողովրդեան ամփոփութիւնը մեղմով կամ յանկարծ քայքայել:

Նախացեղին բաժանման նկատմամբ այսպէս կը խօսի Շլայխեր. Նախալեզուն կարգ մը սերունդներէն խօսուած միջոցին՝ ժողովուրդն աճելով ու տարածուելով, իւր սահմանին զանազան

կողմերն այլեւայլ նկարագիր առաւ, այնպէս որ վերջապէս անկէ երկու գլխաւոր լեզու ծագեցան։ Իսկ մայր ազգէն զատուող մասերն որչափ աւելի արեւելեան կողմն որ մնացին, այնչափ առաւել հնութեան դրոշմը պահեցին, իսկ արեւմտեան դին հաստատողները՝ կանխաւ զատուած ըլլալով՝ նորութեան նշաններ սկսան ցուցնել։

Մաքս Միւլլեր տիեզերական գաղթականութիւն մը կու տայ նախատոհմին հիւսիսային (հիւսիսային-արեւմտեան) և հարաւային, առջինը եւրոպական, իսկ երկրորդն ասիական (Հնդիկ ու Զանդիկ) ազգերէ բաղկացած։ Թէեւ այս գաղութին շարժառիթն անծանօթ՝ բայց կամաւոր անջատում մը կը դնէ՝ որ շատ զարմանալի է, իբր թէ գաղթող մասին մնացող մասն ընկերանալ չէ ուզած, աւելի ընտրելով թերեւս ազգականներէ զատուիլ քան թէ բնագաւառէն հեռանալ։

Հնդեւրոպական նախացեղին նախ երկու գլխաւոր մաս բաժնուիլն ուժգնապէս պաշտպանած է Ա. Ֆիք, առանձին մատենիւ զոր վերագոյն յիշատակեցինք։ Հեղինակին կարծեաց համեմատ նախատոհմը կը բաժնուի Արիք և Եւրոպացիք։ Արիք կը բաժնուին Երանեանք և Հնդիկք։ Իսկ Եւրոպացիք կը զատուին Հիւսիսային և Հարաւային Եւրոպացիք։ Հիւսիսայինները են Գերմանք և Լիթու-սլաւք, իսկ Հարաւայինները Կելտք և Յոյն-իտալացիք։ Ասոնց մէջէն Գերմանացիք դարձեալ կը բաժնուին Սքանտինաւեանք և Թեւթոնեանք, իսկ Լիթու-սլաւք՝ Լիթուացիք ու Սլաւք։ Վերջապէս Յոյն-իտալացիք կը բաժնուին՝ Իտալացիք ու Յոյնք։

Քննիչներն ազգաց ու լեզուաց բաժանման մասին սա կէտին վրայ կը միաբանէին՝ որ Երանեանք և Հնդիկք, նոյնպէս Լիթուացիք ու Սլաւք աւելի մերձաւորութիւն ունին իրարու։ Սակայն վէճ կար դեռ թէ Լիթուսլաւներն աւելի արեւելե՛ան Արեաց թէ արեւմտեան Գերմանացւոց խնամի դնելու է։ Նոյնպէս խնդիր էր Յունաց լեզուին նկատմամբ թէ արդեօք միւս եւրոպականներէն աւելի անձուկ կապ ունի՛ թէ ոչ ասիական լեզուներուն հետ։ Իսկ Եւրոպիոյ միջավայրաց բնակիչ Կելտերուն վրայ

*հիմնական կարծիք մը յայտնող չկար ։ Հ. Էպէլ որ քաջ հմուտ էր այն լեզուի, միջնորդիչ պաշտօն մը կու տայ անոնց՝ առանց մեկնելու թէ նոյն միջնորդութիւնն ի՛նչպէս ըմբռնելու է ։*

*Թէեւ տարաձայնութիւն կար այս կամ այն լեզուի ազգականութեան առաւել կամ նուազ մերձաւորութեան վրայ, սակայն լեզուաքննիք արդէն սկսած էին դուստր լեզուներէն այլեւայլ խմբեր կազմել, անոնցմէ ամէն մէկուն մէջ մէկ նախալեզու դնելով ։ Այսպէս Եւրոպական Նախաժամանակ մը կանգնելու յաղթ փորձեր ըրաւ Կ. Լոթներ, բայց քան զատ աւելի հիմնական կերպով Ա. Ֆիք նոյն նպատակաւ աշխատեցաւ և ջանաց ցուցնել թէ Եւրոպացիք երբեմն մէկ ազգ էին ։ Աս կը կարծէ որ նախատոհմն Եւրոպա մտնելէն ետեւ սկսաւ հողագործութեան պարապիլ, և յառաջ աւելի տուարածական կեանք կը վարէր և այս կարծիքը կը ջանայ հաստատել այլեւայլ մշակական բառերով ։*

*Եւրոպական միութիւնը լուծուելէն ետեւ կազմուած փոքրագոյն խմբեր էին Յոյն-իտալացիք (Յոյնք և Լատինք), որոնց մէջ անձուկ կապ մը գտնուիլը բաւական հին ժամանակէ վեր պնդած էին գիտունք ։ Եւրոպիոյ հիւսիսային կողմը բնակող Լիթու-սլաւեան-գերմանացւոց վաղեմի միութիւնն ալ հաստատելու բաւական աշխատեցան լեզուաքննիք ։ Դարձեալ Սլաւեանց միութեան նախադար մը յօրինելու յոգնեցան Ա. Պրիւքներ և մանաւանդ Յ. Կ. Վոցել որ ազգային էր ։ Վերջապէս Հնդիկ-երանեան կամ արիական վաղեմի միութիւնն հաստատելու վաստակողներէն առանձինն յիշատակի արժանի է Ֆր. Շփիկել՝ Երանեան Հնախօսութեան (1871) գործոյն մէջ, որուն շատ փաստերէն ամենակարեւորը սա իրականութիւնը կրնայ համարուիլ՝ որ այն երկու ազգերն ընդհանուր անուամբ Արիք կը կոչուէին ։*

*Երբ լեզուաքննիք դուստր լեզուներէն՝ Եւրոպիոյ մէջ մանաւանդ՝ այլեւայլ մասնախմբեր կը կազմէին, և իւրաքանչիւրին զատ զատ նախապատմական մայր լեզու մը կու տային, ժամանակին հանճարեղ լեզուագիտաց մէկն՝ Յ. Շմիտ եղաւ որ դուստր լեզուաց նախկին մայր լեզուին հետ ունեցած աղերսն աւելի*

բնական կերպով սկսաւ մեկնել ։ Այս գիտնականն բոլոր Հնդեւրոպական լեզուաց նմանութեան կէտերն իբրեւ հանրանկարի մը վրայ դիտելով՝ կը գտնէ որ դուստր լեզուաց մէջ ոչ բացարձակ այլ լոկ յարաբերական նմանութիւն կայ, վասնզի կա՛յ կէտ որով Սլաւն Արեաց կը նմանի, կէտ ալ կայ՝ որով Արիք Յունաց առաւել նմանութիւն կը ցուցնեն ։ Այս իրականութենէն կը հետեւցնէ որ այս ինչ կամ այն դուստր լեզուի մէջ հոծ միութիւն մը չի կրնար ընդունուիլ, ուստի և դուստր լեզուներէն զատուցեալ խմբեր կազմել հիմնական բան մը չէ ։ Ինք բոլոր լեզուաքննական իրողութիւններն իրարու հետ միաբանել ուզելով, կը կարծէ որ Նախատոհմին ժամանակն իսկ՝ երբ դեռ անջատում չէր սկսած աշխարհագրօրէն, տակաւ սկզբնաւորութիւն եղած էր գաւառալեզուաց կազմութեան. Նորութիւնք երեւան եկած էին՝ բայց միշտ նախատպին նմանութիւնք մնալով կամ առանց ամբողջին հետ միութեան կապը խզուելու ։ Այսպէս, օրինակի համար, բնագաւառին մէկ կողմն k կոկորդականը ç ի փոխելու միտութիւնն սկսելով մեղմով՝ տարածուած էր այն կողմերն ուր Արեաց, Հայոց և Լիթու-սլաւաց նախահարք կը բնակէին. ուստի և չի կրնար ըսուիլ, որ այն ազգերն ուր աս սովորութիւնը չէր մտած ; ինչպէս Յոյնք, Լատինք, Գերմանք, վերն յիշատակուած քոյրերէն զատուած նախալեզու մը ունէին ։ Դարձեալ կըրնար նոյն միջոցին բնագաւառին ուրիշ մէկ կողմն սկսած ըլլալ հոլովակերտ bhi մասնիկը m ի փոխելու սովորութիւնն՝ որ միայն Գերմանական-սլաւեան ճիւղին վրայ տարածուած է, մինչդեռ միւսներն, ինչպէս Յոյնք, Լատինք և մենք, նախնական կերպարանօք նոյն մասնիկին բաղաձայնն առանց մեծ այլայլութեան պահած ենք ։ Արդ այս զանազան քոյրերու վրայ երեւցած մասնական նմանութիւնները մէյ մէկ օղակ են ագուցիկ՝ որոնցմով Հնդեւրոպաքուն միութեան շղթան կը յօրինուի և իրարմէ բնաւ չեն կրնար զատուիլ առանց մէկզմէկ իրենց եռեւէն քաշելու. ուստի և մէկ օղն իսկ կորզել հանել՝ կտրել է ամբողջին միութիւնը։

Հնդեւրոպացւոց նախնական վիճակն և անոնց գաղթականութեան հանգամանքն որոնելու տեղն՝ հարկաւ ուշադրութիւն

մըն ալ պիտի նուիրէին քննիչք նաեւ անոնց բնագաւառին, որմէ իրենց քննութիւններուն շատ կարեւոր կէտերն հարկաւ կախում պիտի ունենար ։ Լեզուագիտաց ընդհանուր կարծիքն՝ ինչպէս յառաջ նոյնպէս հիմակ՝ Հնդեւրոպական նախատոհմին հայրենի աշխարհն Ասիա կը ճանչնար, թէեւ միաբան չէին թէ որ կողմը զետեղելու է ։ Ոմանք հին Բակտրիա կը համարէին, ոմանք Օքսոս և Յաքսարտէս (Երասխ) գետերուն հովիտներն, թէեւ այնպիսի գիտնականք ալ կան ցարդ կենդանի, որպիսի է Ֆր. Միւլլեր՝ հմուտ ազգաբանն ու լեզուաբանին հայագէտն՝ որ հնդեւրոպամայր նախացեղին ծննդավայրն ան կողմերը կը դնէ, ուր մեր հայ աշխարհին անունը կը հնչէ — Արարատայ բարձանց վրայ և Երասխայ հովտաց մէջ ։ Հոսկէ արեւելք և արեւմուտք մեր հնդեւրոպածին նախահարք բաժնուած և Ասիա և Եւրոպա տակաւ տարածուած ու բռնած են ։ Բայց եղան նաեւ այնպիսի լեզուախօսք որ Հնդեւրոպացւոց բընագաւառն Եւրոպա փոխադրել ուզեցին, մինչեւ Գերմանիոյ հսկայաձեւ անտառաց մէջ փնտռել գտնել յօժարեցան ։ Հնդեւրոպացւոց զԵւրոպա բնագաւառ դնողներուն գլխաւոր փաստը աս էր որ քանի մը ասիական կենդանիներու, որպիսի են ուղտ, փիղ, առիւծ, վագր, համարակաց անուններ չունին հնդեւրոպաղարմ դատերը, զոր պէտք էին ունենալ եթէ իրենց զաւառամայրն Ասիա ըլլար. և ասկէ կը հետեւցնէին որ Եւրոպայէն՝ ուր այն անասնոց հայրենիքը չէ, գաղթած են Ասիա Հնդեւրոպացիք, և հոս նախ ճանչցած են նոյն ասիական գազանները՝ սեմական ազգերէն անոնց անունները փոխ առնելով ։

Լեզուագիտութեան ընթացքը կամ լեզուագիտաց զանազան կարծիքը դիտինք ցարդ պատմաբանօրէն, այժմ կը մնայ մեր խօսքը գլխաւորել կնքել ։

Նախ պէտք է աս երկու տեսակէտն որոշել ։ Առաջինն է որ Հնդեւրոպական լեզուաց ազգականութիւնը միայն նախալեզու մը դնելով կրնայ մեկնուիլ, և երկրորդ թէ նախալեզուի ընդունելութենէն նախատոհմի մըն ալ գոյութիւնն հարկաւ կը հետեւի ։

աւելի նախնականութիւն տալ անկարելի է, ցորչափ չենք գիտեր գրականութենէ առաջ իւրաքանչիւրին նախապատմական վիճակը։ Իսկ եթէ անոնց առաւել կամ նուազ հնութիւնը մեզի հասած մատենագրական լեզուէն դատել ուզենք, ան ատեն առաջնութիւնը կամ նախապատիւ աստիճանն հարկաւ այն դուստր լեզուին տալու ենք, որուն տառական հանգամանքն կամ քնակերտական ու քառակազմական ձեւերն աւելագոյն հնութեան կերպարանք կ'ընծայեցնեն։ Այդ աս կողմանէ՝ մեր կարծեաց համեմատ՝ նախնականութեան պատիւ զլացուիլ չի կրնար Զանդիկ կամ մանաւանդ Հնդիկ լեզուին, թէեւ մէկալ կողմանէ չը կարենայ ուրացուիլ՝ թէ միւս դստերաց մէջ ալ կան այնպիսիք, որ հնութեան աւելի հաւատարիմ աւանդապահ կը հանդիսանան զանազան կէտերով։ Այս այսպէս ըլլալով՝ բոլոր հնդեւրոպամայր լեզուներն քոյր միոյն կրնան նկատուիլ իրարու, որոնք իրենց մօր հետ առաւել նմանութեան ոչ նոյն այլ զանազան նըշաններ կը կրեն վրանին։

Եթէ հնդեւրոպայնլեզու ազգերն երբեմն ստուգիւ նախալեզու մը ունէին, ինչպէս կը հետեւի ասկէ՝ որ հիմակ աս լեզուները խօսող ազգերն հարկաւ նախացեղ մը նաեւ կը կազմէին ժամանակաւ։ Սակայն եթէ ազգաբանից ալ կարծիքն հարցնենք, չտարակուսինք որ անոնք մեզի կարծեկից չեն ըլլար։ Տոհմագիրք (ethnographe) հնդեւրոպախօս ազգերն իրարմէ կը զատեն, իսկ չեղոզները կը միացնեն՝ դիմագրութեան նմանութենէ կամ աննմանութենէ դատելով։ Սակայն ցորչափ մարդկային ազգին ծանօթ բնախօսական բաժանումներուն վերջնական լուծում մը չէ տուած գիտութիւնը. ցորչափ սոյն լեզուաց նմանութեան՝ ազգաց մարմնական սերնդեան նոյնութենէն զատ մեկնութիւն մը չի կրնար տրուիլ, պիտի մնայ միշտ անխախտ թէ հնդեւրոպախօս նախալեզուն հնդեւրոպածին նախատոհմ մըն ալ ունէր եւ դրեթէ ծաղրելի է պնդել թէ հնդեւրոպական անուանեալ լեզուները թէ եւ իրարու կը նմանին, սակայն այս նմանութեան պատճառը չենք գիտեր, եւ ասոր պատճառն հասարակաց սերունդը չէ, աւելցնելով թէ՝ լեզուաց համեմատութիւնն այն

խնդիրը չի կրնար լուծել՝ որ ընդհանրապէս անլուծանելի է ։

Հայք հայերէն կը խօսին ընդհանրապէս, որովհետեւ հայ ծընողքէ ծնած են և մեր ազգայինք օտար երկրի մէջ ալ՝ բաւական որ այլասեռ ազգայնութենէ մը կլլուած չըլլան՝ նոյն լեզուն կը գործածեն ։ Ազգ ազգի հետ կրնայ խառնուիլ և չէ թէ միայն հիմայ այլ նաեւ նախապատմական ժամանակին իսկ հաւանական է որ այսպիսի խառնուրդ մը պատահած ըլլայ, սակայն գլխաւոր տարրն էր հնդեւրոպացեղ ազգն, որ յառաջ գացած կ'երեւի միշտ տիրելով այն երկիրներուն, ուր բնակող ժողովուրդն իրմէ աւելի խոնարհագոյն վիճակի մէջ և նոյն իսկ թերեւս աւելի սակաւաթիւ գտած է ։ Դիտելու է դարձեալ որ մարդ մարմնոյն որպիսութեան կողմանէ՝ ներքին ու արտաքին ազդեցութեանց տակ ըլլալով՝ դիւրաւ կրնայ փոփոխութիւն կրել և նախնական կերպարանքը կորսնցնել, ուստի և այս նկատմամբ երեւցած տարբերութիւնն այնչափ կարեւորութիւն չունի, մինչեւ կարենայ խզել ազգաց մարմնով միեւնոյն սերնդեան կապը, որ լեզուաց համեմատութեամբ գտնուած է ապահովապէս ։ Երկու օտար սերման խառնուրդ կրնայ պատահիլ և արտաքին տարբեր երեւոյթ յառաջ բերել, սակայն երկու օտար լեզու իրարու հետ անկարելի է խառնուելն, բնական կերպով լեզուաց խառնակութիւն չի կրնար հանդիպիլ ։ Երբ երկու օտար լեզու քովէ քով գան, կամ երկուքն ալ կը մնան կամ մէկը միւսին տեղի կու տայ, բայց իրարու հետ չեն խառնուիր ։ Այդ ճշմարիտ է բացարձակապէս երբ լեզուի մը քերականական հիւսուածքին վրայ է խօսքը · խնդիրը կը փոխուի երբ բառական մթերքը նըկատուի, որ լոկ գաղափարաց յայտարար ըլլալով՝ լեզուէ լեզու դիւրաւ կրնան անցնիլ պիտոյից համեմատ ։ Այսպէս, օրինակի աղագաւ, ի յառաջագունէ հաւանական է որ ամէն հնդեւրոպական լեզուներու մէջ հնդեւրոպաձեւ բառերու գումար մը գտնուի, որ երբեք հնդեւրոպաբուն նախալեզուի մը չեն կրնար հանուիլ, վասնզի ոչ-հնդեւրոպական նախագոյ լեզուէ մը մուտք գտած են ։ Բայց այդ հաւանականութիւնն ստուգել դժուարին է, ինչու որ թերի է ծանօթութիւննիս հնդեւրոպականէն յա-

# ԳԼԽԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ





# ԱՅԲՈՒԲԵՆԱԿԱՆ ՑԱՆԿ

## ՍՏՈՒԳԱԲԱՆՕՐԷՆ ԿԱՐԵՒՈՐ ԲԱՌԵՐՈՒ ՈՒ ՄԱՍՆԻԿՆԵՐՈՒ

### Ա.

Բ.



* Աս բային աւել-ցընելու է էջ 96, bhargh արմատին ներքեւ ։



Գ.

Ձ.



Ճ.



Մ.



Յ.

Ն.



Շ.



Ո



* Այդ բառը պէտք է յաւելուլ էջ 105, vag արմատին ներ-քեւ։



Չ.



Պ.


ԳՐԱԴԱՐԱՆ
ԳՐԻԳՈՐ ԱՂԱՅԵԱՆԻ
կարգաթիւ

